Թ. Խ. ՀԱԿՈԲՅԱՆ

# ՍՅՈՒՆԻՔԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ

## ՊԱՏՄԱ-ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԱՌՈՒՄՈՎ



«ՄԻՏՔ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
19 ☆ ԵՐԵՎԱՆ ☆ 66

АКОПЯН
ТАТЕВОС ХАЧАТУРОВИЧ

# ЦАРСТВО СЮНИКА
## (В ЕГО ИСТОРИКО-ГЕОГРАФИЧЕСКОМ ПОНИМАНИИ)

(На армянском языке)
Издательство „Митк"
Ереван—1966

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ



*ՀԱԿՈԲՅԱՆ*
*ԹԱԴԵՎՈՍ ԽԱՉԱՏՈՒՐԻ*

# ՍՅՈՒՆԻՔԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ

(պատմա-աշխարհագրական առումով)


*Հրատ. խմբագիր՝* Հ. Բ. Պետրոսյան
*Նկարիչ՝* Հ. Ն. Գործակալյան
*Տեխն. խմբագիր՝* Հ. Ս. Հովասափյան
*Վերստուգող սրբագրիչ՝* Մ. Գ. Ցավրյան

**ՎՖ 07014** *Պատվեր 1351* *Տպաքանակ 300*

*Հանձնված է արտադրության 3/XI 1965 թ.։*
*Ստորագրված է տպագրության 4/III 1966 թ.։*
***Թուղթ՝** 84×108 1/32։ Տպագր. 12,5+1 ներդիր=11,5 պայմ. մամուլ։*
*Հաշվ.-հրատ. 10,6 մամուլ։*
*Գինը՝ 85 կ.։*

***Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 10 տպարան։ Երևան, Արովյան փող. № 52։***

## ԵՐԿՈՒ ԽՈՍՔ

*Սյունյաց թագավորությունը, որ կազմավորվել էր Սյունիք նահանգում 10-րդ դարի 70-ական թվականներին, իր գոյությունը պահպանում է մինչև 1170 թվականը։ Նա ավելի ուշ է վերանում, քան Մեծ Հայքում եղած հայկական մյուս բոլոր թագավորությունները (Վասպուրականի, Անի-Շիրակի, Վանանդի կամ Կարսի, Լոռու կամ Տաշիր-Ձորագետի)։ Այդ պատճառով էլ հայ ժողովրդի այս փոքրիկ հատվածի երկու հարյուր տարվա պատմությունը կարելի է համարել հայագիտության կարևոր հարցերից մեկը։*

*Մենք սույն աշխատությամբ փորձել ենք պարզաբանել Սյունյաց թագավորության հետ կապված մի շարք պատմաաշխարհագրական հարցեր, որոնք, կարծում ենք, նրա պատմության ուսումնասիրման համար կարող են արժեք ունենալ։*

*Աշխատությունն ավարտվել է 1948 թվականին և ներկայացվել է իբրև թեկնածուական դիսերտացիա՝ պատմական գիտությունների գիտական աստիճան ստանալու համար։ Այժմ տպագրության հանձնելով, կատարել ենք որոշ լրացումներ, նկատի ունենալով պաշտպանության ժամանակ ընդդիմախոսների արած դիտողությունները և անցած ժամանակներում աշխարհագրական անունների կրած փոփոխությունները։*

*Աշխատությանը կցում ենք Սյունիքի թագավորության քարտեզը։*

**Բ. Խ. Հակոբյան**
**10/X 1964 թ.**
**Երևան**

## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

# ՍՅՈՒՆՅԱՑ ԱՇԽԱՐՀԻ ՀԱՐԱՎ-ԱՐԵՎԵԼՅԱՆ ՄԱՍԻ ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

### 1. Սահմանները, երկրաբանական անցյալն ու ռելիեֆը

*10-րդ դարի 70-ական թվականներին նախկին Սյունիքի հարավ-արևելյան մասում կազմավորվել է Սյունիքի թագավորությունը։ Նրա տերիտորիան, որի վերլուծությանը կանգնենք հաջորդ գլխում, իր մեջ ամփոփում էր մոտավորապես այժմյան ՀՍՍՌ-ի Մեղրու, Ղափանի, Գորիսի շրջաններն ամբողջովին և Սիսիանի շրջանի հարավային մասը։ Բացի դրանից, նրա մեջ էին մտնում նաև որոշ տերիտորիաներ Ադրբեջանական ՍՍՌ Լաչինի և Զանգելանի շրջաններից։*

*Սյունյաց աշխարհի հարավ-արևելյան մաս ասելով՝ ֆիզիկա-աշխարհագրական տեսակետից մենք նկատի ունենք այն տարածությունը, որ սահմանափակված է արևմուտքից՝ Զանգեզուրի (Սյունյաց) լեռներով, հարավից՝ Արաքս (Երասխ) գետով, արևելքից՝ Հագարի (Աղաւնոյ) գետով և հյուսիսից՝ Իշխանասարի հրաբխային զանգվածով։*

*Սյունյաց աշխարհի հարավ-արևելյան մասի ռելիեֆը ձևավորվել է երրորդական և չորրորդական դարաշրջանում։ Հետագայում հսկայական փոփոխություններ է առաջացրել գետերի և մթնոլորտային տեղումների գործունեությունը, որոնք կտրտել և ողողել են լեռնաշղթաներն ու առանձին բարձրացումները։*

*Դա, իհարկե, չի նշանակում, որ հրաբխային և տեկտոնական երևույթները դադարել են գործելուց։ Դեռ տակավին շարունակվող լեռնակազմական երևույթների արտահայտու-*

թյունն են այստեղ տեղի ունեցող երկրաշարժերը։ 1931 թ. ապրիլի 27-ին Զանգեզուրում տեղի ունեցավ աղետաբեր երկրաշարժ, որն զգալի ավերումներ պատճառեց մի քանի գյուղերի՝ որոշ փոփոխություններ առաջացնելով նաև երկրակեղևի վրա։ Այսպես, այդ երկրաշարժի հետևանքով մի քանի տեղ (գլխավորապես Ողջի գետի վերին հոսանքի շրջանում) առաջացան փլվածքներ, ցամաքեցին մեծ թվով աղբյուրներ և այլն։

Ավելի վաղ ժամանակներում տեղի ունեցած համեմատաբար աղետաբեր բնույթ կրող երկրաշարժերի մասին տեղեկություններ են տալիս մեր պատմիչները։

Կիրակոս Գանձակեցու հիշատակության համաձայն 8-րդ դարի առաջին կեսում Հայոց ձորում (Վայոց ձոր) տեղի ունեցած երկրաշարժից սպանվել է 10 000 մարդ, երկրաշարժի կատարած ավերումների պատճառով ընկղմվել է Մոզ քաղաքը, իսկ գավառն այդ օրվանից իբր կոչվել է «Վայոց (ողբի) ձոր»։

«Եւ ահա խաւար ի վերուստ անտեսանելի կալաւ զՄոզանն սահմանն, և զաւուրս քառասուն շարժեցաւ վայրն, և խորասոյզ եղեալ ընկղմեցան կենդանւոյն ոգիք իբրև տասն հազար։ Վասն այնորիկ Վայոյ Ձոր անուանեցաւ մինչև ցայսօր ժամանակի»[1]։

Հայոց ձորում տեղի ունեցած այդ երկրաշարժի մասին վկայություններ ունեն նաև Մխիթար Այրիվանեցին ու Ստեփանոս Օրբելյանը[2], որոնց հաղորդած տեղեկությունները լիովին համապատասխանում են Գանձակեցու հիշատակությանը[3]։

Հնարավոր է, որ երկրաշարժի հետևանքով ընկղմվածների թիվը չափազանցված է պատմիչների կողմից, բայց հիշյալ

[1] Կիրակոս Գանձակեցի. Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1909, էջ 70։

[2] Տե՛ս Մխիթարայ Այրիվանեցւոյ Պատմութիւն Հայոց, Մոսկվա, 1860, էջ 52. Պատմութիւն նահանգին Սիսական արարեալ Ստեփաննոսի Օրբելեան արքեպիսկոպոսի Սիւնեաց, Թիֆլիս, 1910, էջ 142—143։

[3] Գևորգ Մեսրոպի հաշիվներով Վայոց ձորի երկրաշարժը տեղի է ունեցել 735 թվին (տե՛ս Հայոց պատմութիւն (քննական), հ. Ա, Կ. Պոլիս 1914, էջ 97)։

նկարագրությունից դժվար չէ կռահել այդ երկրաշարժի կործանիչ բնույթը։

Ինչ վերաբերում է Կիրակոս Գանձակեցու և Ստեփանոս Օրբելյանի հաղորդած այն տեղեկությանը, որ իբր երկրաշարժի հետևանքով առաջացած ողբերից հետո է միայն գավառը կոչվել «Վայոյ ձոր» կամ «Վայոց ձոր», ապա այդ կամայական ստուգաբանության արդյունք է և գիտական արժեք չունի։

«Վայոց ձոր» անունը հիշատակված է դեռևս 5-րդ դարում։ Այդ մասին վկայություն ունեն Մ. Խորենացին և Եղիշեն։ «Իսկ եպիսկոպոսապետության աթոռն իբրև տեղակալ նստեց երանելի Մեսրոպի հրամանով նրա աշակերտը, Հովսեփ քահանան, որ Վայոց ձորից էր, Հողոցիմ գյուղից»,—գրում է Խորենացին[1]։ Եղիշեն նույնպես հիշատակում է այդ անունը, «Սահակ Ռշտունյաց եպիսկոպոս, Սուրբ Հովսեփ Վայոց ձորից, Հողոցիմք գյուղից»[2]։

Բերված հիշատակություններից պարզ երևում է ոչ միայն այն, որ «Վայոց ձոր» անունը գործածական էր դեռ 5-րդ դարում, այլև այն, որ գործ է ածվել որպես գավառանուն։

«Վայոց ձոր» անունը նորագույն ուսումնասիրությունների համաձայն ունի էթնիկական ծագում։

Տասներորդ դարի սկզբներին տեղի ունեցած երկրաշարժը բավականին վնասներ է պատճառել Սյունիքում[3]։

1138 թվականին Գանձակի աղետաբեր երկրաշարժի ալիքները հասել են նաև Սյունիք, որի հետևանքով փլվել է Տաթևի մեծ եկեղեցու գմբեթը[4]։

Գանձակի երկրաշարժից հինգ տարի անց, 1143 թ. Սյունիքում տեղի է ունեցել ավելի աղետաբեր երկրաշարժ։ Ահա թե ինչ է գրում այդ երկրաշարժի մասին Ստեփանոս Օրբելյանը. «...և ամենևիմբ ջնջեցան մարդ և անասուն. և անբնակ եղև բոլոր աշխարհս Սիսական. միայն թէ ի ծերպս մնացեալ էին ուրեք ուրեք երկու կամ երեք արք»[5]։

---

[1] Մովսես Խորենացի, *Հայոց պատմություն, Երևան, 1940, էջ 248*։

[2] Եղիշե, *Վարդանանց պատմությունը, Երևան, 1947, էջ 239*։

[3] *Տե՛ս* Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, Թիֆլիս, 1910, էջ 236*։

[4] *Տե՛ս նույն տեղը, էջ 341*։

[5] *Նույն տեղում*։

Անշուշտ, 1143 թ. տեղի ունեցած երկրաշարժի պատճառած վնասների նկարագրությունը Օրբելյանի կողմից չափազանցություն է, սակայն պարզ է, որ այս երկրաշարժը Սյունիքում աղետալի հետևանքներ է ունեցել։ Հետագա դարերում ևս ներքին ուժերն իրենց պարբերաբար զգացնել են տվել երբեմն թույլ, երբեմն էլ ավելի մեծ ուժի երկրաշարժերի ձևով։

Կովկասյան (Կապ-Կոհ)[1] լեռնաշղթային գրեթե զուգահեռ՝ հյուսիս-արևմուտքից դեպի հարավ-արևելք տարածված է մի ընդարձակ լեռնաշխարհ, որն ընդհանուր առմամբ ծանոթ է Փոքր, Ստորին կամ Անտիկովկաս անունով։ Փոքր Կովկասը բաղկացած է բազմաթիվ ճյուղավորություններ ունեցող մի քանի լեռնաշղթաներից, որոնք խաչաձևվելով՝ Հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևելյան այս մասը վեր են ածում լեռնային առանձին փակ շրջանների։ Սրանցից յուրաքանչյուրը մի ուրույն ֆիզիկա-աշխարհագրական շրջան է։ Այդպիսի մի մեծ շրջան է ներկայացնում իրենից նաև Սյունյաց աշխարհի հարավ-արևելյան մասը, որը, ինչպես վերևում ասացինք, սահմանափակված է Զանգեզուրի (Սյունյաց) լեռներով, Արաքս գետով և Իշխանասար հրաբխով։

Զանգեզուրն սկսվում է Գինալ կամ Կոնգուր գագաթից (3430 մ) և գրեթե միջօրեականի ուղղությամբ ձգվում է մինչև Արաքսի հունը, ուր կտրվում է 600 մետր խորություն ունեցող ուղղաձիգ անդունդով։ Զանգեզուրի լեռնաշղթան, Մեծ Կովկասից հետո, Անդրկովկասում ամենաբարձր լեռնաշղթան է։ Նրա գլխավոր գագաթներից չորսի բարձրությունն անցնում է 3600 մետրից, իսկ մյուս վեցինը՝ 3300 մետրից։ Ամենաբարձր գագաթը՝ Կապուտջուղը (3927 մ) ծածկված է մշտնջենական ձյունով[2]։ Շղթայի ամբողջ երկարությունը հասնում է 150 կմ-ի[3]։

---

[1] Սյունյաց երկրի հարավ-արևելյան մասի ֆիզիկա-աշխարհագրական բնութագիրն ամբողջական լինելու նպատակով գործ ենք ածել լեռների, լճերի, գետերի և այլ տեղանունների նոր անունները, իսկ հին անունները, եթե այդպիսիք հայտնի են, առել ենք փակագծերի մեջ։

[2] Տե՛ս Ляйстер и Чурсин, География Кавказа, Թիֆլիս, 1924, էջ 50։

[3] Տե՛ս նույն տեղը, էջ 60։

Զանգեզուրի շղթայի հյուսիսային մասի գագաթներն ու լանջերը մեղմ թեքությամբ խառնվում են հարևան Ղարաբաղի (Արցախ) և Հայոց ձորի (Վայոց ձոր) բարձրադիր սարահարթերի հետ։ Շղթայի հյուսիսային մասի այդպիսի համեմատաբար փոքր բարձրության պատճառով էլ նրա վրա գտնվող լեռնանցքները տեղ-տեղ հազիվ են նշմարվում, և չափազանց դյուրին է անցնել մի կողմից դեպի մյուսը։ Շղթայի այս մասում է գտնվում Որոտանի լեռնանցքը (2300 մ), որի վրայով այժմ անցնում է խճուղին՝ Եղեգնաձորից դեպի Բազարչայ գյուղը, սակայն մոտենալով Սալվարդին («Աղոթարան»)՝ իր շրջապատի նկատմամբ հետզհետե բարձրանում է։ Սալվարդ գագաթից ոչ հեռու գտնվում է Սիսիանի (Բիչանակի) լեռնանցքը (2100 մ), որով անցնում է ճանապարհը Սիսիանից դեպի Նախիջևան։

Զանգեզուրի (Սյունյաց) լեռների հարավային մասը, որ 94 կմ երկարությամբ ձգվում է Սալվարդից մինչև Արաքս, խիստ կերպով տարբերվում է հյուսիսայինից. նրա հարաբերական բարձրությունն անհամեմատ մեծ է, այստեղ են լեռնաշղթայի ամենաբարձր գագաթները։ Լեռնաշղթայի այս մասում տարածված են բազմաթիվ լճակներ. երկու կողմերից էլ շղթայի լանջերը ակոսված են խորխորատներով։ Սրանց կողերից և հատակից հոսող ձյան հալոցքի ու անձրևների ջրերը շատ հաճախ առաջացնում են հսկայական քանակությամբ ցեխ, որը հոսելով դեպի վար, երբեմն մեծ վնասներ է հասցնում ստորին մասերում գտնվող գյուղերին։ Այդպիսի մի աղետալի դեպք տեղի է ունեցել Ագուլիսի ձորերում՝ 1884 թ. մայիսի 7-ին, որը հսկայական վնասներ է պատճառել[1]։

Սիսիանի լեռնանցքից սկսած դեպի հարավ պատահում են թփուտների առանձին պուրակներ, իսկ ավելի հարավ, լեռնաշղթայի արևելյան մասում անտառներն արդեն համեմատաբար ավելի խիտ և բարձրահասակ են։

Լեռնաշղթայի այս մասում գտնվող լեռնանցքներից հաղորդակցության համար շատ թե քիչ հարմար է Կապուտջու-

---

[1] Տե՛ս Ստ. Լիսիցյան, ՀԽՍՀ ֆիզիկական աշխարհագրություն, Երևան, 1940, էջ 30։

ղի լեռնանցքը, որով անցնում է ճանապարհը Ողջի գետի հովտից դեպի Գիլան գետի հովիտը[1]։

Զանգեզուրի լեռներից սկիզբ են առնում մի քանի շղթաներ, որոնք տարածվում են գրեթե լայնական ուղղությամբ։ Դրանցից ամենաերկարը սկիզբ է առնում Որոտանի և Սիսիանի լեռնանցքների արանքից և ձգվելով դեպի արևմուտք՝ եզրավորում է Հայոց ձորի (Վայոց ձոր) գոգահովիտը հարավային կողմից։ Ավելի հարավ գտնվող Բարկուշատի և Մեղրու (Արևիք) շղթաները Զանգեզուրի լեռների հարավային մասից սկսվելով, իրար նկատմամբ գրեթե զուգահեռ ձգվում են դեպի արևելք և վերջանում Արաքսի ձախ ափին։

Բարկուշատի արևմտյան մասում գտնվում է Կազբել (Գազբոյլ) գագաթը, իսկ սրանից քիչ արևելք՝ Բարկուշատի ամենաբարձր գագաթը՝ Արամազդը (Կամբիլ, 3414 մ)։

Բարկուշատից հարավ գտնվող Մեղրու շղթայի ամենաբարձր գագաթն ունի 3069 մ բարձրություն, բայց ավելի մեծ բարձրություն ունի այդ շղթայից դեպի հյուսիս տարածվող լեռնաճյուղերից մեկի վրա գտնվող Խուստուփ սարը (3916 մ)։

Թե՛ Բարկուշատի և թե՛ Մեղրու բարձրադիր լեռնալանջերը գտնվում են ալպիական մարգագետինների շրջանում։ Լանջերի մեծ մասը ծածկված է անտառներով։

Բարկուշատի վրա նշանավոր է Արամազդի (Կամբլի) լեռնանցքը, իսկ Մեղրու վրա արժե հիշատակել Մեղրու լեռնանցքը (Դիբաքլու), որտեղով այժմ անցնում է Ղափանից դեպի Մեղրի տանող խճուղին։

Բարկուշատի և Մեղրու լեռնաշղթաների միջև գտնվում են Ողջի գետի և նրա Գեղի ու Աչանան (Աճեն) վտակների ավազանները, որոնք իրենցից ներկայացնում են տարբեր ուղղություններով ձգվող լեռների մի լաբիրինթոս՝ կտրտված հիշված գետերի օժանդակներով։

Սևանա (Գեղամա) լճից հարավ-արևելք տարածվող Փոքր Կովկասի արտաքին և ներքին լեռնաշղթաների՝ Զանգեզուրի և Ղարաբաղի (Արցախ) շղթաների միջև զետեղված է Ղարաբաղի անտառաշատ բարձրավանդակը, որն Անդրկովկա-

---

[1] Այս ճանապարհը մատչելի է միայն հետիոտն մարդկանց և գրաստների համար, այն էլ ամառվա ամիսներին։ Ձմեռն իսպառ փակվում է։

մի ամենաբարձր բնագավառն է։ Նրա բարձրությունը հասնում է 3000 մետրի։ Ղարաբաղի ընդարձակ բարձրավանդակի ռելիեֆը ձևավորվել է հրաբխային ինտենսիվ գործունեության շնորհիվ։ Հրաբուխները դասավորված են չորս շարքով՝ հյուսիս-արևմուտքից դեպի հարավ-արևելք։ Այստեղ ստեղծված նախնական ռելիեֆը ծածկված է հրաբուխների արտավիժած լավաների հսկայական շերտերի տակ։ Հրաբուխների գագաթներն, ընդհանուր առմամբ, ունեն օղակաձև կազմություն։ Թեև բարձրավանդակի վրա գտնվող հրաբխային գագաթների բացարձակ բարձրությունները մեծ են, սակայն նրանք շատ քիչ են բարձր շրջապատի նկատմամբ՝ մանավանդ հյուսիսային մասում։

Ղարաբաղի հրաբխային բարձրավանդակը թեքված է երկու ուղղությամբ՝ դեպի հյուսիս-արևելք և դեպի հարավ-արևմուտք։ Սարահարթի վրայից իջնող ջրերից արևմուտքում սկիզբ են առնում Որոտան, իսկ արևելքում՝ Հագարի (Աղավնո) գետերը։

Իշխանասարի մոտ հրաբխային բարձրավանդակի դարավանդները կազմում են ամենացածրադիր աստիճանը։ Այս ցածրադիր տեղում տարածվում են Տեղի և Եռակատարի սարահարթերը, որոնք իրարից անջատված են Գորիս (Զագեձոր, Վարարակ) գետի լայն հովտով։ Գորիսի արևելյան կողմում ձգվող Տեղի և արևմտյան կողմում՝ Եռակատարի բարձրավանդակները հարավում մոտենում են միմյանց, իսկ հյուսիսային մասում բավականին հեռանալով կազմում են մի փոքրիկ հովիտ։

Ղարաբաղի հրաբխային բարձրավանդակի վրա ցրված են բազմաթիվ քարե սեղաններ, «չինգիլներ», որոնցից ամենամեծը՝ Փերիչինգիլը, ունի 10 կմ երկարություն և 3 կմ լայնություն։ Այդ բարձրացումների արանքներում, ինչպես նաև խառնարանների փոսերում, առաջացել են լճակներ, որոնցից ամենամեծը Սև լիճն է՝ Իշխանասարի մոտ։ Բարձրավանդակը կտրտված է գետակներով և հեղեղատներով, որոնց հուների բարձրությունը տեղ-տեղ հասնում է 300—400 մետրի։

Ղարաբաղի հրաբխային բարձրավանդակի բարձրադիր շրջանները նոսր են բնակեցված, գյուղերը կիտված են նեղ

*հովիտներում։ Ամառը այստեղ են բարձրանում բազմաթիվ սարվորներ իրենց հոտերով։ Մնայուն բնակչությունը գտնվում է գլխավորապես բարձրավանդակի ստորին մասերում՝ Տեղի և Եռակատարի սարահարթերում։ Այստեղ պահպանվել են հին ժամանակներում դիզված «քարասյուներ» և քարավանատների ավերակներ։*

*Հողմնահարության հետևանքով Գորիս գետի ավազանում առաջացել են բնական «սյուներ», որոնք տեղ-տեղ իրենց ծայրին կրում են վեմի խոշոր կտորներ՝ նման ալպյան մի քանի գավառների «գլխածածկ սյուներ»-ին։ Նրանց ստորին մասում նախկինում «գյուղացիք փորել են իրենց մառանները, ախոռները, մինչև իսկ բնակարանները»[1]։ Այդպիսի բնակարաններ շատ են հանդիպում հատկապես Խնձորեսկ գյուղում։*

*Բարկուշատի շղթայից դեպի հյուսիս տարածվում են արևելքում՝ Զանգեզուրի (Զագեձոր), իսկ արևմուտքում՝ Սիսիանի (Ծղուկք) մեկուսացած բնագավառները։ Բարկուշատից հարավ մինչև Մեղրու (Արևիք) շղթան տարածվում է Ղափանը (Ձորք և Բաղք), ընդգրկելով Ողջի և Ծավ - գետերի ավազանները։*

*Շղթայից հարավ մինչև Արաքս տարածվում է Մեղրու եռանկյունաձև գավառը։ Մեղրուց իջնող լեռնաբազուկները, ուղղվելով դեպի Արաքս, գավառը վեր են ածել առանձին երկար հովիտների (Կարճևանի, Մեղրու, Շվանիձորի, Նյուվադիի), որոնց ցածր մասերում մեծ տարածում ունեն այգիները։*

## 2. Ջրագրությունը

*Իր լեռնային բնույթով ամբողջ Հայաստանում աչքի ընկնող այս երկիրը հարուստ է գետերով, ջրվեժներով և աղբյուրներով։*

*Գետերն սկիզբ են առնում մեծ մասամբ կամ աղբյուրներից, կամ լեռնային լճակներից, որոնք առաջացել են հրաբխային խառնարաններում։ Սյունյաց աշխարհի հարավ-*

---

[1] Էլիզե Ռեկլյու, *Ռուսական Հայաստան կամ Արաքսի ավազանը, Վաղարշապատ, 1890, էջ 28։*

արևելյան մասի բոլոր գետերն էլ լեռնային են։ Երկրի ընդհանուր մակերևույթը թեքված է դեպի արևելք։ Հենց այդ պատճառով էլ նրա բոլոր գետերն սկիզբ են առնում արևմտյան ջրբաժան բարձրությունների արևելյան կողմից և ընթանում են դեպի արևելք կամ հարավ-արևելք։

Սյունյաց աշխարհի այս մասի բոլոր գետերը, բացառությամբ երկրի հյուսիս-արևելյան մասից սկիզբ առնող Թարթառի (Տրտու, Տրտուական)[1], պատկանում են Արաքսի ավազանին, իսկ Թարթառ գետը աջ կողմից թափվում է Կուրի մեջ։

Գետերից նշանավոր են.

**Որոտանը**— Նրա վերին հոսանքը կոչվում է Բազարչայ։ Միջին հոսանքը պահպանել է իր հին անունը՝ Որոտան[2], իսկ ստորին հոսանքը կոչվում է Բարկուշատ։ Որոտանը սկիզբ է առնում Սյունյաց լեռների արևելյան լանջերից։ Հավաքելով բազմաթիվ աղբյուրների և լճակներից դուրս եկող փոքրիկ գետակների ջրերը՝ ողողում է Եռակատար հարթության հարավային մասը, որտեղ այդ ողողման շնորհիվ առաջացել է Հալիձորի խոր կիրճը։ Այս ձորում, Տաթևի վանքից ոչ հեռու, անցնում է «Սատանի կամուրջի»[3] տակով, ապա, մի քանի կիլոմետր անց, հետզհետե ուղղվում է դեպի հարավ և միանալով Հագարի գետին թափվում է Արաքսի մեջ։

Եռակատարի տակից դուրս եկող հորդաբուխ աղբյուրները կազմում են ջրառատ վտակներ և ձախ կողմից թափվում Որոտանի մեջ։ Նշանավոր են՝ Շաքի, Գորիս և Խնձորեսկ վտակները։ Գորիս գետը համապատասխանում է Ստեփանոս

[1] Տրտու գետը հիշատակում է Մովսես Կաղանկատվացին («Պատմութիւն Աղուանից աշխարհի», Թիֆլիս, 1912, էջ 108), որն Ալիշանի կարծիքով («Սիսական», էջ 206) համապատասխանում է այժմյան Թարթառ գետին։

[2] Հյուբշմանի կարծիքով «Որոտն» անունը ստացել է որոտաձայն հոսանք ունենալուց՝ «Գետոյն որոտաձայն հոսելէն այսպէս կոչուած է եղեր» («Հին Հայոց տեղւոյ անունները», Վիեննա, 1907, էջ 395)։

[3] Ուսումնասիրողների մեծ մասի կարծիքով բնական այդ կամուրջը առաջացել է կրաքարային բաղադրություն ունեցող ջրի երկարատև գործունեությունից։ Այդ կարծիքը հավանական է համարվում երկու պատճառով՝ ա) կամրջի տակից կախված են կրաքարային բազմաթիվ ստալակտիտներ և բ) նրանից ոչ հեռու դուրս է գալիս կրաքարային աղբյուր։

*Օրբելյանի կողմից հիշատակված (Օրբելյան, էջ 254) Վարա-րակ կամ Զագեձոր գետին*[1]*։*

*Աջակողմյան վտակներից կարևոր են՝ Արեքլուի, Սիսիա-նի, Շնաթաղի կամ Լորի գետակները և Տաթևի ջուրը։ Վեր-ջինս, Ալիշանի կարծիքով*[2]*, ավելի հնում կոչվում էր Գինական գետ, որը հիշատակված է Օրբելյանի մոտ (Օրբելյան, էջ 166, 511), իսկ հետագայում, երբ կառուցվեց Տաթևի վանքը, կոչ-վեց Տաթև գետ։*

*Որոտան գետի վրա գտնվող «Սատանի կամուրջ»-ից բա-ցի նշանավոր են նաև ռուս-պարսկական պատերազմից հե-տո (1828 թ.) Մելիք-Թանգու կառուցած Վերին կամ Որոտնայ և Ներքին կամ Անգեղակոթի կամուրջները*[3]*։*

Հազարին կամ Ազարին*—Համապատասխանում էր Օրբել-յանի հիշատակած (էջ 80, 86, 310) «Աղաւնւոյ» գետին*[4]*։ Շահ-նազարյանի կարծիքով «Հազարի» անունն առաջացել է «Հա-զարացի»-ներից։ Նա իր այդ ենթադրության օգտին բերում է այն փաստը, որ մինչև օրս էլ թաթարների վաղեմի երկրում գտնվող Բայկալ լճից սկիզբ առնող գետերից մեկը կրում է նույն «Ազարայ» կամ «Անգարա»*[5] *անունը*[6]*։*

*Շահնազարյանի ենթադրությունը մեզ անհավանական է թվում, որովհետև «ագարակ» բառը, որպես հասարակ անուն, հայտնի էր Վրաստանում ու Հայաստանում դեռ հին ժամա-նակներից սկսած և ուներ «դաշտ», «կալվածք», «գյուղ»*

---

[1] *Տե՛ս* Լեո, *Իմ Յիշատակարանը (տեղեկություններ մեր սարերից ու ձորերից), Շուշի, 1890, էջ 102։*

[2] *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսական, էջ 223։*

[3] *Տե՛ս* Եր. Լալայան, *Զանգեզուրի գաւառ, Հ. Ա, Սիսիան, Թիֆլիս, 1898, էջ 19։*

[4] Շահնազարյան, *Սիւնիք (տե՛ս* Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահան-գին Սիսական, Փարիզ, 1859, առաջաբան, էջ 12),* Ղ. Ալիշան, *Սիսական, էջ 4։*

[5] *Շահնազարյանի՝ բերած այս փաստը, ըստ որի «Հազարի» գետի անունն առաջացել է «Հազարացի»-ներից, չի գալիս հեղինակի կարծիքը հիմնավորելու, որովհետև «Հազարացի» են կոչվել ոչ թե մոնղոլ-թաթար-ները, ինչպես նկատի ունի Շահնազարյանը, այլ առաջին հերթին՝ արաբ-ները։*

[6] *Տե՛ս* Շահնազարյան, *Սիւնիք, էջ 12։*

*իմաստները։ Ավելի ուշ, դասակարգային հասարակության ձևավորման հետ միասին «ագարակ» բառն ստանում է նոր բովանդակություն*[1]*։ Ստեփանոս Օրբելյանի կողմից հիշատակված բնակավայրերի մեջ կան մի շարք գյուղեր (Վայոց ձոր, Բաղք, Արևիք և այլ գավառներում), որոնք կրում են «Ագարակ» անունը։ Այսպիսով դժվար չէ եզրակացնել, որ «Հագարի» կամ «Ագարի» անունը ոչ թե կապված է «հագարացի»-ներ, «Ագարա» կամ «Անգարա» անունների հետ, այլ «ագարակ»-ի հետ։ Դրա համար էլ մենք ավելի հավանական ենք համարում Ալիշանի այն կարծիքը, թե Ագարի կամ Ագարա գետն իր անունը ստացել է Աղահեջ գավառում հիշատակված (Օրբելյան, էջ 516) «Ագարակու գետ» գյուղի անունից («Սիսական», էջ 4)։*

*Հագարի գետն սկիզբ է առնում Գելլըխ սարերից, հոսում է դեպի հարավ-արևելք և միանալով Բարկուշատ գետին, թափվում է Արաքսի մեջ։ Հագարի գետն ամբողջ Սյունյաց աշխարհի ամենամեծ գետն է։*

**Ողջին**—*Հին անունը հայտնի չէ։ Ներքին հոսանքի շրջանում կոչվում է նաև Ջավնդուր։*

*Ողջի գետը կազմվում է երկու ճյուղից, որոնցից մեկն սկիզբ է առնում Կապուտջուղ հրաբխային գագաթի աղբյուրներից և ձյան հալոցքի ջրերից, իսկ մյուսը՝ Յուղասար գագաթից։ Նա նեղ ու անտառապատ հովտով ընթանում է շարունակ դեպի արևելք և, Ջևվու բերդի ավերակների մոտ իր մեջ ընդունելով Գեղվա գետը, հոսում է դեպի Ղափան քաղաքը։ Ղափանից դեպի արևելք ձախ կողմից իր մեջ ընդունելով նաև Աջանան (Աճեն) վտակը, հոսում է ստիճանաբար իրարից հեռացող լեռնաճյուղերի միջով և դուրս գալիս Զանգելանի դաշտը, ուր և թափվում է Արաքսի մեջ։*

**Ծավը**—*Սկիզբ է առնում Մեղրու շղթայի արևելյան երկճյուղ աղեղից և Ողջի գետի գետաբերանից արևմուտք թափվում է Արաքսի մեջ։*

**Մեղրին** *(Մեղրոյ գետ)—Սկիզբ է առնում հովհարի պես*

---

1 ***Տե՛ս*** Проф. *Гр. Капанцян*, Историко-лингвистическое значение топонимики древней Армении, ***Երևանի պետհամալսարան, Գիտական աշխատութ., հ. 14, 1940 թ., էջ 394—395։***

*գասավորված վտակներից, որոնք բխում են Մեղրու և Զանգեզուրի շղթաների լանջերից։ Շուտով մտնելով Մեղրու նեղ ու երկար հովիտը, այնուհետև թափվում է Արաքսի մեջ։ Նրա ստորին հոսանքի շրջանում առաջացել է մի փոքրիկ եռանկյունաձև դաշտ։ Գետի ամբողջ երկարությունը 27* կմ *է։*

*Լճերով աղքատ է երկիրը։ Եղած լճակներն էլ, որոնց թիվը տասից անցնում է, պատմական ժամանակաշրջանում չեն ունեցել և այժմ էլ չունեն որևէ տնտեսական նշանակություն։*

*Երկրի ամեամեծ լիճը Սև լիճն է՝ Իշխանասարի մոտ, որից քիչ հեռու գտնվում է Արկան (Ղանլի-գյոլ) լճակը։ Սիսիանի (Ղըուկը) շրջանում, Փերիչինգիլ լեռնագագաթից ոչ հեռու, ծփում են մի շարք փոքր լճակներ, որոնցից են՝ Ալագյոլը, Ղարա-գյոլը և այլն։*

*Օրբելյանի հիշատակության համաձայն Սյունյաց աշխարհի իշխանանիստ Շաղատ գյուղաքաղաքի մոտ հնագույն ժամանակներում գոյություն ուներ մի լճակ, որի ափին տարածվում էր նրա թաղերից մեկը. «Եւ դարձեալ թաղք մի Շաղատայ (էր) ի լերինն ծովուն յեզր ծովակի միոջ. և երանելին Տիրոտ նստէր ի միջի ոմանց. և գորտքն ի ծովուն ըստ սովորութեան իւրեանց բարբառոյ լնուին յաէժ աղաղակելով...»*[1]*։*

*Գորտերի ներկայությունը լճի մեջ ցույց է տալիս, որ նա ծանծաղ և նույնիսկ սովորական ճահիճ էր. ուստի զարմանալի չէ Շահնազարյանի այն կարծիքը, թե՝ «Ծովակն Շաղատայ... ցամաքեալ է այժմ»*[2]*։*

*Ղափանի շրջանի Կապուտջուղ լեռնազանգվածում է գտնվում երկրի ամենաբարձր Կապույտ լճակը (3799* մ*)։ Բացի դրանից Զանգեզուրի, ինչպես նաև Մեղրու շղթայի այս մասում կան բազմաթիվ մանր լճակներ, որոնք գտնվում են 3000 և ավելի մետր բարձրության վրա։*

*Սյունյաց աշխարհի հարավ-արևելյան մասում կան բազմաթիվ սառնորակ աղբյուրներ, որոնցից ամենաջրառատներն են՝ Վաղուդի և Շաքի գյուղերի մոտակայքում գտնվողները,*

---

[1] **Ստ. Օրբելյան,** *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 44։*

[2] *«Սիսիլք», էջ 10 (Տե՛ս* **Ստ. Օրբելյան,** *Պատմութիւն նահանգին Սիսական, Փարիզ, 1859)։*

*Ակների աղբյուրները՝ Գորիս քաղաքից ոչ հեռու, Ողջի ձորի-լիճքի ենթաշրջանի և մյուս մասերում եղած աղբյուրները։*

*Բազմաթիվ հրաբուխների առկայության հետևանքով երկիրն աչքի է ընկնում հանքային ջրերով, որոնք ունեն գլխավորապես երկաթային, ածխածնային կամ ծծմբային բաղադրություն։*

*Եր. Լալայանն իր «Զանգեզուրի գաւառ» երկհատոր աշխատության մեջ միայն Սիսիանի և Գորիսի շրջաններում ցույց է տվել տասնյակ հանքային աղբյուրներ։ Հանքային աղբյուրներ կան «Սատանի կամուրջի» մոտ՝ երկաթային պարունակությամբ, որից քիչ հեռու «Ճգնավորի բաղնիք» հանքային աղբյուրն է։ Շինուհայր գյուղի մոտ է գտնվում «Շոռ ջուր» կոչվող ածխաթթվային գազով հարուստ աղբյուրը։ Հանքային աղբյուրներ կան Գորիս քաղաքից ոչ հեռու, Քարաշեն և Բայանդուր գյուղերի մոտ, ինչպես և Սիսիանի շրջանի Ուրուտ գյուղի շրջակայքում։*

*«Շոռ» և «թթու» ջրերի բազմաթիվ աղբյուրներ են բխում նաև Ողջագետի և նրա օժանդակների հովիտներում, Մեղրագետի ավազանում և այլն։*

*Անհրաժեշտ է նշել, որ մեր հին և միջին շրջանի պատմիչների ու աշխարհագիրների կողմից չկա որևէ հիշատակություն Սյունյաց երկրի այս մասում գտնվող բազմաթիվ հանքային աղբյուրների ոչ գոյության, ոչ էլ նրանց օգտագործման մասին։ Սակայն տրամաբանական կլինի, եթե ենթադրենք, որ այդ աղբյուրների մի մասի ջրերը հնագույն ժամանակներից սկսած տեղացիների կողմից պրիմիտիվ եղանակով օգտագործվել են բուժման նպատակներով։ Այդ մասին է վկայում Տաթևի վանքի մոտ գտնվող ժայռափոր տաշտակը։*

## 3. Սյունյաց աշխարհի հարավ-արևելյան մասի կլիմայական պայմանները

*Արաբական աշխարհագիրները ամբողջ բնակեցված երկիրը բաժանել են 7 կլիմայական գոտիների[1]։ 10-րդ դարի*

[1] *Տե՛ս Н. А. Караулов,* Сведения арабских писателей о Кавказе, Армении и Азербайджане („Сборник материалов для опис. местн. и племен Кавказа", вып. XXXII, Тифлис, 1902, стр. 53).



2—1351

Հեղինակ Իբն-Ռուստեն իր «Թանկարժեք քարերի գիրք» աշխատության մեջ Ադրբեջանը և Հայաստանի նահանգները մտցրել է 5-րդ կլիմայական գոտու մեջ[1]։ Արաբական հեղինակների կողմից կատարված կլիմայական շրջանների այդպիսի շատ ընդհանուր բաժանումը, որտեղ միևնույն գոտու մեջ մտնում են տարբեր կլիմայական շրջաններ, չի կարող մեզ գաղափար տալ առանձին շրջանների կլիմայական պայմանների մասին։

Մեր պատմիչների և աշխարհագիրների հիշատակությունները ևս կցկտուր են և հնարավորություն չեն տալիս ամբողջական գաղափար կազմել որևէ ֆիզիկա-աշխարհագրական շրջանի կլիմայական պայմանների մասին։ Ուստի երկրի տվյալ շրջանի կլիմայի մասին խոսելիս մենք օգտվելու ենք այժմյան տվյալներից՝ նկատի ունենալով, որ կլիմայական պայմանների փոփոխությունը հաշվվում է հազարամյակներով։

Երկիրը գտնվում է բարեխառն տաք գոտում։ Ընդհանուր առմամբ ունի խիստ ցամաքային կլիմա։ Բայց ռելիեֆի լեռնային բնույթի և մերձակա շրջանների թողած ազդեցությունների շնորհիվ ստեղծվել են բազմաթիվ կլիմայական շրջաններ։ Նրա կլիմայի վրա ազդում են մի կողմից՝ Իրանական սարահարթից փչող տաք ու չոր քամիները, իսկ մյուս կողմից՝ Կասպից ծովի վրայով անցնող քամիները։ Կասպիականից փչող քամիները շեղվելով դեպի հյուսիս-արևմուտք, բարձրացնում են երկրի հարավ-արևելյան մասերի ջերմությունը՝ նպաստելով մերձարևադարձային բույսերի աճմանը։ Իրանական սարահարթից փչող տաք ու խոնավազուրկ քամիները առանձնապես ուժեղ ազդեցություն են թողնում Մեղրու (Արևիք) հարավային մասի վրա։

Չոր և բարձր ջերմություն ունեցող այդ քամիները այն հիմնական գործոններն են, որոնք պայմանավորում են երկրի՝ Արաքսին շփվող մասերի մերձարևադարձային կլիման։

Դեռևս Ստեփանոս Օրբելյանը մերձարաքսյան շրջանի կլիման համարում է նման Եգիպտոսի կլիմային. «...և հասեալ յեզր Երասխայ՝ եգիտ ձորակ մի և ի միջի՝ վէմ մի մեծ

[1] Տե՛ս Караулов, էջ 41։

և ի ներքոյ՝ քիւ փոքրիկ. անդ արարեալ զբնակութիւն իւր զամս 10։ Եւ էր կերակուր նորա ունդք և պտուղք ծառոց զի երկիրն նման է Եգիպտոսի զաման և զձմեռն»[1]։

Առանձնապես մեծ նշանակություն ունեն հարավ-արևմուտքից դեպի հյուսիս-արևելք փչող քամիները, որոնք հանդիպելով Զանգեզուրի լեռնաշղթային՝ թափում են առատ տեղումներ։

Ռելիեֆի խիստ լեռնային բնույթի շնորհիվ կլիմայական բազմաթիվ գոտիներ են առաջանում ուղղաձիգ ուղղությամբ։

Մեղրիում տարեկան միջին ջերմաստիճանը +14°C-ից բարձր է։ Այս շրջանն ունի տաք կլիմա, ջերմության տատանումը ձմեռվա և ամառվա միջև մեծ է. ամառը տոթ է լինում, իսկ ձմեռը՝ համեմատաբար ցուրտ։ Տեղումների քանակը 275 մմ-ից չի անցնում։ Այս շրջանում երկրագործությամբ կարելի է զբաղվել միայն արհեստական ոռոգման դեպքում։ Շրջանի ավելի բարձրադիր մասերը՝ Կալեր, Լիճք, Վանք գյուղերի շրջակայքը կլիմայական պայմանների տեսակետից խիստ կերպով տարբերվում է մերձարաքսյան շրջանից. այստեղ ամառը հով է, իսկ ձմեռը՝ խիստ ցուրտ։

Ղափանի (Բաղք և Ձորք) շրջանի կլիման ևս խիստ բազմազան է։ Այստեղ տարվա միջին ջերմությունն անցնում է +12°C-ից։ Տեղումների քանակը տարվա ընթացքում միջին հաշվով 500 մմ է։ Ղափան քաղաքի շրջակայքում և նրանից արևելք ընկած Ողջի գետի հովտում արհեստական ոռոգման շնորհիվ աճում են խաղող, թուզ, նուռ և այլն։ Ողջի գետի վերին հոսանքի շրջանն ունի ավելի ցուրտ կլիմա, նրա ստորին մասերում տարածված են վարելահողեր, միջին մասում՝ անտառներ, իսկ բարձրադիր լեռների վրա՝ ալպյան մարգագետիններ։

Գորիսի (Հաբանդ) շրջանի կլիման, համեմատած նախորդ երկու շրջանների կլիմայի հետ, ավելի ցուրտ է։ Ձմեռը փչում են ուժեղ քամիներ. ամբողջ շրջանը ծածկվում է ձյան հաստ շերտով։ Տեղումների քանակը հասնում է 700 մմ-ի։ Մեղմ կլիմայի շնորհիվ Որոտանի և շրջանի մի շարք այլ գետերի հովիտներն աչքի են ընկնում այգիների առատությամբ,

---

[1] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 81։

որտեղ աճում են՝ թխենի, կեռասենի, բալենի, սալորենի, խնձորենի, իսկ առանձին տեղերում՝ նաև թզենի, նռնենի և խաղող։

Սիսիանը (Ծղուկը) Սյունյաց աշխարհի հարավ-արևելյան մասի ամենացուրտ շրջանն է։ Այն բարձրադիր է։ Ձմեռն այստեղ լինում են սաստիկ քամիներ։ Ձյան ծածկը կազմում է հաստ շերտ։ Լինում են բքեր, որոնք ձմռանը արգելակում են երթևեկությունը Սիսիանի և մերձակա շրջանների միջև։ Այդ պատճառով էլ, դեռ հին ժամանակներից սկսած, ճանապարհների կողքերին ցցել են բարձր քարեր, որպեսզի ուղևորները ձմեռվա բքին չկորցնեն ճանապարհը[1]։

Սիսիանի շրջանում ամառը մեղմ է, իսկ ձմեռը սաստիկ ցուրտ, տարվա միջին ջերմությունը $+10^{0}C$-ից ցածր է։ Հատկապես իր երկարատև և ցուրտ ձմեռով աչքի է ընկնում Բազարչայի ենթաշրջանը։

Այսպիսով, այս փոքրիկ երկրում հանդես են գալիս մերձարևադարձայինից (Արաքսի հովիտ) մինչև ցուրտ (Զանգեզուրի լեռնաշղթայի բարձրաբերձ գագաթների վրա) կլիմայական բոլոր գոտիները։

## 4. Բուսական և կենդանական աշխարհը

Անանիա Շիրակացու «Աշխարհացույց»-ում շատ սակավ տեղեկություններ են տրված Սյունյաց աշխարհի բուսականության վերաբերյալ։ Ըստ այդ «Աշխարհացույց»-ի «Լինի ի նմա՝ (Սյունիքում) մուրտ, եւ գերեր, եւ նուռն եւ արմտիք»[2]։ Մուրտը հայտնի մրտենի ծառի պտուղն է, որն ունի կծու համ և գործ էր ածվում որպես համեմ[3]։ «Գերեր»-ի վերաբերյալ Ալիշանի կողմից մեջ է բերված մի քանի մեկնություններ. դրանցից ամենահավանականը Սեն-Մարտենինն է, ըստ որի «գերեր»-ը Geranium-ն է (խորդենի)[4]։ Սրանք խոնավասեր

---

[1] Տե՛ս Եր. Լալայան, Զանգեզուրի գաւառ, հ. Բ, Զանգեզուր, Թիֆլիս, 1899, էջ 25։

[2] Ա. Աբրահամյան, Շիրակացու մատենագրությունը, Երևան, 1944, էջ 350։

[3] Տե՛ս «Բառգիրք Հայկազեան լեզուի», հ. 7, էջ 301։

[4] Տե՛ս Ղ. Ալիշան, Սիսական, էջ 5։

*բույսերի տեսակներ են, որոնք աճում են գլխավորապես անտառներում։ Այժմ էլ Ղափանի շրջանի անտառներում տարածված են դրանց տարբեր տեսակները։*

*Երկրի բուսական աշխարհի մասին լրիվ գաղափար կազմելու համար ստիպված ենք դիմել անուղղակի հիշատակությունների, ինչպես և նկատի առնել այժմյան բուսականությունը։*

*Զանգեզուրի լեռնաշղթայից սկիզբ առնող և դեպի արևելք տարածվող Բարկուշատի և Մեղրու լեռների զգալի մասը պատած է անտառներով։ Անտառները մերթ կազմում են համատարած ու մեծ զանգվածներ, որոնք բաղկացած են գլխավորապես կաղնուց և բոխուց, մերթ էլ՝ նոսր ու իրարից անջատված փոքր պուրակներ։ Սյունյաց անտառները հնում բռնել են ավելի մեծ տարածություն։ Օրբելյանը հետևյալ կերպ է հաղորդում Քաշունիքի խիտ ու համատարած անտառների մասին. «Եւ էր երկիրն (Քաշունիք—Բարկուշատ—Թ. Հ.) այնվայր, աւերանի, լի անտառախիտ ծառօք. և ի ներքոյ՝ դաշտ անհուն լայնութեամբ մինչ յեզր Երասխայ»[1]։ Դրանից բացի, Սյունյաց իշխանական տան պատմիչը մի քանի տեղ ևս ակնարկում է Սյունյաց երկրի անտառներով հարուստ լինելու մասին։*

*Այժմյան անտառները մեծ տարածություն են կազմում գլխավորապես լեռների՝ դեպի հյուսիս և հյուսիս-արևմուտք նայող լանջերի վրա։ Անտառ կազմող ծառատեսակներից, բացի վերևում հիշված կաղնուց և բոխուց, նշանավոր են՝ թխկին, հացենին, գայլի կեռասենին, վայրի տանձենին, վայրի խնձորենին, սալորենին և այլն։*

*Չնայած ընդարձակ անտառային տարածությունների և ընտիր ծառատեսակների (ընկուզենի, կաղնի և այլն) առկայությանը, ընդհուպ մինչև սովետական կարգերի հաստատումը անտառներն օգտագործվում էին գրեթե միայն որպես վառելանյութ։ Անտառային տնտեսությունը չէր էլ կարող զարգանալ, որովհետև, ինչպես մատնանշում է Լենին, չկային*

---

[1] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 80։*

*ոչ կատարելագործված հաղորդակցության միջոցներ և ոչ էլ հարմար ճանապարհներ*[1]*։*

*Ավելի ցածրադիր տարածություններում (մերձարաքսյան շրջան) և Ողջի ու Որոտան գետերի հովիտներում տարածված են եղել այգիներ։ Այդ այգիներում աճող ծառատեսակներից նշանավոր էին թթենին, նռնենին, ընկուզենին, կեռասենին, խնձորենին, տանձենին և այլն*[2]*։*

*Մշակույթներից մեծ տարածում ունեն լոբին, կաղամբը, ձմերուկը, սեխը, վարունգը, ղդումը, սոխը, բակլան, կանեփը և կտավհատը, հացաբույսերից՝ ցորենը, գարին, տարեկանը, կորեկը և այլն։*

*Զանգեզուրի, ինչպես նաև նրանից ձգվող մյուս լեռնաճյուղերի բարձրադիր մասերն ու Եռակատարի մի զգալի մասը ծածկված են ալպիական մարգագետիններով, որոնք ամառը առատ կեր են մատակարարում տեղացիների և այլ սարվորների անասուններին։*

*Նախքան բուսական աշխարհի վերաբերյալ մեր համառոտ ակնարկը վերջացնելը անհրաժեշտ ենք համարում նշել, որ Ստեփանոս Օրբելյանը որոշ տեղեկություններ է տվել Սյունյաց երկրի հարստությունների և բուսական աշխարհի վերաբերյալ։ Նա իր «Պատմութիւն նահանգին Սիսական» աշխատության Գ գլուխը վերնագրել է այսպես. «Ցուցմունք սահմանաց աշխարհիս Սիւնեաց. եւ թէ զինչ ունի պարարտութիւն ի պէտս մարդկան. եւ որքանութիւն գաւառաց և անառիկ բերդից»*[3]*։ Եվ նույն այդ գլուխը վերջացնում է հետևյալ նախադասությամբ. «Եւ արդ՝ այս այսքան տեղեկութիւն քեզ բերոց պարարտութեանց և սահմանաց և բերդից և գաւառաց Սիսական աշխարհիս»*[4]*։*

---

[1] Տե՛ս Լեո, *Հայոց Պատմություն*, հ. 3, Երևան, 1946, էջ 494—495։

[2] Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 202, 207, 253—254, Կարապետ վարդապետ Շահնազարեանց՝ միաբան սրբոյ էջմիածնի, *Սիւնիք*, էջ 17 (Տե՛ս Ստեփանոս Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, Փարիզ, 1859, առաջաբանը), Զաքարիա Ագուլեցու *օրագրությունը*, Երևան, 1938, էջ 90, Լեո. *Հայոց պատմություն*, հ. 3, էջ 542, և այլն։

[3] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 12։

[4] Նույն տեղը, էջ 14։

Կասկածից վեր է, որ Գ գլխում Օրբելյանը խոսել է Սյունյաց աշխարհի սահմանները, «բերոց պարարտութեանց», գավառների ու բերդերի մասին։ Սակայն մեր օգտագործած Փարիզի և Թիֆլիսի հրատարակություններում, ինչպես և Երևանի մատենադարանում եղած ձեռագրերում Գ գլխի տակ խոսվում է միայն գավառների ու բերդերի մասին, իսկ «բերոց պարարտութեանց» և սահմանների վերաբերյալ ոչ մի տեղեկություն չկա[1]։ Ընդ որում անհրաժեշտ է նկատել, որ բուսական աշխարհի և սահմանների մասին նա խոսել է Գ գլխի սկզբնական մասում, որից հետո տվել է գավառների ու բերդերի նկարագրությունը։ Մեզ այդ եզրակացությանն է հանգեցնում ոչ միայն վերնագրի մեջ հիշատակված նյութերի կարգը, այլև այն, որ Գ գլուխն անմիջապես սկսվում է «Իսկ գաւառք ունի երկոտասան...»[2] խոսքերով. սա ցույց է տալիս, որ նախքան այդ, գլխի մեզ չհասած մասում խոսվել է նաև այդ հարցերի վերաբերյալ, այսինքն՝ նկարագրվել են սահմանները և բուսական աշխարհը։

Երկիրը հարուստ է վայրի կենդանիներով, թռչուններով ու սողուններով։ Վայրի կենդանիների առատության շնորհիվ Սյունյաց աշխարհի լեռները եղել են որսատեղիներ՝ ազնվական դասի համար։ Այդ մասին Ստեփանոս Օրբելյանը գրում է. «Բաբիկ, որ յետ տիրելոյն բնիկ ժառանգութեան իւրոյ՝ յորս ելեալ խնդալով, խաղալով ի վերայ սովորական թատերացն և խնջոյից խրախարանացն ի լերինս որսասուն և բազմաջուրս վայրացն Սիւնեաց...»[3]։

Երկրի լեռնային ու անտառապատ լինելը նպաստել է վայրի կենդանիների բազմացմանը։ Սյունիքն այժմ էլ աչքի է ընկնում կենդանիների շատությամբ և բազմատեսակությամբ։ Վայրի կենդանիներից այստեղ առանձնապես շատ են գայլն ու աղվեսը։ Ողջի գետի հովտում տարածված է արջը, Մերձարաքսյան գոտում՝ բորենին և վայրի կատուն։ Բարձր

---

[1] Վենետիկի Մխիթարյանների մոտ եղած ձեռագրերում ևս, Ղ. Ալիշանի վկայությամբ («Սիսական», էջ 5), բացակայում է սահմանների և «բերոց պարարտութեանց» վերաբերյալ եղած մասը։

[2] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 12։

[3] Նույն տեղում, էջ 41։

լեռներում, քարքարոտ վայրերում ու ձորերում մեծ թիվ են կազմում քարայծն ու եղնիկները, որոնք հաճախ երևում են հոտերով։ Զանգեզուրում հանդիպում է վայրի ոչխար։ Ամենուրեք կան՝ նապաստակներ, դաշտամկներ, առնետներ ու մկներ, իսկ թռչուններից՝ ճնճղուկ, աղավնի, կաքավ, փասիան, կտցահար, լոր, բադե, արծիվ և այլն, ընտանի կենդանիներից՝ այծ, ոչխար, կով-եզ և մասամբ՝ գոմեշ, բանող անասուններից՝ ձի ու էշ, իսկ հարավային մասերում՝ ջորի։

## 5. Բնական հարստությունները

Մետաղի հանքային հարստությունների տեսակետից բացառիկ տեղ է գրավում Սյունյաց աշխարհի հարավ-արևելյան մասը։

Պղնձի հարուստ պաշարներ կան Կատար-Կավարտի (որանք հնում էլ նույն անուններն էին կրում) շրջանում, Ողջի գետի վերին հոսանքի ավազանում՝ Քաջարան քաղաքի շրջակայքում, Մեղրուց 7 կմ հյուսիս-արևմուտք՝ Ագարակ ավանի մոտ, Սիսիանի բազմաթիվ վայրերում և այլն։ Այդ հանքերը պղնձից բացի պարունակում են նաև դունավոր այլ մետաղներ։ Մի քանի տեղ նկատված են երկաթի հանքեր։

Երկրում եղած բազմատեսակ հանքային հարստությունների հնկայական պաշարների շահագործման մասին չկա հիշատակություն ո՛չ 7-րդ դարի «Աշխարհացույց»-ում, ո՛չ Սյունյաց տան պատմիչ Օրբելյանի մոտ և ոչ էլ մյուս պատմիչների ու աշխարհագիրների աշխատություններում։ Ամենայն հավանականությամբ Օրբելյանն այդ մասին գրած է եղել իր պատմության Գ գլխում, որը սակայն, ինչպես ասացինք, չի պահպանվել։

Կատարի պղնձահանքերի մասին առաջին հիշատակությունը վերաբերում է 14-րդ դարին[1]։

---

[1] Տե՛ս И. Петрушевский, Хамдаллах Казвини как источник по социально-экономической истории Закавказья, Извест. Акад. Наук СССР, 1937, էջ 889։

Սակայն որոշ կողմնակի տվյալներ թույլ են տալիս մեզ ասելու, որ այդ երկրում ոչ միայն հայտնի էին մետաղի մի քանի հանքավայրեր[1], այլև նրանք շահագործման են ենթարկվել դեռ շատ հին ժամանակներից սկսած։

Այսպես, եթե կովկասյան ժողովուրդները մետաղների գործածությունը ժառանգել են դեռևս հաբեթական ցեղերից, ինչպես մատնանշել է ակադ. Մառը[2], ապա միանգամայն տրամաբանական է, որ 10—12-րդ դարերում մետաղի հանքային հարստություններով աչքի ընկնող այս երկրում շահագործման ենթարկվեին շատ հանքավայրեր ու առանձին բովեր։ Գուցե 10—12-րդ դարերում Սյունիքում եղած դրամի առատությունը, որի մասին բազմաթիվ առիթներով վկայում է Օրբելյանը, մասամբ արդյունք էր այն բանի, որ շահագործման էր ենթարկվում ընդերքում եղած արծաթը։ Մահմեդական էմիրություններով շրջապատված Սյունյաց փոքրիկ թագավորությունը, որը գերազանցապես թշնամական հարաբերությունների մեջ էր նրանց հետ, պետք է որ արտադրեր իր սեփական զենքերը՝ թշնամիների հաճախակի հարձակումներից պաշտպանվելու համար։

Երկիրը հարուստ է նաև շինանյութերով՝ գրանիտներով, կրաքարերով, մերգելներով, կավով, ավազով, գաջաքարով (վերջինը գտնվում է Ղափանի շրջանի Կավարտ գյուղի մոտ) և այլ նյութերով։ Շինանյութերը լայն չափով գործածելու կենդանի վկաներ են բազմաթիվ բերդերի, եկեղեցիների ու վանքերի և այլ շինությունների ավերակները։ Շատ է օգտագործվել նաև կավը։ Բազմաթիվ տեղերում (Ղափանի շրջանի Լեռնաձոր, Կաթնառատ գյուղերում) հայտնաբերված են կավե ամաններ, խողովակներ, զանազան իրեր։

---

[1] Սյունիքի Վայոց ձոր գավառի գյուղերից մեկը Օրբելյանի մոտ անվանված է «Պղնձահանք» («Պատմություն նահանգին Սիսական» էջ 353—355) հավանաբար նրա շրջակայքում պղնձի հանքեր լինելու պատճառով։

[2] Տե՛ս Հ. Մանանդյան, Հայաստանի քաղաքները 10—11-րդ դարերում, Երևան, 1940, էջ 33—34։

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

# ՍՅՈՒՆՅԱՑ ԱՇԽԱՐՀԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ ԵՎ ՎԱՐՉԱ-ՏԵՐԻՏՈՐԻԱԼ ԲԱԺԱՆՈՒՄԸ ՄԻՆՉԵՎ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱՎՈՐՎԵԼԸ

*Հին Հայաստանի 15 երկրներից մեկը հանդիսացող Սյունիքը սահմանագծված էր Այրարատ, Վասպուրական, Արցախ, Ուտի (Ուտիք) և Գուգարք աշխարհներով։ Այդ նահանգների, ինչպես և նրանց միջև գտնվող Սյունիքի սահմանները միշտ չէ, որ անցել են միևնույն բնագծերով։ Սյունյաց նախարարական տան պատմիչ Օրբելյանը վկայում է, որ Սյունիքի սահմանները բազմաթիվ անգամ ենթարկվել են փոփոխությունների։ Նա գրում է. «Նաև շփոթեսցի սահման իշխանութեանս և խանգարեալ քակտեսցի և պառակտեսցի ի զանազան բարբանչմանց, որպէս և եղև իսկ բազում անգամ»*[1]*։*

*Հայագետներից ոմանք, որոնք այս կամ այն առիթով անդրադարձել են Սյունիքի սահմանների հարցին, գտնում են, որ մի ժամանակ նրա մեջ էին մտնում 7-րդ դարի «Աշխարհացույցում» նկարագրված Արցախ և Փայտակարան աշխարհները, ինչպես նաև Վասպուրականի այն գավառները (Նախիջևան, Գողթն), որոնք ընկած էին Երասխի ձախ կողմում*[2]*։ Դուրս է գալիս, որ Վասպուրականի կողմից նրա սահմանը մի ժամանակ կազմել է Երասխ գետը, իսկ արևելքում այն հասել է Կասպից ծովին։*

*Ստրաբոնը, որ ծնվել է Փոքր Ասիայի Ամասիա քաղաքում և լավ ծանոթ էր Հայաստանի տերիտորիային, գրում է.*

*«Պատմությունը ասում է, որ Հայաստանը, նախապես փոքր, աճեց այնուհետև Արտաշեսի և Զարեհի ձեռքով, որոնք նախապես Անտիոքոս մեծի զորավարներն էին, և նրա անկումից հետո թագավորեցին, մեկը Ծոփքի, Ակիսենեսի (ուղղել*

---

[1] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 9։

[2] *Տե՛ս И. Шопен,* Исторический памятник состояния Армянской области, *էջ 66։* Էմին, *Տաթեի վանքը (Տե՛ս «Արարատ», 1892 թ., գիրք երկրորդ, Ս. Պետերբուրգ, էջ 19) և այլն։*

Անթիսեննես—Հ. Աճառյան), Ոդոմանտիդոսի (ուղղել Որոմանտիդոսի—Հ. Աճառյան) և այլ գավառների վրա, իսկ մյուսը՝ Արտաշատի վրա։ Երկուսն էլ մեծացան՝ շրջակա ազգերից գրավելով զանազան գավառներ։ Մարերից՝ Կասպիանեն, Փավնիտիսը և Բասրոպետան, վրացիներից՝ Պարխադրոս լեռան ստորոտի գավառները և Խորզենեն և Գուգարքը, որ Կուրի մյուս կողմն է...»[1]։

Մի քանի նշանավոր հայագետներ Ստրաբոնի հիշատակած «Փավնիտիս»-ը նույնացնում են Սյունիքի հետ[2]։ «Փավնիտիս»-ը պահպանվել է ավելի ուշ ժամանակներում «Փառիսոս» կամ «Քուստիփառնես» ձևով։ Վերջինս, ինչպես հայտնի է, Արցախի գավառներից մեկի անունն էր, որ հետագայում չի գործածվել։ Եթե իրոք Փավնիտիսը համապատասխանում է Սյունիքին, ապա հավանական կարելի է համարել և այն, որ Ստրաբոնի ժամանակներում (1-ին դար մ. թ.) Սյունիք և Արցախ նահանգները կազմում էին մի աշխարհ, որը կրում էր Փավնիտես անունը։ Ի դեպ, հետաքրքրական է նաև այն, որ թե՛ Սյունիքում և թե՛ Արցախում կան տեղանունների և նրանց հիմքը հանդիսացող էթնիկական միավորումների նմանություններ։ Ինչպես հայտնի է, Սյունիքը կոչվել է նաև Սիսական, այդ անվան առաջացումը կապված է մեր թվականությունից առաջ 8—7-րդ դարերում դեպի Անդրկովկաս արշաված «սակ»-երի հետ։ Արցախում կա մի գավառ, որը ևս կրում էր նույն անունը՝ «Սիսական», միայն հոգնակի թվով՝ «Սիսականք»։ Ի տարբերություն Սյունիքի, Արցախը ևս երբեմն կոչվել է Փոքր Սյունիք։ Պրոֆ. Ղափանցյանի կարծիքով նույն ցեղից՝ «բաղ»-երից են առաջացել հավանաբար թե՛ Արցախի մյուս անվանակոչումը՝ Կարա-բաղը և թե՛ Սյունիքի Բաղ-ք գավառի ու Բաղ-ա-բերդի անունները[3]։ Նշված

---

[1] Օտար աղբյուրները հայերի մասին, Ստրաբոն, քաղեց և թարգմանեց Հ. Աճառյան, Երևան, 1940, էջ 57։

[2] Տե՛ս Հ. Հյուբշման, Հին հայոց տեղւոյ անունները, էջ 16—17։ Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, էջ 421։ Հ. Աճառյան, Օտար աղբյուրները հայերի մասին, Ստրաբոն, էջ 123, և այլն։

[3] Տե՛ս Проф. *Гр. Капанцян*, Историко-лингвист. знач. топ. древн. Армении. Երևանի պետական համալսարան, Գիտական աշխատություններ, Երևան, 1940 թ., հ. 14, էջ 380—381։

տեղանունների և էթնոսների նույնությունները, որոնց վերաբերյալ մեր պատմիչների մոտ կարելի է գտնել մի քանի անուղղակի հիշատակություններ, ցույց են տալիս, որ հավանաբար հնագույն ժամանակներում Սյունիք և Արցախ նահանգները բնակեցված էին հայկական միատեսակ ցեղախմբերով։

Ինչ վերաբերում է Փայտակարանին, ապա առայժմ չկա որևէ, թեկուզ և թույլ հիմք կարծելու, թե նա երբևէ միացած է եղել Սյունյաց աշխարհին։ Ստրաբոնի վերը բերված վկայությունը զորավոր փաստ է այն մասին, որ դեռ 1-ին գարում (մ. թ.) «Կասպիանա»-ն առանձին երկիր էր։ Փավստոս Բուզանդի մի վկայությունից պարզ երևում է, որ Փայտակարանը «Կասպիանա» («Կազբք») երկրի գլխավոր քաղաքն էր։ Նա, պատմելով Արշակ 2-րդի դեմ ապստամբություն բարձրացրած նահանգների մասին, դրանց շարքում հիշատակում է նաև Կասպիանա («Կազբք») երկիրը՝ Փայտակարան քաղաքով։ Փավստոսից հետո հայ պատմիչների մոտ Կասպիանա երկիրը անվանված է նրա գլխավոր քաղաքի՝ Փայտակարանի անվամբ։ Կասպիանա երկիրը կոչվել է նաև Բաղասական աշխարհ։ Այսպիսով, «Կասպիանա»-ն կամ «Կազբք»-ը, Փայտակարանը և Բաղասականը միևնույն աշխարհի տարբեր անվանակոչումներն են։ Այդ աշխարհը տարածվում էր Կուր և Երասխ գետերի ստորին հոսանքների շրջանում, իսկ արևելքում նրա սահմանները հասնում էին Կասպից ծովին։

Էմիրի, Տոպենի և մյուսների կարծիքն այն մասին, թե իբր Փայտակարանը մի ժամանակ միացած է եղել Սյունիքին, զուրկ է փաստերից։ Մեզ թվում է, թե այդ անհավանական կարծիքը առաջացել է քաղաքական այն դրությունից, որ գոյություն ուներ Սյունիքում 571 թվականից մինչև արաբական տիրապետությունը։ Այդ ժամանակներում Սյունիքը, Սեբեոսի վկայությամբ, իր դիվանը մարզպանական Հայաստանի մայրաքաղաք Դվինից տեղափոխել էր Փայտակարան քաղաքը և մտնում էր Ատրպատականի մեջ[1]։ Սակայն Սյունիքում իշխում

[1] Սեբեոս, Պատմութիւն ի Հերակլն, Ս. Պետերբուրգ, 1879, գլ. 26. «զի տարցեն զդիւան աշխարհին Սիւնեաց ի Դունայ Փայտակարան քաղաք. եւ կարգեսցէ զքաղաքն ի շահրմար Ատրպատական», 152 էջում՝ «Որք (Սյունյաց իշխանները—Թ. Հ.) լծեալ էին յառաջագոյն յաշխարհագիրն Ատրպատական, մինչեւ բարձաւ թագաւորութիւնն պարսից»։

էին տեղական իշխանները, և նա փաստորեն մտնում էր Հայաստանի մարզպանության մեջ, մինչդեռ Փայտակարանը Ատրպատականի մարզպանության մեջ մտնող վարչական միավորներից մեկն էր[1]։

Պատմական Հայաստանի վարչական խոշոր միավորներից մեկի՝ Սյունյաց աշխարհի՝ տարբեր ժամանակներում ունեցած սահմանների վերաբերյալ չկան ուղղակի հիշատակություններ։ Սյունյաց նախարարական տան պատմիչ Ստեփանոս Օրբելյանի տված տեղեկությունները, որոնք կարող էին այդ հարցի պարզաբանման համար կարևոր աղբյուր ծառայել, ինչպես տեսանք, մեզ չեն հասել։ Համեմատաբար ավելի որոշակի և ամբողջական են 7-րդ դարի «Աշխարհացոյց»-ի մեջ տրված տեղեկությունները, որոնց համաձայն Սյունիքը գտնվում էր Այրարատից արևելք՝ Արցախի և Երասխի միջև. «Իններորդ՝ Սիւնիք յելից կայ Այրարատոյ ի մէջ Երասխայ եւ Արցախայ»[2]։

Նկատի ունենալով բերված վկայությունը, ինչպես նաև զանազան այլ աղբյուրներ, ավանդություններ և պահպանված վայրերի հայտնի դիրքը, Շահնազարյանն իր «Սիւնիք» փոքրածավալ աշխատության մեջ տվել է Սյունիքի՝ 7-րդ դարում ունեցած բնական մոտավոր սահմանները[3]։ Սահմանները գրեթե նույն բնագծերով է անցկացրել նաև Ալիշանը («Սիսական», էջ 2), միայն այն տարբերությամբ, որ Շահնազարյանի մոտ Նախիջևանն ու Գողթնը դուրս են մնում Սյունիքի տերիտորիայից, իսկ Ալիշանը, հաշվի առնելով միայն բնական-աշխարհագրական սահմանները, դրանք միացրել է Սյունիքին՝ Երասխ գետն այդ մասում համարելով սահման Սյունիքի և Վասպուրականի միջև։

Այժմ պարզենք, թե մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում՝ 10-րդ դարում, Սյունիքը, որպես վարչական միավոր, ինչ սահմաններ ուներ։

---

1 Տե՛ս Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, էջ 221։

2 Ա. Աբրահամյան, Անանիա Շիրակացու մատենագրությունը, էջ 350։

3 Տե՛ս Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, Փարիզ, 1859, էջ 11։

Արևմտյան կողմում Սյունիքի և Այրարատի միջև՝ Հրազդանի ակունքների մոտից մինչև Շարուրի դաշտը, սահմանն անցնում էր Գեղամա լեռներով[1]։ Սյունիքի այդ մասի սահմանները 10-րդ դարում ևս մնացել էին նույնը։

Տերիտորիալ հսկայական փոփոխություններ էր կրել Սյունիքը հարավ-արևմտյան մասում։ Այստեղ նրանից դուրս էին մնացել Երնջակ, Գողթն և Նախիջևան գավառները։

Երնջակ գավառը տարածվում էր նույնանուն գետի (այժմ՝ Ալինջաչայ) ավազանում։ Սա հայտնի էր իր Երնջակ բերդով, որի ավերակներն այժմ էլ կան՝ Նորաշեն գյուղից մոտ երկու կիլոմետր հեռու Ալինջաչայի ափին[2]։ Երնջակ գավառը թե՛ 7-րդ դարի «Աշխարհացոյց»-ի[3] և թե՛ Օրբելյանի պատմության մեջ (էջ 13) դասվում է Սյունիքի գավառների շարքում։

Ատրպատականի ոստիկան Յուսուֆի Հայաստան արշավելու ժամանակ դեռևս Երնջակը գտնվում էր Սյունիքի իշխանների ձեռքին, որովհետև Երնջակ բերդում էին ամրացել երկրի իշխանների կանայք։ Այդ մասին հիշատակում են Հովհաննես կաթողիկոսը և Ասողիկը։

«Եւ զկնի այսորիկ (Սմբատ 1-ին Բագրատունի թագավորին կալանավորելուց հետո—Թ. Հ.) ապա ոստիկան (Յուսուֆը) իբրև զկատսայ յեռանդեան ի չար միտս իւր բորբոքեալ՝ գնայր չուեր յամրոցն, որ կոչի Երընջակ՝ ի խլել բերել և կորուսանել և յատակել. վասնզի անդ զօղեալ ամրացեալ կային տիկնայքն բարեպաշտօնք՝ մայր մեծ իշխանին Սիւնեաց Սմբատայ և կին նորուն՝ քոյր Գագկայ, և կին Սահակայ եղբօր Սմբատայ, և այլ ևս պատուականք յազատաց արք և կանայք»[4]։

«Եւ անօրէնն Յուսուփ հանդերձ թագաւորաւն ի Դուին չուեալ, և երթալ մարտնչէր ընդ ղղեակ բերդին, որում Երընջակն կոչեն, յորում ամրացեալ էին կանայք ազատացն և գանձք նոցին. և առեալ զամրոցն՝ անդրէն դառնայ ի Դուին։

[1] Տե՛ս Ալիշան, *Սիսական*, էջ 2։

[2] Տե՛ս Ա. Սեդրակեան, *Հնութիւնք հայրենեաց ի գաւառին Երնջակու*, Վաղարշապատ, 1872, էջ 89։

[3] Տեքստը տե՛ս պրոֆ. Ա. Աբրահամյանի «Անանիա Շիրակացու մատենագրությունը» աշխ. 350-րդ էջում։

[4] Հովհ. Կաթողիկոս, *Պատմութիւն հայոց*, Թիֆլիս, 1912, էջ 237։

*Եւ ապա զԹագաւորն Սմբատ զփայտէ կախեալ սպանանէ ի Դուին քաղաքի, ի յՅԿԳ թուականին»*[1]։

*Ինչպես տեսնում ենք, երկուսի վկայությունները համապատասխանում են իրար։ Ըստ երևույթին, հենց այդ ժամանակ, Երնջակ բերդը գրավելու հետ միասին, Յուսուֆը զավթել էր նաև Երնջակ գավառն ամբողջությամբ և, ինչպես վկայում են Դրասխանակերտցին ու Օրբելյանը, հանձնել Գողթնի արաբական էմիրությանը։*

*«Աստ ուրեմն ապա մեծ իշխանն Սիսական տոհմին՝ Սմբատ, երիս ևս եղբարբքն հանդերձ ցասմնական իմն սախ դժգմեալ ընդ Հագարացւոյն, որ յայնժամ զգաւառն Գողթան բռնակալեալ պայազատէր՝ խնդրէին առ ի նմանէն յինքեանս դարձուցանել զսեպհական իւրեանց ամրոցն Երնջակ և զաւատորոտով նորա զգաւառն, զոր Յուսփայ ոստիկանին առեալ տուեալ էր ի ձեռս Գողթան բռնակալին. այլ նա իբրև յարքունուստ զայն նմա շնորհեալ համարէր և ոչ առնոյր յանձն տալ»*[2]։

*«...խնդրէին (Սյունյաց իշխանները—Թ. Հ.) ի բաց զսեպհական հայրենիսն իւրեանց զամուրն Երնջակայ և զշրջակայ գաւառսն, զորս Յուսուֆ ի նա հաւատացեալ էր, զոր ամիրայն Գողթան ոչ կամէր տալ. այլ ասէր յարքունուստ ինձ իսկ պարգևեալ է»*[3]։

*Սյունյաց Սմբատ, Սահակ, Բաբգեն և Վասակ իշխանները Երնջակ բերդն ու գավառը ետ ստանալու համար վարած ապարդյուն բանակցություններից հետո դիմում են կռվի, սակայն, Օրբելյանի վկայության համաձայն, Թուրք զորքի դավաճանության պատճառով պարտվում են ու ետ քաշվում*[4]։ *Այսպիսով, Երնջակ բերդն ու գավառը մնում են Գողթնի էմիրության ձեռքին։ Դրանից հետո, մեզ հետաքրքրող ժամանակներում, չկա որևէ տեղեկություն Երնջակ գավառը Սյունիքին վերամիավորելու մասին։*

*Մովսես Խորենացու վկայությամբ Գողթն գավառում,*

---

[1] Ասողիկ, *Պատմութիւն տիեզերական, Ս. Պետերբուրգ, 1885, էջ 165։*

[2] Հովհ. Կաթողիկոս, *Պատմութիւն Հայոց, էջ 307—308։*

[3] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 195։*

[4] *Տե՛ս նույն տեղը, էջ 195—196։*

*Հնագույն ժամանակներից սկսած, իշխում էին Սյունյաց նախարարական տան մի ճյուղի իշխանները. «Իսկ Ռշտունիների և Գողթնեցիների մասին գտա պատմված, թե նրանք անկասկած Սիսական (տան—Մալխասյան) հատվածն են կազմում, բայց չգիտեմ, արդյոք գավառնե՞րն են կոչվել մարդկանց անունով, թե գավառների անունով կոչված են նախարարությունները»[1]։*

*Խորենացու այս հիշատակությունը գրեթե նույնությամբ երկրորդել է և Օրբելյանը. «...նմանապէս և իշխանք Գողթանն ոչ եթէ յայլմէ տոհմէ էին, այլ ի նոյն Սիսական ցեղէ, ըստ մասին ի ժառանգութիւն առեալ էին զայս գաւառ, որպէս ցուցանէ քեզ Մովսէս Խորենացի»[2]։*

*Անկախ նրանից, թե Գողթնի իշխանները Սյունյաց նախարարական տան տոհմից էին առաջացել, թե՝ չէ, փաստը մնում է փաստ, որ իրոք Գողթն գավառում իշխում էր մի առանձին նախարարական տուն, որը պատմական Հայաստանի մյուս ավագ նախարարական տների հետ միասին հիշատակված է 5-րդ դարին վերաբերող «Գահնամակ»-ում և «Զորանամակ»-ում[3]։*

*5-րդ դարի մատենագիր Կորյունի վկայությամբ Մեսրոպը գրերի գյուտն անելուց հետո գնում է Գողթն, իսկ այնտեղից էլ՝ նրա սահմանակից Սյունիք։ Բերենք պատմիչի խոսքերը. «Ապա յետ այնորիկ (Գողթնում լինելուց հետո՝ Մեսրոպը—Թ. Հ.) ի սահմանակիցս ի Սիւնական աշխարհն եկանէր. և անդ աստուածասէր հնազանդութեամբ ընկալեալ զնա իշխանին Սիւնեաց, որ էր Վաղինակ անուն, բազում օգնականութիւն գտեալ ի նմանէն վասն իրացն առաջի արկելոցն, մինչև հասանել նմա բովանդակ ի վերայ սահմանաց Սիւնեաց»[4]։*

*Ինչպես տեսնում ենք, Կորյունն անուղղակի կերպով վկայում է, որ Գողթնը նույն դարի սկզբներին չէր մտնում*

---

[1] Մ. Խորենացի, *Հայոց պատմություն, էջ 75։*

[2] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 23—24։*

[3] ***Տեքստերը տե՛ս*** *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, ***էջ 249 և 252։***

[4] Կորյուն, *Պատմութիւն վարուց և մահուան սրբոյն Մեսրոպայ վարդապետի մերոյ թարգմանչի, Թիֆլիս, 1913, էջ 21։*

Սյունիքի մեջ։ Ըստ երևույթին նրա իշխանները վասալական կախում չունեին նաև Հարևան Մարդպետական նախարարական տնից, որի իշխանությունը տարածվում էր լայնածավալ մի երկրի վրա՝ ճվաշ գավառով շփվելով Գողթնին։ Արշակունիների անկումից հետո, հավանաբար, Մարդպետական գավառների հետ միասին Գողթնը 5-րդ դարի կեսերին անցել է Արծրունիների ձեռքը, քանի որ 7-րդ դարի «Աշխարհացույց»-ի մեջ այն դասված է Վասպուրականի գավառների շարքում[1]։

Թովմա Արծրունու վկայությամբ Գողթն գավառը Վասպուրականի հետ քաղաքականապես միացած է եղել մինչև 737 թվականը։ «Իսկ Գողթն գաւառ (հանեալ էր) ի ժամանակի կատարման սրբոյն Վահանայ, յամի ՃՁԶ (փրկչ. թվակ. 737) թուականութեանց, որում ամի կատարեցաւ սուրբն Վահան, որ էր որդի Խոսրովայ Գողթան տեառն»[2]։

Վասպուրականից անջատվելուց հետո մինչև 10-րդ դարը Գողթնի քաղաքական վիճակի վերաբերյալ եղած տեղեկությունները աղոտ և կցկտուր են։ Ալիշանը գտնում է, որ այդ ժամանակներում Գողթնը քաղաքականապես միացված էր Սյունիքին՝ կազմելով նրա գավառներից մեկը և նրանից անջատվեց միայն 10-րդ դարում, երբ այնտեղ կազմավորվեց արաբական էմիրությունը[3]։ Գողթնի էմիրության կազմավորման ճշգրիտ ժամանակը հայտնի չէ. նրա գոյության մասին մեր պատմիչները հիշատակում են 10-րդ դարի սկզբներից սկսած։ Մենք վերը տեսանք, որ այդ էմիրության տերիտորիան, բացի Գողթն գավառից, իր մեջ ընդգրկում էր նաև Ատրպատականի ոստիկան Յուսուֆի կողմից 912—13 թթ. գրավված Երնջակ գավառը՝ Համանուն բերդով։ Հետագայում Գողթնի էմիրությունը ոչ միայն տերիտորիալ կորուստներ չունեցավ, այլև ընդարձակելով տիրապետությունները Արաքսի ափերով դեպի Այրարատ, Սմբատ Բ թագավորի ժամանակներում (977—990 թթ.) գրավեց Դվինը. «Իսկ Աբուտլուփ Գողթան ամիրյան միւս անգամ տիրէ Դունայ և երդմունս դաշանց

---

[1] «Աշխարհացույց»-ի տեքստը տե՛ս Ա. Աբրահամյանի «Անանիա Շիրակացու մատենագրությունը» աշխ. 349—350-րդ էջում։

[2] Թովմա Արծրունի, Պատմութիւն տանն Արծրունեաց, Թիֆլիս, 1917, էջ 404։

[3] Տե՛ս Ղ. Ալիշան, Սիսական, էջ 311։

*Հաստատէ թագաւորն Հայոց Սմբատ ընդ նմա, միջնորդութեամբ Տեառն խաչկայ՝ խաղաղութեամբ կեալ ընդ միմեանս»[1]։*

*Այսպիսով տեսանք, որ Գողթն գավառը մեզ հետաքրքրող ժամանակներում չէր մտնում Սյունիքի մեջ, այլ գտնվում էր պարսկա-արաբական աղնվականների տիրապետության տակ։*

*Սյունիքի հարավ-արևմտյան մասում գտնվող մյուս սահմանային գավառը, որ տարբեր ժամանակներում մտել է տարբեր քաղաքական-վարչական միավորների մեջ, Նախիջևանըն է։*

*Արշակունիների օրոք, ինչպես հայտնի է, ավագ նախարարների շարքում էր դասվում Մարդպետունի նախարարական տունը։ Նրա իշխանները հսկում էին արքունի գանձերի ու կանանց վրա և ունեին իրենց սեփական ընդարձակ կալվածքները։ Խորենացին վկայում է, որ Մարդպետունի նախարարների կալվածքները Ատրպատականից ձգվում էին մինչև Ճվաշ և Նախիջևան, «Նաև հրամայում է (Վաղարշակը) նույն ցեղից ներքինիներ խզել և նրանց նահապետ է նշանակում Հայրին, որի իշխանությունը տարածվում էր Ատրպատականից մինչև Ճուաշ և Նախճավան»[2]։*

*Մարդպետական տան իշխանները թշնամի էին Արծրունիներին։ Այդ թշնամությունն այն աստիճան սրվեց, որ Մարդպետունի իշխանները, որ շատ մոտ էին կանգնած Արշակունիների արքունական տանը, Տիրան թագավորի օրոք գրեթե իսպառ ոչնչացրին Արծրունյաց նախարարական տունը. ազատվեց միայն մի պատանի՝ Շավասպ Արծրունին։ Հարվածն այնքան ուժեղ էր, որ Արծրունիները երկար ժամանակ չկարողացան մասնակցել երկրի քաղաքական գործերին։ Հակասությունը երկու նախարարական տների միջև հետագայում էլ շարունակվեց և վերջացավ նրանով, որ Արշակունիների անկման հետ միասին վերացավ նաև Մարդպետունի նախարարական տունը, իսկ նրանց պատկանող ընդարձակ կալվածքները անցան Արծրունիներին[3]։*

---

[1] Ասողիկ, *Պատմութիւն տիեզերական*, էջ 200—201։

[2] Խորենացի, *Հայոց պատմություն*, էջ 72։

[3] *Տե՛ս Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, **էջ 319—320։**

*Հենց այդ ժամանակ էլ Մարդպետական Ճվաշ, Թոռնավան, Արտազ, Մարդաստան, Գառնի, Առբերան, Աղանգառո, Բաղլովիտ, Պալունիք, Մեծնունիք, Տոսպոշտունիք, Բոգունիք և Գուզան գավառների*[1] *հետ միասին Նախիջևանի գավառը նույնանուն քաղաքով անցավ Արծրունիների ձեռքը՝ մտնելով Վասպուրական աշխարհի մեջ։ Յոթերորդ դարի «Աշխարհացույց»-ում դրանք թվարկված են Վասպուրականի կազմում*[2]*։ Արծրունյաց պատմիչը վկայում է, որ Նախիջևանը 8-րդ դարի սկզբներին, երբ Հեշմ ոստիկանը Նախիջևանում կոտորում է հայոց զորքի և իշխանների մի զգալի մասին, անջատվում է Վասպուրականից*[3]*։*

*Ենթադրվում է, որ այդ ժամանակներում Նախիջևան գավառն ու քաղաքը միացվեց Սյունիքին*[4]*։ Սակայն, ինչպես երևում է, Նախիջևանն այդ դարերում հաստատուն կերպով չէր պատկանում Սյունյաց և Արծրունյաց սահմանակից իշխանական տներից որևէ մեկին, այլ կովախնձոր էր հիշյալ իշխանական տների միջև։ Թովմա Արծրունու վկայության համաձայն 10-րդ դարի սկզբներին (902 թ.) Ապահունյաց գավառում հաստատված կայսիկ ցեղի դեմ մղած կռվում հաղթություն տանելու*[5] *համար Սմբատ Ա Բագրատունի թագավորը Նախիջևանը Արծրունիներին էր տվել իբրև պարգև. «Քանզի և զոստանն Նախճաւան տուեալ էր ի կալուած վյաղթութեանն մանազաւենին Կայսկի»*[6]*։ Բայց, ինչպես երևում է, այն երկար ժամանակ չի մնում Արծրունյաց իշխանների ձեռքին։ Վերջիններիս գահերեց իշխան Աշոտի մահից հետո (որ տեղի ունեցավ Նախիջևանում 904 թ.) Նախիջևանը նորից Սյունիքի կազմում է հիշատակվում։ 905—909 թթ. Սյունյաց և Արծրունյաց իշխանական տների միջև Նախիջևանի շուրջը եղած հակասությունները մեծապես սրվում են։ Նրանցից յուրաքանչյուրն ուզում էր ինքը տիրանալ քաղաքին։ Հովհան-*

---

[1] Թովմա Արծրունի, *Պատմութիւն տանն Արծրունեաց, էջ 403—404։*

[2] *Տե՛ս* Ա. Աբրահամյան, *Անանիա Շիրակացու մատենագրությունը, էջ 450։*

[3] Թովմա Արծրունի, *Պատմութիւն տանն Արծրունեաց, էջ 404։*

[4] Ղ. Ալիշան, *Սիսական, էջ 490։*

[5] *Տե՛ս նույն տեղը, էջ 395—396։*

[6] Թովմա Արծրունի, *Պատմութիւն տանն Արծրունեաց, էջ 404։*

նես կաթողիկոսն այդ մասին գրում է. «Զայսու ժամանակաւ գլխաւոր և գահերէց իշխանն Գագիկ Արծրունի աղերսահա-յաց յարքայէ Սմբատայ լեալ՝ առ ինքն զքաղաքն Նախջա-ւան խնկայր դարձուցանել, իբր թէ ի հաւու և ի հօրէ նոցունց ակ տան և ազգի պատշաճեալ՝ և նուաճեալ ունէր զնա. և զկնութիւն իւր զորոշումն քաղաքին առ ի յիւրմէ վարկանէր. իսկ արքայ վասն զի յառաջագոյն տուեալ էր ձիրս պարգև-աց Սմբատայ իշխանին Սիսականի, որ արտաքս բերէր միշտ զինքն յընդունայնակարծ հպարտութենէ և մտերմական ծառայութեամբ կատարէր բոլոր սպասահարկութիւն նորա՝ ոչ կամեցաւ զձեռագիրն իւր ի ձեռաց իշխանին հափշտակել և ոչ զընծայեալսն նմա մեծարանս յանարգանս արհամարհանաց դարձուցանել»[1]։

Բերված վկայությունից անկասկած երևում է.

ա) Վասպուրականում իշխող Արծրունիները Նախիջևան քաղաքից ոչ միայն չէին հրաժարվել, այլև այն հաշվելով հայ-րենական սեփականություն, Սմբատ Ա-ից պահանջում էին ետ վերադարձնել իրենց։

բ) Նախիջևանը[2] Սմբատ Ա-ի կողմից որպես պարգև տըր-ված էր Սյունյաց Սմբատ գահերեց իշխանին՝ վերջինիս կա-տարած ծառայությունների համար։ Բնականաբար այդ պար-գևատրումը պետք է տեղի ունեցած լիներ 905—908 թթ. (Ճշգրիտ ժամանակի մասին տեղեկություններ չկան)։

գ) Նախիջևանը կռվախնձոր է եղել Սյունյաց և Արծրու-նյաց իշխանների միջև. ընդ որում առաջիններն իրենց պա-հանջն արդարացնում էին գլխավորապես աշխարհագրական

---

[1] Հովհ. Կաթողիկոս, Պատմութիւն Հայոց, էջ 208—209։ Դրասխանա-կերտցու այդ վկայությունը երկրորդել է նաև Օրբելյանը. «...և միաբա-նեալ (Գագիկ Արծրունին—Թ. Հ.) խորհրդեամբ ընդ Յուսուփայ դոյզն ինչ պատճառաւ, զի խնդրէր ի Սմբատայ թագաւորէն առնուլ զՆախջաւան յիշ-խանէն Սիւնի Սմբատայ և տալ նմա. զոր ոչ կամեցաւ վասն բնական հայ-րենացն...» (էջ 187)։

[2] Օրբելյանն իր պատմության սկզբի մասում (էջ 14) հաղորդում է, որ Նախիջևանը Սյունյաց «մայրաքաղաքն» էր. «իսկ ունի մայրաքաղաք Նախիջևան», սակայն ինչպես նրա պատմության մեջ, այնպես էլ մյուս աղբյուրներում ոչ մի տեղ չի ասված, որ Նախիջևանն իրոք եղել է Սյուն-յաց իշխանանիստ «մայրաքաղաքը»։

գիրքով, իսկ երկրորդներն այն հաշվում էին պապենական պատկանելություն։

դ) Թովմա Արծրունու և Դրասխանակերտցու վկայությունները նկատի ունենալով, կարելի է ասել, որ 10-րդ դարի առաջին տասնամյակում Բագրատունի թագավորը (Սմբատ Ա-ն) Նախիջևանը պարգևում էր Սյունիքի և Վասպուրականի իշխաններից նրան, ով աչքի էր ընկնում իր հնազանդությամբ ու քաջությամբ։

Սյունյաց իշխաններն ամեն կերպ ձգտում էին իրենց ձեռքը պահել Նախիջևանը, որպեսզի հնարավորություն ստանային առևտրական լայն կապերով կապվել շրջակա երկրների հետ։ Դրա կարիքը խիստ կերպով զգացվում էր Սյունիքում, որովհետև այնտեղ չկային քաղաքներ և հարմար ճանապարհներ։ Ի դեպ, Դրասխանակերտցին Գագիկ Արծրունու ապստամբվելու և Յուսուֆ ոստիկանի հետ Հայաստան արշավելու հիմնական պատճառը տեսնում է Նախիջևանից նրան զրկելը[1]։

Հավանաբար Յուսուֆն իր արշավանքի ժամանակ (909թ.) Նախիջևանը գրավելով, այն տվել էր Արծրունյաց Գագիկ իշխանին։ Սրա մասին ուղղակի հիշատակություն չկա, բայց կարելի է ենթադրել Դրասխանակերտցու հետևյալ վկայությունից. «Եւ ապա (Յուսուֆը—Թ. Հ.) դիմեալ հասեալ ի Նախջաւան քաղաք. և անդ աւուրս ինչ զետեղեալ՝ մինչև կարապետքն հրաւիրեալք՝ Գագիկ և Գուրգէն, գային հասանէին և գունդք գունդք լինէին։ Ապա զօրէն իմն հրոսակաց դիմէ ելանէ նախ զկողմամբք Սիւնեաց աշխարհին»[2]։

Հնարավոր է նաև, որ Յուսուֆը Նախիջևանը տված չլինի Արծրունիներին, սակայն մի բան պարզ է, որ այդ թվերից սկսած (909—910) այլևս Նախիջևանը մեր աղբյուրներից և ոչ մեկի մեջ չի դասված Սյունիքի կազմում։ Ի դեպ, մեզ հա-

---

[1] Հովհ. Կաթողիկոս, Պատմութիւն Հայոց, էջ 209. («Ընդ որ յաւէտ իմն իշխանին Գագկայ դժկամեալ՝ դրժողութեամբ չարահաւակ առ արքայ լինէր. և ապա բազում նուէրս ընծայից և պատարագաց պատրաստեալ՝ չուէր գնայր առ ոստիկանն Յուսուփ ի Պարսս...» և այլն)։

[2] Նույն տեղը, էջ 213։

սած բոլոր աղբյուրների հաղորդած տեղեկություններից որոշակի երևում է, որ 8-րդ դարի սկզբից սկսած Նախիջևանում և նրա շրջակայքի տերիտորիաներում կարևոր դեր էին խաղում պարսկա-արաբական իշխանավորները։

Այսպիսով տեսանք, որ մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում Երնջակ, Գողթն և Նախիջևան գավառները Սյունիքի կազմից դուրս էին գտնվում։ Ուրեմն ֆեոդալական Հայաստանի վարչական-քաղաքական միավորներից մեկը հանդիսացող Սյունյաց աշխարհի հարավ-արևմտյան սահմանը 10-րդ դարում անցել է ոչ թե Երասխ գետով, այլ Վայոց ձորի լեռնաշղթայից դեպի հարավ տարածվող լեռնաճյուղերի հարավային ծայրերով՝ հյուսիս-արևմուտքից հարավ-արևելք ուղղությամբ, գրեթե ուղիղ գծով մինչև Երնջակ գետի ակունքները, ապա այնտեղից թեքվելով դեպի հարավ, Սյունյաց լեռների ջրբաժան բարձրություններով հասել է Երասխի ափը՝ Գողթն ավանի մոտ[1]։

Գողթնից սկսած դեպի արևելք Սյունիքի և Ատրպատականի սահմանն անցնում էր Երասխ գետով։ Այս մասին Օրբելյանը գրում է. «Ի դառնալն Բարդուղիմէոսի ի Պարսից անցեալ ընդ Ատրպատական՝ գայ իւրովք աշակերտօքն և անցեալ ընդ գետն Երասխ՝ մտանէ ի սահմանս Սիսականու, և սկիզբն արարեալ քարոզութեան յՈրդվատ գեօղ և յԱրևիս գաւառ և ի տունն Բաղաք և ի Գողթն»[2]։

Ըստ յոթերորդ դարի «Աշխարհացոյց»-ի ևս Սյունյաց աշխարհի հարավային սահմանը Երասխ գետն է[3]։ Սյունիքի սահմանն այս մասում, որ Երասխ գետով ձգվում էր Գողթն ավանից մինչև Աղավնո (Հագարի) գետի և Երասխի գետախառնուրդը՝ այժմյան Խուդափիրինի կամուրջի մոտ[4] անփոփոխ է մնացել և 10-րդ դարում։ Այնպես որ Արևիք, Կովսական և Քաշունիք գավառները, որոնք այս մասում շփվում են

---

[1] Սահմանի այդպիսի ուղղության համար հիմք ենք ընդունել Ալիշանի «Սիսական» աշխատության կցված քարտեզը։

[2] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 21։

[3] Տե՛ս Ա. Աբրահամյան, *Շիրակացու մատենագրությունը*, էջ 350։

[4] Ալիշան, *Սիսական*, էջ 2։

*Երասխի հետ, 10-րդ դարում և նրանից էլ հետո մտնում էին Սյունյաց երկրի մեջ։*

*Թե՛ Շահնազարյանը, թե՛ Ալիշանը*[1] *արևելյան կողմից Սյունիքի սահմանը Արցախի հետ անց են կացնում Աղավնո գետի գետաբերանից սկսած՝ Արցախի (Ղարաբաղի) հրաբըխային գագաթների ջրբաժան շարով։ Թե ինչքանով է համապատասխանում սահմանային այդ գիծը ուրիշ ժամանակներում, մեզ համար կարևորություն չունի, բայց 10-րդ դարում Սյունիքն Արցախի հետ չէր սահմանակցվում Արցախի լեռներով։ Օրբելյանն իր 10-րդ դարին վերաբերող մի անուղղակի վկայության մեջ պարզ ու որոշակի ասում է, որ Սյունյաց իշխանների տիրապետությունն արևելքում հասնում էր Հագարի (Աղավնո) գետին։ Բերենք այդ վկայությունը. «...աւագն Սմբատ զաւագագոյն մասն Սիւնեաց ընդ արեւմուտակողմն և զբոլոր Վայոց ձոր ունէր ի բաժնի. իսկ Սահակ՝ ընդ արեւելս մինչև ի Հակարի. բայց փոքրիկն Բաբգէն սակաւ ինչ ունէր մասն ի բաժնի»*[2]*։ Բերված տողերից երևում է, որ Սյունիքի արևելյան Բաղք, Հաբանդ և Աղահեճք արևելյան գավառները մեզ հետաքրքրող ժամանակներում Արցախի հետ սահմակըցվում էին Հագարի գետով։*

*Ավելի անորոշ է Սյունիքի հյուսիս-արևելյան կողմի սահմանը։ Սյունյաց երկրի այս մասը, որտեղ գտնվում էին նրա Աղահեճք և Արցախ աշխարհի Ծար գավառները, ոչ միայն մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում, այլև առհասարակ չափազանց քիչ է հայտնի պատմա-աշխարհագրական տեսակետից։ Միայն հայտնի է, որ Աղահեճք գավառը գտնվում էր Աղավնո գետի վերին հոսանքի ավազանում, իսկ Ծարը՝ Տրտու (Թարթառ) գետի շրջանում։ Հաշվի առնելով այն հանգամանքը, որ միջնադարյան Հայաստանի աշխարհները կամ նահանգները սահմանակցվում էին գլխավորապես բնական արգելագծերով, հավանական ենք համարում Սյունիքի ինչպես հյուսիս-արևելյան, այնպես էլ հյուսիսային ու հյուսիս-արևմըտյան սահմանների այն գիծը, որ Ալիշանն անց է կացրել իր «Սիսական» աշխատության կցած քարտեզում։ Ըստ այդ*

---

[1] *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, Փարիզ, 1859, *էջ 11*։ Ալիշան, *Սիսական, էջ 2*։

[2] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 197*։

*քարտեզի Սյունիքի սահմանն Աղավնո գետի ակունքների մոտ ծռվում է գրեթե դեպի արևմուտք և հասնում Սյունյաց լեռների հյուսիսային հատվածին։ Այնուհետև նա նույն լեռնաշղթայի ջրբաժան բարձրություններով ուղղվում է դեպի հյուսիս և հասնում Սևանի ու Մռավի սահմանը կազմող Հինալ լեռնազագաթը, իսկ այնտեղից էլ Սևանի լեռներով ձըգվում է դեպի հյուսիս-արևմուտք՝ փակելով Գեղամա (Սևանա) լճի ավազանը հյուսիս-արևելյան կողմից։ Ծայր հյուսիս-արևմտյան մասում Սյունիքի հետ շփվում էր Այրարատի Վարաժնունիք (Ծաղկաձոր) գավառը։*

*Ահա այս է Սյունիքի 10-րդ դարի սահմանների մոտավոր նկարագիրը, որը, իհարկե, կատարյալ լինելու հավակնություն չունի։*

* * *

*Սյունյաց աշխարհի տերիտորիալ-վարչական բաժանման մասին շատ թե քիչ հստակ գաղափար կազմելու համար հարմար ենք գտնում այդ հարցին մոտենալ նախ զուտ աշխարհագրական առումով, ապա անդրադառնալ այն հարցին, թե ինչո՞վ էին պայմանավորված տերիտորիալ բաժանումները և ի՞նչ բնույթ ունեին նրանք 10-րդ դարի Սյունիքում։*

*Սյունյաց աշխարհի գավառաբաժանման մասին մեզ հասած անմիջական և ամբողջական վկայությունները երեքն են։ Դրանցից մեկը 7-րդ դարի «Աշխարհացոյց»-ի տված գավառաբաժանումն է, իսկ մյուս երկուսը պատկանում են Ստեփանոս Օրբելյանին։*

*Չնայած տեքստերի մեծությանը, այնուամենայնիվ մեջբերումից խուսափել չենք կարող։*

1. **«Աշխարհացոյց»**: *«Ունի գաւառս երկոտասան. Երընջակ, Ճահուկ, Վայու ձոր (Վայոց ձոր—Թ. Հ.), Գեղարքունի, եւ ծովն, Սոտք, Աղահեճ (Աղահեճք—Թ. Հ.), Ծղուկք, Խաբանդ (Հաբանդ), Բաղք, Ձորք, Արեւիք, Կուսական (Կովսական)»*[1]։

2. **Ստ. Օրբելյան**: *«Իսկ գաւառք ունի երկոտասան. առաջինն որ ունի զբուն գահ իշխանացն և հայրապետաց՝ Ծղուկ*

[1] *Տեքստը տե՛ս* Ա. Աբրահամյանի *«Շիրակացու մատենագրությունը» աշխ. 350 էջում։*

գաւառ անուանեալ ի Ծղկայ գաւառապետէ։ Երկրորդ՝ Վայոց ձոր որ ի համարակական դիպուածոց ողբոց և աշխարանաց կոչեցաւ Վայոց ձոր։ Երրորդ՝ Գեղաքունի որ ի հայկեանն Գեղամայ կոչեցաւ Գեղարքունի։ Չորրորդ՝ Սոթից գաւառ, որ ի սակս համապազորդեան բքոց և դառնաշունչ օդոցն կոչեցաւ Սոթք։ Հինգերորդ՝ Աղահէջ գաւառ, որ այժմ կոչի Քաշաթաղ և Խոժոռաբերդ։ Վեցերորդ՝ Հաբանդ գաւառ։ Եօթներորդ՝ Բաղք գաւառ, որ այժմ կոչի Աճէն, որ ի Բաղակայ անուանեցաւ։ Ութերորդ՝ Կովսական գաւառ, որ այժմ Գրհամ կոչեն։ Իններորդ՝ Արևիք գաւառ, որ այժմ կոչի Դաշտօն և Մեղրի։ Տասներորդ՝ Ձորք գաւառ, որ ունի զանմատոյց ամուրն Բաղաբերդ, և այժմ կոչի Կապան։ Մետասաներորդ՝ Երնջակ գաւառ և Գողթն։ Երկոտասաներորդ՝ Ճահուկ գաւառ, որ և ձորն որ Շահապունս կոչի»[1]։

3. «Սիւնեաց երկոտասան գաւառաց հարկ եկեղեցւոյ ըստ հին սահմանին» վերնագիրը կրող ՀԴ գլխում թվարկում է հետևյալ գավառները՝ Ծղուկ, Այլախ, Վայոց ձոր, Գեղաքունի, Սոթից գավառ, Աղահեջ, Հաբանդ, Բաղք, Մյուս Բաղք կամ Քաշունիք, Կովսական, Արևիք, Ձորք, Երնջակ, Ճահուկ[2]։

Բերված վկայությունները վերաբերում են տարբեր ժամանակների։ «Աշխարհացույցը» պատկանում է 7-րդ դարին։ Երկրորդ բաժանումը, ինչպես դժվար չէ տեսնել, վերաբերում է 13-րդ դարին, այսինքն՝ Օրբելյանի ժամանակներին։ Այդ պարզ երևում է նրա բազմաթիվ ակնարկներից՝ «...Աղահէջ գաւառ, որ այժմ (այսինքն՝ Օրբելյանի ժամանակ—Թ. Հ.) կոչի Քաշաթաղ և Խոժոռաբերդ», «...Բաղք գաւառ, որ այժմ (Օրբելյանի ժամանակ) կոչի Աճէն...», «...Կովսական գաւառ, որ այժմ (Օրբելյանի ժամանակ) Գրհամ կոչեն», «Արևիք գաւառ, որ այժմ կոչի Դաշտօն և Մեղրի» և այլն։

Օրբելյանի կողմից առանձին գլխով տրված գավառաբաժանման ժամանակի վերաբերյալ նույն եզրակացությանը կարելի է հանգել նաև հեղինակի հետևյալ խոսքերից, որ նա Սյունյաց 12 գավառները թվարկելուց հետո ավելացնում է.

«Ահա՛ այսոքիկ են գաւառք երկոտասանք գլխաւորք Սիւնեաց։ Բայց այլ ևս ունի գաւառս յոլով զորս ոչ յիշեցաք.

---

[1] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 12—13։

[2] Տե՛ս նույն տեղը, էջ 509—523։

է՛ որ փոխեալ են անունանք սոցա. է՛ որ յայլ և յայլ գաւառս բաժանեալ են»[1]։

Այստեղից նույնպես պարզ երևում է, որ հեղինակն օգտվելով հին աղբյուրներից, տվյալ դեպքում «Աշխարհացույց»-ից, տվել է նաև իր ժամանակվա փոփոխությունները՝ բայց ոչ ամբողջովին։ Այսպիսով, Սյունիքի 13-րդ դարում ունեցած բոլոր գավառները չեն հիշատակված, հեղինակը սահմանափակվել է միայն գլխավոր գավառների (ինչպես ինքն է ասում՝ «Ահա այսոքիկ են գաւառք երկոտասանք գըլխաւորք Սիւնեաց») թվարկմամբ։

Երրորդ ամբողջական տեղեկությունը, ինչպես տեսանք, նույնպես պատկանում է Օրբելյանին։ Հեղինակն այստեղ բերել է եկեղեցուն տրվող հարկացուցակը ըստ գավառների։ Ուրեմն վերջինը ժամանակի տեսակետից ավելի մոտ է «Աշխարհացույց»-ին, քան նախորդը, որը պատկանում էր 13-րդ դարին։

Երեք վկայությունների միջև եղած նմանությունների և տարբերությունների մասին ավելի պարզ գաղափար կազմելու համար անհրաժեշտ ենք համարում նրանցում եղած գավառները բերել սյունակներով, ըստ ժամանակագրական կարգի, գավառների թվարկության հաջորդականության համար հիմք ընդունելով «Աշխարհացույց»-ը։

| I. Ըստ «Աշխարհացույց»-ի | II. Ըստ եկեղեցուն տրվող հարկացուցակի | III. Ըստ Օրբելյանի պատմության Գ գլխի |
|---|---|---|
| 1. Երնջակ | 1. Երնջակ | 1. Երնջակ և Գողթն |
| 2. Ճահուկ | 2. Ճահուկ | 2. Ճահուկ |
| 5. Սոտք | 3. Վայոց ձոր | 3. Վայոց ձոր |
| 4. Գեղարքունի | 4. Գեղաքունի | 4. Գեղաքունի |
| 3. Վայու ձոր | 5. Սոթից գ. | 5. Սոթք |
| 6. Աղահեճ | 6. Աղահեջ | 6. Քաշաթաղ և Խոժոռաբերդ |
| 7. Ծղուկք | 7. ա) Ծղուկ<br>բ) Այլախ | 7. Ծղուկ |
| 8. Խաբանդ | 8. Հաբանդ | 8. Հաբանդ |

[1] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 13։

| | | |
|---|---|---|
| 9. *Բաղք* | 9. *ա) Բաղք* | 9. *Աճէն* |
| | *բ) Մյուս Բաղք կամ Քաշունիք* | |
| 10. *Ձորք* | 10. *Ձորք* | 10. *Կապան* |
| 11. *Արևիք* | 11. *Արևիք* | 11. *ա) Դաշտոն* |
| | | *բ) Մեղրի* |
| 12. *Կովսական*[1] | 12. *Կովսական*[2] | 12. *Գրհամ*[3] |

*Բերված սյունակներից երևում է, որ 2-րդը գրեթե առաջինի ընդօրինակությունն է։ Այն «Աշխարհացույց»-ի գավառաբաժանումից տարբերվում է միայն նրանով, որ Բաղք և Ծղուկ գավառները բաժանված են երկուական մասերի։ Այսպես, «Աշխարհացույց»-ի Բաղքին համապատասխանում են Հարկացուցակի Բաղք և Մյուս Բաղք կամ Քաշունիք գավառները, իսկ «Աշխարհացույց»-ի Ծղուկքին՝ Ծղուկ և Այլախ գավառները։ Ի դեպ նկատենք, որ Օրբելյանից բացի, Այլախ և Քաշունիք գավառանունները չեն հիշատակում ոչ նրանից առաջ և ոչ էլ հետո եղած պատմիչներն ու աշխարհագիրները։ Հարկացուցակում Ծղուկը երկու մասի բաժանելը հավանաբար ելնում էր եկեղեցական աշխարհագիր կատարելու և հարկեր հավաքելու հարմարություններից, այնպես որ նա քաղաքացիական իմաստով վարչական միավոր չէր։ Մինչդեռ Քաշունիքը (Օրբելյանի մոտ անվանված նաև Բարկուշատ[4], այժմ Բերգուշետ) որոշ ժամանակ եղել է վարչական միավոր։ Այդ մասին կխոսենք իր տեղում։*

*Թե՛ «Աշխարհացույց»-ի և թե՛ հարկացուցակի մյուս 10 գավառները լիովին համընկնում են իրար։*

*Ավելի մեծ են տարբերությունները «Աշխարհացույց»-ի և Օրբելյանի պատմության Գ գլխում տրված գավառաբաժանումների միջև։ «Աշխարհացույց»-ի Երնջակ գավառին Գ գլխում ավելացված է նաև Գողթնը։ Վերջինս հավանաբար Երնջակի հետ միասին Սյունիքին էր միացվել Զաքարեի և Իվա-*

[1] *Տե՛ս* Ա. Աբրահամյան, *Անանիա Շիրակացու մատենագրությունը, էջ 350։*

[2] *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *Պատմություն նահանգին Սիսական, էջ 509—523։*

[3] *Տե՛ս նույն տեղը, էջ 12—13։*

[4] *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ՝ 75, 80, 86, 331, 391 և այլն։*

նեի կողմից 13-րդ դարի սկզբներին[1], մոնղոլ-թաթարների օրոք էլ մնալով Հայ իշխանների իրավասության տակ։ Իսկ կրոնական տեսակետից Գողթնը և Երնջակը մտնում էին Սյունյաց եպիսկոպոսական թեմի մեջ։ Միայն շատ քիչ ժամանակով՝ 10-րդ դարի վերջին և 11-րդ դարի սկզբին, նրանք դուրս մնացին Տաթևի թեմից, բայց 1006 թվականին Սարգիս կաթողիկոսի ջանքերով նորից միացվեցին Սյունյաց եպիսկոպոսությանը[2]։ Այս հանգամանքը ևս կարող էր պատճառ հանդիսանալ Երնջակը և Գողթնը Սյունյաց գավառների շարքում դասելուն։

«Աշխարհացույց»-ի մեջ եղած Աղահեճ և Արևիք գավառները Օրբելյանի պատմության Գ գլխում բաժանված են երկու մասի։ Դրանցից առաջինը բաժանված է Քաշաթաղի և Խոժոռաբերդի, իսկ երկրորդը՝ Դաշտոնի և Մեղրու։ Չնայած այս բաժանումներին, այնուամենայնիվ, Օրբելյանի պատմությունից երևում է, որ հիշված գավառների մասնատումը կատարված է լոկ աշխարհագրական առումով։ Նրա պատմության մեջ չենք հանդիպում որևէ դեպքի, երբ Քաշաթաղ, Խոժոռաբերդ, Դաշտոն և Մեղրի տերիտորիալ միավորները միաժամանակ հանդիսանային վարչական միավորներ։

Մյուս տարբերությունը «Աշխարհացույց»-ի և Օրբելյանի պատմության Գ գլխի միջև այն է, որ առաջինի Ձորք գավառը Օրբելյանի մոտ կոչվում է Կապան, Բաղքը՝ Աճեն և Կովսականը՝ Գրհամ։ Սյունյաց մյուս վեց գավառների անունները «Աշխարհացույց»-ում և Օրբելյանի պատմության Գ գլխում նույնն են։

Ամփոփելով վերը ասածները, հանգում ենք հետևյալին. «Աշխարհացույց»-ի, Օրբելյանի պատմությանը կցած եկեղեցու հարկացուցակի և նույնի Գ գլխում տրված գավառաբա-

---

[1] «Իսկ Իւանէ աթաբեկութեան պատուով. սոքա (Զաքարեն և Իվանեն—Թ. Հ.) բազում մարտս քաջութեան ցուցին. քանզի զբազում աշխարհըս Հայոց՝ զոր ունէին Պարսիկք և Տաճիկք, առին ի նոցանէ յինքեանս, զգաւառան՝ որ շուրջ զծովովն Գեղարքունոյ, զԱրտաշիր, և զԱյրարատ, և զԴուին, և զԱնբերդ, և զԱնի քաղաք, և զԿարս, և զՎայոց ձոր, և զԱշխարհըն Սիւնեաց, և որ շուրջ զնովաւ են բերդք, և գաւառք...», Կիրակոս Գանձակեցի, *Պատմութիւն Հայոց*, էջ 154։

[2] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 310—311։

ժանումների միջև էական տարբերություններ չկան, նրանք իրարից տարբերվում են կամ անունների փոփոխմամբ, կամ թե նույն գավառի լոկ աշխարհագրական մասնատմամբ, իսկ գավառների գերակշիռ մեծամասնությունն այդպիսի երկրորդական փոփոխությունների էլ անգամ չէր ենթարկվել։

Եթե աշխարհագրական տեսակետից գավառաբաժանումները երկար ժամանակամիջոցում միայն չնչին փոփոխության են ենթարկվել, ապա վարչական-տերիտորիալ տեսակետից, կապված ֆեոդալիզմի զարգացման, նախարարական տների մասնատման և նոր նախարարական տների առաջացման հետ, հաճախակի են փոփոխություններ կրել։ Մեզ տվյալ դեպքում հետաքրքրում է Սյունիքի վարչական բաժանումը 10-րդ դարում։ Նախքան դրան անդրադառնալը անհրաժեշտ ենք համարում կատարել մի փոքր պատմա-աշխարհագրական էքսկուրս։

* * *

Յուրաքանչյուր երկրի վարչական-քաղաքական բաժանումը համապատասխանում է այն հասարակական-տնտեսական ձևին, որ տվյալ ժամանակաշրջանում ապրում է այդ երկրի ժողովուրդը։ Մասնավոր սեփականության վրա հենված պետական սիստեմներում ընդհանրապես, իսկ կապիտալիստական և իմպերիալիստական պետություններում հատկապես, վարչական բաժանումը ելնում է ոչ թե տնտեսության զարգացման հեռանկարներից, այլ հետապնդում է շահագործման և ռազմական նպատակներ։

Ֆեոդալիզմի դարաշրջանին հատուկ էր տերիտորիալ մասնատվածությունը։ Յուրաքանչյուր ֆեոդալի իշխանության տակ գտնվող գավառը կամ երկիրն իրենից ներկայացնում էր վարչական-քաղաքական միավոր, գրեթե ինքնուրույն պետություն։

Ֆեոդալական Հայաստանի տերիտորիան, եղած նախարարական տներին համապատասխան, մասնատված էր բազմաթիվ մանր ու մեծ գավառների։ Ամեն մի ֆեոդալական (նախարարական) տուն ուներ իր աշխարհը, գավառը։ Նախարար-

ները հանդիսանում էին իրենց գավառի կամ աշխարհի տերերը[1]։

«Տեր», «տանուտէր» տերմինները, որ այնքան շատ են հիշատակվում մեր պատմիչների կողմից, պետք է հասկանալ ոչ թե լոկ իբրև նախարարական տան տանուտերեր, այլև տերիտորիալ իմաստով[2], այսինքն տվյալ աշխարհի, գավառի (Սյունիքի, Ապահունիքի) տեր, տիրապետող, իշխող։

Պատմական Հայաստանում վարչական-քաղաքական բաժանումը տեղի է ունեցել ֆեոդալիզմի ձևավորման հետ միասին և նրանից կախված։ Նախաֆեոդալական շրջանի Հայաստանի տերիտորիալ-էթնիկական բաժանման մասին ուղղակի հիշատակություններ չկան։ Այդ ժամանակ, հավանաբար, գոյություն ունեին Պլինիոս Ավագի (23—79 թթ. մ. թ.) հիշատակած 120 շրջաններից («ստրատեգիա») շատերը[3], որոնք հիմնականում վարչա-ռազմական շրջաններ էին։ Տիգրան B-ի օրոք այդ շրջաններում արդեն տնտեսական և քաղաքական տեսակետից գերակշռող դեր էր կատարում ազնվականությունը[4]։

Վաղ ֆեոդալիզմի շրջանում Հայաստանում արդեն ձևավորվել էին բազմաթիվ նախարարական (ֆեոդալական) տներ, որոնցից յուրաքանչյուրը տիրում էր որոշ տերիտորիայի վրա։ Այսպես, Բագրատունիներն իշխում էին Սպերում, Բագրևանդում և Կոգովիտում, Մամիկոնյանները՝ Տայքում և Տարոնում, Կամսարականները՝ Շիրակում և Արշարունիքում, Ամատունիները՝ Արտազում, Ռշտունիները՝ Ռշտունիքում, Սյունյաց իշխանները՝ Սյունիքում, Արծրունիները՝ Աղբակում, Մոկաց իշխանները՝ Մոկքում և այլն։

Արշակունյաց արքայական տունը, որը պետք է դիտել որպես ամենազորեղ նախարարություն այդ շրջանում, տիրում էր Այրարատյան աշխարհի Ծակատք, Մասյացոտն,

---

[1] Ղ. ԻՆՃԻՃԵԱՆ, *Հնախօսութիւն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի, հատոր առաջին, Վենետիկ, 1895, էջ 87։*

[2] Տե՛ս *И. Джавахов*, Государственный строй древней Грузии и древней Армении, С.—Петербург, 1906, էջ 108—109։

[3] Տե՛ս Հ. Մանանդյան, *Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Ա, Երևան, 1945, էջ 159։*

[4] Տե՛ս *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 392։

Արագածոտն, Ոստան, Տարոն և մի քանի այլ գավառների։

Լայնածավալ «աշխարհ»-ներ ունեին նաև Հայաստանի չորս բդեշխները («կողմնակալ», «սահմանակալ»)՝ Գուգարքի, Նոր-Շիրականի, Աղձնիքի և Ծոփքի, որոնց մասին Ագաթանգեղոսի, Փավստոս Բուզանդի և Մովսես Խորենացու արած հիշատակությունները վերլուծելով՝ ակադ. Հ. Մանանդյանը[1] միանում է Ն. Ադոնցի այն կարծիքին, թե բդեշխությունները նախկինում ինքնուրույն փոքրիկ թագավորություններ էին, որոնք Տիգրան Բ-ի ժամանակ ենթարկվեցին հայ թագավորների քաղաքական իշխանությանը[2]։

Ընդարձակ կալվածքներ ուներ և եկեղեցին՝ թե՛ կաթողիկոսական աթոռը և թե՛ յուրաքանչյուր եպիսկոպոսական թեմ[3]։

Ահա դրանք էին ֆեոդալական Հայաստանի տերերը, որոնցից յուրաքանչյուրի գրաված կալվածքներն էլ իրենցից ներկայացնում էին մի-մի վարչական-քաղաքական միավորներ։

Արշակունիների անկումից հետո Հայաստանում «սեպուհական» հողատիրության հիմքի վրա հանդես են գալիս մի շարք նոր նախարարական տներ, որոնք կալվածքներ են գրավում երկրի տարբեր անկյուններում։ Ֆեոդալիզմի զարգացման այս շրջանում, որը համընկնում է մարզպանների և արաբական տիրապետությունների ժամանակաշրջանին (5-րդ դարից մինչև 9-րդ դարի կեսերը), նախորդ շրջանից գոյություն ունեցող նախարարական տների ճյուղավորման ու նոր նախարարական տների առաջացման պատճառով ավելի է մասնատվում երկրի տերիտորիան, թեպետև, ըստ խալիֆի օրենքի, ամբողջ երկիրը համարվում էր խալիֆայության սեփականությունը։ Այս շրջանում պատմիչների կողմից հիշատակվում են այնպիսի գավառանուններ, որոնք գոյություն չունեին Արշակունիների շրջանում։ Արաբական տիրապետության շրջա-

1 Տե՛ս Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը հին Հայաստանում, Երևան, 1934, էջ 34—38, նույնի «Քննական տեսութ. հայ ժող. պատմ.», հ. 1, էջ 160։

2 Տե՛ս Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, էջ 283 և 410—411։

3 Տե՛ս նույն տեղը, էջ 361։

նում արդեն, բացի հայ ֆեոդալական տներից, Հայաստանի տարբեր մասերում կազմակերպվում են նաև արաբա-պարսկական քաղաքական միավորներ՝ էմիրություններ։

Ֆեոդալական Հայաստանի գավառաբաժանման մասին ամբողջական տեղեկություններ է հաղորդում Անանիա Շիրակացին իր «Աշխարհացույց»-ում[1]։

«Աշխարհացույց»-ի մեջ Մեծ Հայքը, որի սահմանները տարածվում էին Կուրից մինչև Վերին Միջագետք և Կասպից ծովից մինչև Արևմտյան Եփրատ, բաժանվում էր 15 փոքր աշխարհների, որոնք իրենց մեջ ամփոփում էին 187/193 գավառ[2]։ Դեռևս Արշակունիների շրջանում գոյություն ուներ այդ 15 աշխարհների և նրանց մեջ մտնող գավառների անունների մեծ մասը, սակայն այդ շրջանում մեր պատմիչների կողմից որոշակի տարբերություն չի դրվում «աշխարհի» (նահանգ, կողմ, տուն) և գավառի միջև։ Գոյություն ունեցող գավառներից շատերը չէին ամփոփված որոշակի թվով աշխարհների մեջ, գավառն ու աշխարհը հաճախակի հիշատակվում են կողք-կողքի, մինչդեռ «Աշխարհացույց»-ի մեջ «աշխարհ» և «գավառ» անվանակոչումները բոլորովին տարբեր հասկացություններ են։

Մարզպանական Հայաստանի մեջ մտնող վեց աշխարհից[3] երեքը (Այրարատ, Տուրուբերան, Վասպուրական) ունեն

---

[1] 7-րդ դարի «Աշխարհացույց»-ի հեղինակի վերաբերյալ հայագիտության մեջ գոյություն ունի երկու տեսակետ։ Դրանցից մեկի համաձայն «Աշխարհացույց»-ը պատկանում է Մ. Խորենացու գրչին, իսկ ըստ երկրորդի, որն ավելի հիմնավոր է և այժմ համարյա քաղաքացիական իրավունք է ստացել, այն պատկանում է Անանիա Շիրակացուն:

[2] Ա. Աբրահամյանի «Անանիա Շիրակացու մատենագրությունը» աշխատության մեջ բերված «Աշխարհացույց»-ի տեքստում գավառների թիվը 187 է (էջ 348—351), իսկ Ինճիճյանի օգտագործած վենետիկյան տեքստում՝ 193 (տե՛ս «Ստորագրութիւն հին Հայաստանեայց»)։

[3] 387 թ. բաժանմամբ Մեծ Հայքի արևմտյան երկու աշխարհները՝ Չորրորդ Հայքն ու Բարձր Հայքն անցան Հռոմի տիրապետության տակ, իսկ մյուս 13 աշխարհներից 7-ը՝ Գուգարք, Ուտիք, Արցախ, Փայտակարան, Պարսկահայք, Կորճեք և Աղձնիք, որոնք մինչ այդ Մեծ Հայքի մասերն էին կազմում, ըստ Սասանյանների վարչական բաժանման դուրս մնացին Մարզպանական Հայաստանի սահմաններից։ Այնպես որ Մարզպանական Հայաստանի տերիտորիան կազմված էր Տուրուբերան, Վասպուրական, Այրարատ, Մոկք, Սյունիք և Տայք աշխարհներից։

սուկ աշխարհագրական բնույթ։ Այս նահանգներից յուրաքանչյուրում իշխում էին ոչ թե մեկ, այլ բազմաթիվ նախարարական տներ։ Այսպես, Վասպուրականում իրենց սեփական գավառներն ունեին Արծրունիները, Ռշտունիները, Ամատունիները և ուրիշներ։ Այրարատում իշխում էին Բագրատունիները, Կամսարականները, Դիմաքսյանները, Սահառունիները և ուրիշներ, Տուրուբերանում՝ Մամիկոնյանները, Խոռխոռունիները, Բզնունյաց նախարարական տունը և այլն։ Իսկ այդ աշխարհների մեջ մտնող գավառների մեծ մասը վարչական-քաղաքական միավորներ էին։ Յուրաքանչյուր գավառ կամ թե 2—3 գավառ միասին կազմում էին այս կամ այն նախարարական տանը պատկանող տերիտորիան, իսկ նախարարություններն էլ հենց իրենցից ներկայացնում էին ֆեոդալական Հայաստանի վարչական-քաղաքական միավորներ։ Նախարարական տները մեծ մասամբ կրում էին այն գավառի կամ երկրի անունը, որի վրա իշխում էին, կամ ընդհակառակը՝ իրենց տոհմական անունները տալիս էին տվյալ երկրին[1]։ Երկու դեպքում էլ ստացվում էր միևնույն արդյունքը, այն, որ նախարարական տան և նրա իշխանության տակ գտնվող երկրի անունները մեծ մասամբ համընկնում էին՝ Խոռխոռունիներ—Խոռխոռունիք, Բզնունիներ—Բզնունիք, Երվանդունիներ—Երվանդունիք, Պալունիներ—Պալունիք, Մոկաց իշխաններ—Մոկք, Սյունյաց իշխաններ—Սյունիք և այլն։

Վարչական տեսակետից դրությունն այլ էր Մարզպանական Հայաստանի մեջ մտնող մյուս երեք ծայրամասային նահանգներում՝ Տայքում, Մոկքում և Սյունիքում։ Սրանցից յուրաքանչյուրում իշխում էր մի նախարարական տուն։ Մոկքում իշխում էր Մոկաց նախարարական տունը, Տայքում՝ Մամիկոնյանները, իսկ Սյունիքում՝ Սյունյաց իշխանները[2]։ Ինչպես տեսնում ենք, Մոկք, Տայք և Սյունիք նահանգները, ի տարբերություն Այրարատի, Տուրուբերանի և Վասպուրականի, հանդիսանում էին վարչական միավորներ։ Սրանց մեջ մտնող գավառները, եթե ոչ լրիվին, ապա գոնե մեծ մասամբ միայն աշխարհագրական բնաշրջաններ էին։

---

[1] Տե՛ս *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 299։

[2] Տե՛ս նույն տեղը։

Բացի տնտեսության ֆեոդալական ձևից, որը վարչական ստորաբաժանման հիմքն է, կարևոր ազդակ է նաև երկրի բնական-աշխարհագրական բնույթը։ Հայկական բարձրավանդակի[1] լեռնագրական և պատմական Հայաստանի վարչական ստորաբաժանումների քարտեզներին նայելիս իսկույն աչքի է ընկնում այն կապը, որ գոյություն ունի երկրի ռելիեֆի և վարչական ստորաբաժանումների միջև։ Յուրաքանչյուր նահանգ կամ գավառ իրենից ներկայացնում է մի ֆիզիկա-աշխարհագրական շրջան՝ սահմանափակված մեծ մասամբ բնական արգելակներով։ Երկիրն ունի լեռնային բնույթ, լեռնաշղթաները ձգվելով տարբեր ուղղություններով, խաչաձևում և կազմում են բազմաթիվ ձորեր ու հովիտներ։ Այդ է պատճառը, ինչպես նկատում է Լեոն, որ Հայաստանի աշխարհագրական բազմաթիվ անուններ (հատկապես գավառանուններ) բարդվել են «ձոր», «փոր» և «հովիտ» բառերով։ Այս ձորերն ու հովիտներն էլ հանդիսացել են վարչական ստորաբաժանումների բնական-աշխարհագրական հիմքը[2]։

Այս տեսակետից առանձնապես հետաքրքիր է 9-րդ դարի վերջերի և 10-րդ դարի սկզբների վրաց պատմիչ Ստեփան Տբեթցու հիշատակությունը։ «Եվ այս են նրա (Հայքի) սահմաններն և (այլ և այլ) կողմանց (ձորերի) անունները․ Վան[ա]ն[դ] (Վանդի), Աշորնիք (Աշոռնա), Ապահունիք (Ալապունիսի), Ծաղկոտն (Կալկոիտնի), Ճակատք (Ճակատի), Կոգովիտ (Կոգովիտի երկու ձորը), Տարուբը (Տարուլը), [Վ]աս[պ]ուրականի (Ասուրագանի) տասներկու ձորը, Վայ[ոց] ձորի (Վայձորի) չորս ձորը, Դվինադաշտի (Դափին, Ադաշտի) երեք ձորը, Գեղարքունյաց (Գելյքունիա) չորս ձորը, Սյունյաց տաս ձորը, Տաշիրն ու Կողբոփորը (Կաքպաքարը)»[3]։

Տբեթցուց բերված այդ վկայությունները տիպիկ օրինակ են այն բանի, որ գավառները իրենցից ներկայացնում էին ուրույն ֆիզիկա-աշխարհագրական շրջաններ, տվյալ դեպքում՝ ձորահովիտներ։

---

[1] Հայկական բարձրավանդակը գրեթե համընկնում է պատմական Հայաստանի հետ։

[2] Տե՛ս Լեո, Հայոց պատմություն, հ. 1, Թիֆլիս, 1917, էջ 131։

[3] Պրոֆ. Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և Հայերի մասին, հ. Ա, էջ 92—93։

Ֆեոդալական Հայաստանի վարչական և քաղաքական բաժանումները բազմաթիվ անգամ ենթարկվել են հաճախ նույնիսկ արմատական փոփոխությունների։ Այդ բաժանումների պատմա-աշխարհագրական ուսումնասիրությունը այդ իսկ պատճառով կապված էր որոշ դժվարությունների հետ։

* * *

Մենք տեսանք, որ Սյունիքը, ամբողջությամբ վերցրած, գտնվում էր մի նախարարական տան տիրապետության տակ։

Դեռ վաղ ժամանակներից Սյունյաց նախարարական տունը բաժանված էր երկու ճյուղի, որոնցից մեկը տիրում էր Գեղամա ծովի ավազանում և կոչվում էր «Հայկազուն», իսկ մյուսը «գահերեց» ճյուղն էր, որ իշխում էր Սյունիքի մնացած մեծ մասի վրա և միաժամանակ ամբողջ Սյունիքի տերն էր[1]։ Սյունյաց նախարարական տան երկու ճյուղերի բաժանումն իր արտահայտությունն է գտել դեռևս Խորենացու «Հայոց պատմության» մեջ (էջ 27), ուր պատմիչն արդեն որոշակի տարբերություն է տեսնում Գեղամա երկրի և Սյունիքի մյուս մասի միջև։

5-րդ դարին վերաբերող[2] «Գահնամակ»-ում Սյունյաց իշխաններին տրված է երկու գահ (աթոռ), իշխաններից մեկը գրավում է առաջին աթոռը և կոչված է «Սիսնեաց տէր», իսկ մյուսը գրավում է 28-րդ աթոռը[3] և կոչված է «Սիսնեաց երկրորդն»։ Նույն «Գահնամակ»-ում Արծրունիներն ունեն երեք գահ։ Նրանց իշխաններից ավագը գրավում է 3-րդ աթոռը և կոչված է «Արծրունեաց տէր», երկրորդը գրավում է 29-րդ աթոռը և անվանված է «Արծրունեաց երկրորդն», իսկ երրորդը գրավում է 30-րդ տեղը և կոչված է«Արծրունեաց երրորդն»։ Մեկից ավելի գահեր ունեն նաև Մամիկոնյանները։ «Գահնամակ»-ում հիշատակված սրանց աթոռների թիվը երկուսն է, որից մեկը 4-րդ աթոռն է, որը գրավող իշխանը կոչված է

---

[1] Տե՛ս Էմին, Տաթևի վանքը («Արարատ», գիրք Բ, 1892 թ., էջ 20)։

[2] «Գահնամակ»-ի տեքստը տե՛ս Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, էջ 249—250։

[3] Ադոնցը ենթադրում է, որ «Գահնամակ»-ը և «Զորանամակ»-ը վերաբերում են 7-րդ դարին (նույն տեղում, էջ 284—295)։

«Մամիկոնէից տէր», իսկ մյուսը 33-րդ տեղն է, որը գրավող իշխանը անվանված է «Մամիկոնէից երկրորդն»։

Բացի հիշատակվածներից, մեկից ավելի աթոռներ են գրավում նաև Ապահունիները, Դիմաքսյանները, Աբեղյանները և Վանանդացիները։

Վերը բերված փաստերից դժվար չէ եզրակացնել, որ դեռևս մարզպանական շրջանում մի շարք նախարարական տներ բաժանվել էին ճյուղերի։ Հայտնի է, որ Մամիկոնյանները 4-րդ դարում ունեին երկու ճյուղ՝ Տայքի և Տարոնի։ Արծրունիներն իշխում էին իրենց հայրենական Աղբակ գավառում և Արշակունիների անկումից հետո, 5-րդ դարում, տեր դարձան նաև Մարդպետականին, որի իշխանները «Գահնամակ»-ում չեն հիշատակված և հավանաբար «Արծրունեաց երկրորդն» ու «Արծրունեաց երրորդն» հենց հանդիսանում են Մարդպետականի տերերը։

«Գահնամակ»-ի «Սիւնեաց տէրը» պարզ է, որ ամբողջ Սյունիքի տերն էր, իսկ «Սիւնեաց երկրորդն», ամենայն հավանականությամբ, «Հայկազուն» իշխանների տանուտերը, որը վասալական կախման մեջ էր գտնվում «գահերեց» իշխանից։ Գահերեց իշխաններից զատ նա ուներ իր զորքը, որի հեծյալների թիվն ըստ «Զօրանամակ»-ի 50 էր[1]։

Սյունյաց նախարարական տան այդ երկու հիմնական ճյուղերի մասին ավելի որոշակի տեղեկությունները վերաբերում են 9—10-րդ դարերին։ «Հայկազուն» կամ «բնիկ» ճյուղի իշխանները ժառանգաբար իշխում էին Գեղամա ծովի շուրջը գտնվող շրջանների վրա։ Այս մասին վկայում են Հովհաննես կաթողիկոսն ու Ստեփանոս Օրբելյանը։

Հովհաննես կաթողիկոսը գրում է. «Բայց առաւել ևս քան զյոլովս Հայկազանցն զրոհի իշխանն Գրիգոր և նորին եղ-

---

[1] «Զօրանամակ»-ում հիշատակվում է Սոդայի իշխանական տունը, որը տալիս էր 50 ձիավոր։

«Զօրանամակ»-ի տեքստը տե՛ս *Н. Адонц*, Арм. в эпоху Юст., էջ 249—250։

Սոդք կամ Սոտք գավառը Գեղամա երկրի (որի վրա իշխում էին «Հայկազուն» իշխանները) երկու գավառներից մեկն էր։ Շատ հավանական է, որ «Զօրանամակում» հիշատակված Սոդայի նախարարները հենց իրենք՝ Սյունյաց Հայկազուն իշխաններն են։

*բարք՝ Սահակ և Վասակ, որք հայաբնական սեպհականութեամբ տիրէին գաւառացն, որք շրջապատեալ կան շուրջ զեզերբ ծովակին Գեղամայ»*[1]: *«Բայց և Հայկազուն ևս եղբարքն Սահակ և Վասակ՝ բնաբար կուսակալք գաւառացն որ շուրջ զեզերբ Ծովակին Գեղամայ, յայսմ ի սոյն աւուրս (10-րդ դարի սկզբին—Թ. Հ.) եկեալք ի հեռաստանէ հալածանացն՝ տիրէին պայազատեալք զաշխարհս տերութեան իւրեանց»*[2]:

*Ստ. Օրբելյանը հետևյալ տեղեկություններն է հաղորդում. «...և այն ինչ ժամանակս յոլով խաղաղութիւն բերէր ընդ բոլոր Հայաստանեայս, սակս որոյ ամենեքեան շինութեան եկեղեցեաց պարապէին. ևս առաւել որդիքն Վասակայ՝ Սիւնեաց տեառն, և Գրիգորի Սուփանայ՝ Սահակ և Վասակ, և մայրն իւրեանց Մարիամ ի գաւառին Գեղարքունւոյ, զի այն իսկ գաւառ շուրջ զծովակովն նոցա էր հասեալ ի բաժին ժառանգութեան»*[3]:

*«...և էր սա յաւուրս Գրիգորոյ (9-րդ դար—Թ. Հ.)՝ Սիւնեաց գահերէց իշխանի, և միւս Գրիգորոյ՝ որդւոյ Սահակայ, որ Սուփան յորջորջիւր, որ զԳեղաքունի ունէր»*[4]:

*Բերված մեջբերումները միանգամայն համապատասխանում են իրար և գալիս են ասելու, որ, իրոք, 9—10-րդ դարերում Սյունյաց աշխարհի հյուսիս-արևմտյան մասը, որ գտնըվում է Գեղամա (Սևանա) ծովի շուրջը, ժառանգաբար պատկանում էր «Հայկազուն» կամ «բնիկ» իշխաններին*[5]:

*Սյունյաց նախարարական տան մյուս ճյուղը, որը մեր մատենագիրների կողմից անվանված է «գլխավոր», «գահերեց», «բուն» կամ «գահագլուխ», իշխում էր Սյունիքի մնացած՝ մեծ մասի վրա: Այս մասին Օրբելյանը վկայում է. «Իսկ*

---

[1] Հովհաննես Կաթողիկոս, *Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1912, էջ 199:*

[2] *Նույն տեղում, էջ 298:*

[3] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, Թիֆլիս, 1910, էջ 176:*

[4] *Նույն տեղում, էջ 204:*

[5] *Ինճիճյանը գտնում է, որ Գեղարքունիքում տիրող իշխանները ի տարբերություն գահագլուխ իշխանների, որոնք նրա կարծիքով իրենց սկիզբն առել էին Վաղարշակի ժամանակներից, կոչվում էին «բնիկ» կամ «Հայկազուն», որովհետև նրանք գոյություն ունեին ավանդական Գեղամ նահապետից սկսած («Ստորագրութիւն Հին Հայաստանեայց», էջ 235):*

*քում գահ իշխանացն Սիսնեաց էր Բաղք, Վայոց ձոր և այլ շըրջակայքն՝ Վասակայ և Աշոտոյ և որդւոց Աշոտոյ՝ Սմբատայ, Սահակայ և Բաբգենի և Վասակայ, և որդոյն Վասակայ Փիլիպպէի»*[1]։

Այժմ մեզ հետաքրքրում է, թե գահերեց իշխանների տիրապետության տակ գտնվող երկրամասում վարչական-տերիտորիալ ինչպիսի բաժանումներ գոյություն ունեին 9—10-րդ դարերում։ Սյունյաց գահերեց իշխանական տան անդամներից յուրաքանչյուրն ուներ իր ընդարձակ կալվածքները։ 9-րդ դարի վերջերին վերաբերող Օրբելյանի մի վկայության մեջ հիշատակվում է, որ Սյունյաց Սմբատ, Սահակ, Բաբգեն, Վասակ եղբայրները և նրանց հորեղբայր Փիլիպպեն ամբողջ Սյունիքը, առանց Գեղամա (Սևանա) լճի ավազանում գտնվող գավառների, բաժանել էին իրար միջև. «Մեռանի և Վասակ. և պայազատէ զտերութիւն նորա Աշոտ՝ եղբայր իւր։ Սա կեցեալ բազում աւուրս՝ մեռանի և թողու չորս որդիս՝ զՍմբատ, զՍահակ, զԲաբգէն, զՎասակ. և բաժանեալ զժառանգութիւնս իւրեանց՝ առնու Սմբատ զՎայոց ձոր բոլոր և զՇահապունս որ է Ճահուկ գաւառ։ Իսկ Սահակ և այլքն՝ զՍիսնիս և զԲաղս և զայլսն։ Եւ ապա էր մեծ Վասակայ որդի մի Փիլիպպէ անուն, որ ունէր զՇնհէր և զՀաբանդ»[2]։ Ինչպես տեսնում ենք, բուն Սյունիքը բաժանված էր հիմնականում երեք մասի, որոնցից մեկում իշխում էր Սմբատը, որը միաժամանակ ամբողջ Սյունիքի տերն էր։ Սրա բաժինը կազմում էին Վայոց ձոր և Ճահուկ գավառները։ Նրա մյուս երեք եղբայրները՝ Սահակը, Բաբգենը և Վասակն իշխում էին երկրի մնացած մասի՝ Սյունիքի (Ծղուկք), Բաղքի և շրջակա գավառների վրա։ Սրանց բաժնից դուրս էր Հաբանդ գավառը, որը, նույն վկայության համաձայն, պատկանում էր իրենց հորեղբորը՝ Փիլիպպեին։

Սյունյաց գահերեց իշխանական տան մի ճյուղը, որին Ալիշանն անվանում է «Ձագիկեանք», 8—10-րդ դարերում իշխում էր Բաղք և Ձորք գավառներում[3]։ Բերենք Օրբելյանի միայն մի վկայությունը, որից պարզ երևում է, որ իրոք Ձա-

---

[1] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 176—177։

[2] *Նույն տեղում*, էջ 297—298։

[3] *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսական*, էջ 18։

*գիկյանները Սյունյաց գահերեց իշխանական տան մի ճյուղն էին, և նրանց էր պատկանում Բաղք գավառը. «Պայծառանայր և յայն աւուրս (10-րդ դարի առաջին քառորդում—Թ. Հ.) համազգի սոցին (Սմբատի, Սահակի և Բաբգենի) իշխանացս ի Սիսական տոհմէ Ջագիկ՝ մեծ իշխանն, ամենայն բարեպաշտութեամբ. որ ունէր ի բաժնի զԲաղաց գաւառն և զԿապան քաղաք, որ և յետ բազում բարեկարգութեանց վախճանի. և դնի ընդ հարս իւր. և թողու ժառանգ զքաջազօրն Ջևանշէր և զՎահան»*[1]։

*Այսպիսով, 10-րդ դարի առաջին քառորդում ամբողջ Սյունյաց աշխարհը բաժանված էր չորս մասի.*

*1. Գեղամա լճի շրջակա գավառները, որտեղ իշխում էին «Հայկազուն» իշխանները։*

*2. Վայոց ձոր և Ճահուկ գավառները, որոնք բաժին էին ընկել Սմբատ իշխանին, որը ամբողջ Սյունիքի տերն էր։*

*3. Սյունիք (Ծղուկք) ու Բաղք գավառները և շրջակա տերիտորիաները Սահակ և Բաբգեն իշխանների բաժինն էին։*

*4. Հաբանդ գավառը, որտեղ իշխում էր Փիլիպպեն։*

*Դրանցից բացի, ինչպես նշեցինք, Սահակի և Բաբգենի բաժնի մեջ մտնող Բաղք գավառում իշխում էին Ջագիկյանները։ Հիշված անուններով չի վերջանում Սյունիքում կալվածքներ ունեցող իշխանների ցանկը։ Օրբելյանի մի շարք հիշատակություններից պարզ երևում է, որ Սյունիքում կային բազմաթիվ իշխաններ, որոնք կալվածքներ ունեին երկրի տարբեր մասերում։ Դրա համար բավականանում ենք Օրբելյանի հետևյալ վկայությամբ, որ վերաբերում է 844 թվականին. «Եւ վկայք լիցին աստուածապահ տէր Գրիգոր՝ Սիւնեաց տէր, տէր Ատրներսէհ՝ Վասակայ որդի, Սիւնեաց տեառն, տէր Գրիգոր՝ Սահակայ որդի, տէր Հրահատ և տէր Արսման՝ Սահակայ որդիք. տէր Հրահատ և տէր Գագիկ՝ Գրիգորոյ՝ Սիւնեաց տեառն որդիք, տէր Վահան՝ Վարդանայ որդի. նոյնպէս և յիմ ազատաց Հուռ, Քուրդոյ, Խոսրով՝ Շապուհոյ որդիք, Ջևանշէր՝ Թէոդորոսի որդի, Աշնակ՝ Վահանայ որդի, Ջագիկ՝ Վահանայ որդի, Վարդան՝ Ջանադայ որդի, Սահակ՝ Վասակայ որդի, Միհրան՝ Թուրքայ որդի..., տէր Մուշեղ՝ Սմբատայ որդի, տէր Վա-*

[1] Ստ. Օրբելյան. *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 200։*

*հան՝ Բաբգենի որդի, տէր Բաբգեն և տէր Վասակ և տէր Աշոտ՝ իմ Փիլիպպէի որդիք...»*[1]։

*Սակայն բավարար տեղեկությունների բացակայության պատճառով անհնար է պարզել Սյունիքի իշխանական այդ կալվածքների թիվն ու աշխարհագրական տեղաբաշխումը։ Օրբելյանը երկրորդական իշխանների մասին տեղեկություններ տալը համարելով իր նպատակներից դուրս, առանձնակի ուշադրություն չի դարձրել նրանց վրա. «Եւ զի ի ցեղէ հայկական յոլովք էին զարմք և ազինք. բայց մեզ փոյթ զգլխաւոր զահակալ իշխանացն միայն էր. վասն որոյ և արժանեալ գտաք և կարգեցաք աստէն»,—գրում է նա*[2]։

*Այնուամենայնիվ, նույն պատմիչի անուղղակի մի քանի տեղեկությունները և Ալիշանի կատարած բավականին մանրամասն ուսումնասիրությունները հնարավորություն են տալիս այս կամ այն չափով պարզել մի քանի իշխանների կալվածքների աշխարհագրական մոտավոր դիրքը, որին հարմար ենք համարում անդրադառնալ գավառները նկարագրելիս։*

*Վերը բերված փաստերից, անշուշտ, բխում է, որ Սյունյաց աշխարհի գավառները լոկ աշխարհագրական բնույթ չէին։ Եվ անկասկած, դա է գլխավոր պատճառը, որ Ստեփանոս Օրբելյանը Սյունյաց աշխարհի գավառների մի մասի անունները կապում է «նահապետ»-ների կամ գավառապետների անունների հետ. «...Ծղուկ գաւառ անուանեալ ի Ծղկայ գաւառապետէ», «Գեղաքունի որ ի հայկեանն Գեղամայ կոչեցաւ Գեղարքունի», «Բաղք գաւառ, որ այժմ կոչի Աճէն, որ ի Բաղակայ անուանեցաւ»*[3]*։ Ի դեպ, Մովսես Խորենացին այդ տեսակետից ավելի հեռուն է գնում։ Նա հին Հայաստանի բազմաթիվ գավառների անունները առաջացած է համարում առանձին նահապետների անուններից*[4]։

---

[1] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 207—208։*

[2] *Նույն տեղում, էջ 296։*

[3] *Նույն տեղում, էջ 12։*

[4] *Տե՛ս* Մ. Խորենացի, *Հայոց պատմություն, էջ 25—28։*

## ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

# ՍՅՈՒՆՅԱՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՏԵՐԻՏՈՐԻԱՆ

### 1. Թագավորության կազմավորումը, անունը և սահմանները

*10-րդ դարի երկրորդ կեսին Բագրատունյաց թագավորությունը, ինչպես հայտնի է, մի շարք ներքին և արտաքին պայմանների շնորհիվ մասնատվեց երեք մասի՝ Անի-Շիրակի, Կարսի կամ Վանանդի և Լոռու կամ Տաշիր-Ձորագետի։ Դրանից դեռ շատ առաջ Բագրատունիների մի ճյուղը հաստատվել էր Տայքում (հավանաբար Բյուզանդիայի հովանավորությամբ), կազմակերպելով կյուրապաղատություն։*

*10-րդ դարի առաջին տասնամյակում (908/909 թ.) Վասպուրականի Արծրունյաց իշխանները, Ատրպատականի Յուսուֆ էմիրի անմիջական համաձայնությամբ և օժանդակությամբ, հիմնադրեցին իրենց թագավորությունը։*

*Բացի այս համեմատաբար խոշոր տերություններից, Հայկական լեռնաշխարհի տարբեր անկյուններում կային բազմաթիվ հայկական մանր իշխանություններ, որոնք, անգամ սելջուկների արշավանքներից հետո, տեղ-տեղ պահպանեցին իրենց գոյությունը*[1]։

*Այդպիսի մանր իշխանություններ էին հաստատվել նաև լեռնային Արցախում, որը, մոտավորապես այդ ժամանակներից սկսած, հայտնի է դառնում Խաչեն անունով։ Նրա հարավային մասում հաստատվել էր Աբու-Մուսեի փոքրիկ թագավորությունը, իսկ Վերին Խաչենում և նրա սահմանակից Փառիսոս գավառում՝ մի քանի այլ «արքայիկների հարստություններ»*[2]։

*10-րդ դարի երկրորդ կեսին Սյունյաց աշխարհում ևս կազմավորվում է մի թագավորություն։ Նրա հիմնադրման*

---

[1] Տե՛ս Հ. Մանանդյան, *Հայաստանի պատմությունը թուրք-թաթարական արշավանքների շրջանում, ձեռագրի իրավունքով, Երևան, 1922, էջ 49։*

[2] Լեո, *Հայոց պատմություն, հ. 2-րդ, Երևան, 1947, էջ 633։*

ճշգրիտ թիվը հայտնի չէ։ Օրբելյանն իր պատմության մեջ, ուր մի գլուխ (ԾԹ) ամբողջովին նվիրել է Սյունյաց թագավորների մասին տեղեկություններ հաղորդելուն, թագավորության կազմավորման թվականի մասին ոչինչ չի հիշատակում։ Ենթադրվում է, որ այդ թագավորությունը հիմնադրվել է մոտավորապես 970 թվականին[1]։ Առաջին թագավորի մասին Օրբելյանը գրում է. «Արդ առաջին թագաւորեաց ի Սիւնական աշխարհս արին և քաջն, հզօր և բարեպաշտ արքայն Սմբատ՝ որդի Սահակայ՝ եղբօրն Սմբատայ, որք էին որդիք բարեպաշտին Աշոտոյ՝ եղբօր մեծին Վասակայ որ Իշխանիկ կոչիւր. և սոքա որդիք երանելւոյն Փիլիպպէի՝ եղբօր Սահակայ որ ի Դվին սպանաւ ի պատերազմին Հալայ ամիրային, որդիք Վասակայ՝ մեծ նահապետին Սիւնեաց»[2]։

Ինչպես տեսնում ենք, առաջին թագավորը Սահակի որդի Սմբատն էր։ Սահակը, ինչպես և իր եղբայր Սմբատը, Սյունյաց գահերեց կամ գահագլուխ իշխանական տան սերնդից էին։ Էմինի այն կարծիքը, թե «Կապանում նստողը (Կապանում նստող թագավորը—Թ. Հ.) Գեղարքունիքի Հայկազուն իշխաններից էր»[3], պարզապես թյուրիմացության արդյունք է։ Թվում է, թե Էմինի մոտ այդ սխալը առաջացել է Վարդան վարդապետի հետևյալ հիշատակությունից. «Ի հինգ հարիւր քառասուն և երեք (1094 թ.) թուին առաքեաց Փատլուն ամիրայն Գանձակայ զՎասակ Պահլաւ՝ որդի Գրիգորոյ Մագիստրոսի, ամենայն զօրօքն Առանայ, յանառիկ յամուրսն Բաղաց և Կապանին, որ և խաբէութեամբ հնարեալ մտին անդր. և սպանեալ զՍենեքերիմ արքայն Հայկազնի, զի թագաւորքն որ անդ՝ Հայկականք էին. և ոչ բարձաւ մինչ ի յետին աւուրս եղելոյ երկուց եղբարց անզաւակաց, Սմբատայ և Գրիգորոյ, որ առեալ զմանուկն Սենեքերիմ հայազարմ՝ եդին թագաւոր ժառանգորդ իւրեանց. զոր և սպանեալ հրամանաւ Փատլնոյ

---

[1] Շահնազարյան, *Սիւնիք* (տե՛ս Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, Փարիզ, 1859 թ., էջ 17)*։ Էմիր, *Տաթևի վանքը, («Արարատ», 1852 թ., գիրք 2-րդ, Ս. Պետերբուրգ, էջ 20)*։ Ալիշան, *Սիսական, էջ 16, և այլն*։

[2] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 317*։

[3] Էմիր, *Տաթևի վանքը («Արարատ», 1892 թ., գիրք 2-րդ, էջ 20)*։

*շիջաւ ճրագն որ անդ, և տիրեցին Պարսք»*[1]: *Սրանից, սակայն, բնավ չի կարելի եզրակացնել, թե Սենեքերիմը Գեղամա լճի ավազանում տիրող Հայկազուն իշխանների սերնդից էր: Հավանաբար պատմիչը Սենեքերիմ արքային «Հայկազն» է անվանում միայն ցույց տալու համար, որ նա հայ էր, Հայկի սերնդից:*

*Սյունիքում ստեղծված թագավորությունը տարբեր պատմիչների մոտ տարբեր կերպ է անվանվում: Մատթեոս Ուռհայեցին անվանում է «թագաւորն Կապանին»*[2]: *Այդ՝ նշանակում է, որ պատմիչին թագավորությունը հայտնի է եղել նրա մայրաքաղաքի՝ Կապանի անունով: Վարդան վարդապետը չի հիշատակում թագավորության անունը, սակայն նրա անուղղակի ակնարկներից պարզ երևում է, որ նրան նույնպես թագավորությունը հայտնի էր Կապան մայրաքաղաքի անվամբ*[3]: *Սյունյաց տան պատմիչ Ստեփանոս Օրբելյանը, որն ավելի տեղյակ է և ավելի շատ վկայություններ ունի Սյունիքում ստեղծված թագավորության մասին, այն երբեմն անվանում է «Բաղաց», երբեմն էլ «Սիւնեաց», իսկ ամենից հաճախ՝ «Սիւնեաց և Բաղաց»:*

*Նկատի ունենալով, որ Կապանը մինչև վերջ չի մնացել որպես մայրաքաղաք, մենք ճիշտ ենք համարում թագավորությունը կոչել Սյունիքի կամ «Սյունյաց և Բաղաց» թագավորություն:*

*Սյունյաց թագավորության գրաված տերիտորիայի վերաբերյալ մեզ հասած տեղեկությունները չափազանց անորոշ են:*

*Սյունյաց թագավորությունը, կազմավորված լինելով Սյունիք աշխարհում, իր գրաված տերիտորիայով, բնականաբար, պետք է համապատասխաներ կամ ամբողջ Սյունիք աշխարհին, կամ թե, համենայն դեպս, նրա մի մասին:*

---

[1] *Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի լուսաբանեալ, Վենետիկ, 1862, էջ 103:*

[2] Մատթեոս Ուռհայեցի, *Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898, էջ 17, 231:*

[3] *Տե՛ս* Վարդան վարդապետ, *Հաւաքումն պատմութեան... էջ 128 («ի սոյն ժամանակի առան և մնացեալ դղեակք Կապանին յայլազգիս...»), տե՛ս նաև նույն աշխ. 103 էջը:*

*Աղբյուրների մանրազնին ուսումնասիրությունը մեզ բերեց այն համոզման, որ թագավորության կազմավորման հենց սկզբից էլ նրա տերիտորիայից դուրս է մնացել Գեղամա երկիրը (Գեղարքունիք և Սոտք գավառները)։ Մեր այդ եզրակացությունն անառարկելի դարձնելու համար բերենք մի քանի փաստեր։*

*Օրբելյանը Սյունյաց թագավորության հիմնադրման մասին գրում է.*

*«Եւ զի յայնմ ժամանակի Բագրատունիքն իշխէին միայն Շիրակայ և Այրարատու մինչ ի Գեղամ և մինչ ի յՈւխտիսն և մինչ ի Կարին և մինչ ի Վասպուրականի սահմանն և մինչ ի Ձորոյ գետն և մինչ ի Գարդման. և Սիւնիք կտրեալ էր ի նոցանէ. վասն որոյ ոչ ինչ քրէական մեղս համարեցաւ Սմբատ. զի թէ Բագրատունիքն (որք) գերութեամբ իմն ածեալ էին Հրաչէէ՝ այնմ արժանի գտան, ապա քանի՞ եւս առաւել սոցա անկ էր որ ի Հայկայ երևելի հարազատութեամբ որդիք զհարս փոխանակելով՝ բնիկ տէրութեամբ եկեալ, հասեալ էին մինչև ցայժմ։ Արդ՝ թագ կապեալ Սմբատայ ճոխ և երևելի փառօք յարդարէր զարքայութիւնն ըստ օրինի ինքնակալ թագաւորաց»*[1]*։*

*Պատմիչը Սյունյաց Սմբատ իշխանի անջատվելը և առանձին թագավորություն հիմնադրելը արդարացնելու համար ունի աչառու վերաբերմունք, ինչպես նշում է պրոֆեսոր Մ. Աբեղյանը*[2]*։*

*Նա Բագրատունյաց թագավորների տիրապետության շրջանների արևելյան սահմանը հասցնում է մինչև Գեղամա լեռները և Սմբատ իշխանի կենտրոնախույս գործողությունները արդարացնում նրանով, որ իբր Սյունիքն անջատված էր Բագրատունիներից։ Բերված վկայությունը եթե իրոք միտումնավոր չլիներ, ապա առանց սխալվելու պետք է ասեինք, որ Գեղամա լճի շուրջը գտնվող գավառները կազմեցին Սյունյաց թագավորության մասը։ Սակայն հարցն ավելի պարզվում է, երբ դիմում ենք Օրբելյանի այն վկայություններին, որոնցում*

---

[1] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 300—301։

[2] *Տե՛ս* Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն, գիրք երկրորդ, Երևան, 1946, էջ 214—215։*

նա առանձին շահագրգռվածություն չուներ կեղծելու իրական փաստերը։ Սյունյաց թագավորության վերաբերյալ խոսելիս նա որևէ ակնարկ չունի այն մասին, թե Գեղարքունիքն ու Սոտքը երբևէ եղել են թագավորության տերիտորիայի մեջ մտնող շրջաններ։

Թե՛ Վարդան վարդապետը և թե՛ Ստ. Օրբելյանը նշում են թագավորության մեջ մտնող մի շարք բերդեր[1], որոնցից և ոչ մեկը չէր գտնվում Գեղամա երկրում։

Ասողիկը, որ ժամանակակից էր Գագիկ առաջինին, գրում է. «Իսկ Գագիկ յաւուրս մանկութեան իւրոյ յորժամ շրջէր նա ի գաւառին Գեղամայ՝ տայ նմա (Սարգիս վանականին—Թ. Հ.) տեղի և վանս բնակութեան զվանսն, որ յաղագս ծագման իրիք լուսոյ աստուածայնոյ՝ Շողագայ անուանի։ Եւ ապա ի թագաւորելն բոլոր Հայաստանեայցս՝ դարձեալ ի նոյն տեղի սննդեան իւրոյ, ի վանս Սևանայ օծեալ՝ զհայրութեան և զառաջնորդութեան պատիւն նմա տայ։ Որ և ամենայնիւ յամենայնի ընտիր գտեալ բարւոք վերակացութեամբ՝ հաճոյանար Աստուծոյ և մարդկան»[2]։ Ինչպես երևում է, 10-րդ դարի երկրորդ կեսում Բագրատունյաց թագաժառանգ Գագիկը մանկության հասակում Գեղամա երկրում շրջելիս Սարգիս վանականին տալիս է բնակության տեղ։ Դրանից դժվար չէ եզրակացնել, որ Գեղամա երկիրը (Գեղարքունիք և Սոտք գավառները) պատկանում էր Անի-Շիրակի Բագրատունյաց թագավորներին. այլապես Գագիկը չէր կարող այդ երկրից որևէ տեղ նվիրել այս կամ այն անձնավորությանը։

Մենք նախորդ գլխում տեսանք, որ 10-րդ դարի առաջին քառորդում Սյունյաց գահերեց իշխանական տան Սմբատ, Սահակ և Բաբգեն իշխանները, որոնք եղբայրներ էին, ամբողջ Սյունիքը, առանց Գեղամա լճի շուրջը գտնվող գավառների, բաժանել էին իրար մեջ։ Սմբատին բաժին էր ընկել Վայոց ձոր և Ճահուկ գավառները, իսկ Սահակին և Բաբգենին՝ Ծղուկը, Բաղքը և դրանց շուրջը գտնվող մյուս գավառները։

---

[1] Տե՛ս Վարդան վարդապետ, *Հաւաքումն պատմութեան...*, էջ 128, Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 334—335։

[2] Ասողիկ, *Պատմութիւն տիեզերական*, Ս. Պետերբուրգ, 1885, էջ 259։

*Այդ իշխանների կատարած գործերի և վախճանի մասին Սյունյաց տան պատմիչ Օրբելյանը ունի մի քանի հիշատակություններ, որոնցից մեջ բերենք հետևյալը. «Իսկ Սմբատայ եղբայրն կրտսեր Վասակ մեռանի ի պատերազմին Գողթան ամիրային առ ամրոցին Երնջակայ. և ինքն Սմբատ առեալ զգահերէց իշխանութիւնն՝ բազում ցուցեալ գործ գովելի հոգևոր և մարմնական վախճանի և թողու ժառանգ իւրոյ պայազատ տէրութեանն զորդի իւր Վասակ։ Իսկ Սահակայ՝ եղբօր Սմբատայ, էր որդի Սմբատ անուն. մեռանի Սահակ և առնու զիշխանութիւնն իւր Սմբատ որդի իւր։ Էր եւ ի Բաղս իշխան մի ի սոյն ցեղէ Ջեւանշէր անուն՝ որդի Զագկայ իշխանին»*[1]։ *Քիչ հետո նա շարունակում է. «Մեռանէր և Սահակն. դնէր ի դրան Նորատուսայ եկեղեցւոյն։ Իսկ Վասակ՝ որդի Սմբատայ, յետ բազում իշխանութեանց և գովելի գործոց մեռանի. և տիրէր համազունդ աշխարհիս Սիսական Սմբատ՝ որդին Սահակայ, գահերէց իշխանութեամբ»*[2]։

*Բերված վկայության մեջ ասված է, որ Սյունյաց գահերեց իշխան Սմբատի մահից հետո (Ալիշանի հաշիվներով նա մահացել է 958 թ., «Սիսական», էջ 16) նրան հաջորդեց իր որդի Վասակը։ Վերջինիս իշխանությունը տևում է մոտ հինգ տարի*[3]*։ 963 թ. նրան հաջորդում է Սահակի որդի Սմբատը՝ գահերեց իշխանի իրավունքներով, տիրելով ամբողջ Սյունյաց աշխարհին։ Բայց այդ վկայությունը որոշակի պատասխան չի տալիս այն հարցին, թե Վայոց ձորն ու Ճահուկը, որ բաժին էին ընկել Սմբատին, իսկ նրանից հետո էլ՝ նրա որդի Վասակին, նույնպե՞ս անցան Սահակի որդի Սմբատին, թե վերջինս Վասակի մահից հետո, ձեռք բերելով գահերեց իշխանի պատիվը, շարունակեց իշխել միայն Ծղուկք, Բաղք և սրանց շուրջը գտնվող գավառների վրա, որոնք կազմում էին հոր՝ Սահակի սեփականությունը, իսկ նրա մահից հետո անցան իրեն։*

*Սակայն պարզ է, որ երբ 963 թ. Սմբատը կարգվեց Սյունյաց թագավոր, Վայոց ձոր և Ճահուկ գավառները մտան նրա տիրապետության մեջ։*

---

[1] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 298։*

[2] *Նույն տեղում, էջ 298—299։*

[3] *Տե՛ս* Ալիշան, *Սիսական, էջ 16։*

Ավելի ուշ շրջանին պատկանող վկայություններն արդեն հաստատ կերպով ասում են, որ Վայոց ձորը, ամենայն հավանականությամբ նաև նրա սահմանակից Ճահուկը, գրավվեց Գագիկ 1-ի (989—1020) կողմից։ Ասողիկը, որ ժամանակակից էր Գագիկ թագավորին, այդ մասին հաղորդում է. «Եւ տիրեաց նա (Գագիկը—Թ. Հ.) յոլով բերդից և գաւառաց ի սահմանացն Վայոց ձորոյ, Խաչենոյ և Փառիսոսոյ՝ առաւել քան զհայրն իւր. և ոչ ոք էր, որ զարհուրեցուցանէր զՀայաստանեայս մինչև ցօր գրելոյ իմոյ զբան յիշատակիս այսորիկ»[1]։

Ասողիկը, ինչպես ինքն է ասում[2], իր պատմությունը գրել է 1004 թվականին։ Իսկ Վայոց ձորը և Ճահուկը Գագիկի կողմից պետք է գրավված լինեին 1003 թվականից առաջ, որովհետև Ասողիկն իր պատմությունը վերջացնում է 1003 թ. դեպքերով, երբ Գագիկը բազմաթիվ բերդեր ու գավառներ էր գրավել Փառիսոսի և Խաչենի կողմերում[3]։ Սրանց գրավումն անհնար կլիներ, եթե Գագիկը նախօրոք իր ձեռքը չվերցներ դեպի Փառիսոս ու Խաչեն տանող ճանապարհի վրա գտնվող Վայոց ձորը, նրա սահմանակից Ճահուկը, Ծղուկքի հյուսիսային մասն ու Աղահեճք գավառը։

Հետագայում, թագավորության գոյության ամբողջ ընթացքում, չկա որևէ հիշատակություն այն մասին, թե երբևէ Վայոց ձորն ու Ճահուկը միացված են եղել Սյունյաց թագավորությանը։ Օրբելյանը լավ ծանոթ էր Վայոց ձոր և Ճահուկ գավառներին, սակայն նրա պատմության մեջ չկա որևէ ակնարկ դրանք թագավորության տերիտորիային միացնելու մասին։ Թե՛ Օրբելյանի և թե՛ Վարդան վարդապետի հիշատակած պատմական վայրերը, որոնք այս կամ այն չափով կապված են եղել թագավորության պատմության հետ, գտնվում են միայն Ծղուկք, Ձորք, Արևիք, Կովսական, Բաղք և Հաբանդ գավառներում։

Թագավորության անկումից հետո (1170 թ.) որոշ իշխաններ ապաստան են գտնում Վայոց ձորում։ Բերենք պատմիչի խոսքերը. «Իսկ մնացեալ ազատքն Ջուրջն և Խոսրովիկն

---

[1] Ասողիկ, Պատմութիւն տիեզերական, 1885, էջ 256։

[2] Տե՛ս նույն տեղը, էջ 285։

[3] Տե՛ս նույն տեղը, էջ 283։

տղայ հասակաւ մեռան ի Նախջաւանի. և թաղեցան ի Ճահուկ. և եղբօրորդի մի Ջուրջին գնաց փախստական ի քաղաքն Անի Մահևան անուն. և միւս իշխանն Համտում որ էր որդի մեծ իշխանին Բաղաց Հասանայ, և թոռն աւագ Համտումայ, գնաց ի Վայոց ձոր առ փառաւորեալ եղբայրն իւր Տէր Յովհաննէս, որ բնակէր ի խորաձոր անապատին որ Նորավանս կոչի, մերձ Հրաշկաբերդոյն...»[1]։

Բաղաբերդի գրավումից հետո Բաղաց Համտում իշխանի՝ Վայոց ձորում ապաստան գտնելը ցույց է տալիս, որ վերջինս թագավորության տերիտորիայի մասը չէր կազմում։

Նախորդ գլխում տեսանք, որ 10-րդ դարում Գողթնը, Նախիջևանը և Երնջակը չէին մտնում Սյունիքի մեջ։ Դրանք, բնականաբար, դուրս էին նաև Սյունյաց թագավորության տերիտորիայի սահմաններից։

Այսպիսով, Սյունյաց թագավորությունից հյուսիս-արևմուտքում դուրս էին մնում նախկին Սյունյաց աշխարհի մասերը կազմող Գեղարքունի, Սոտք, Վայոց ձոր, Ճահուկ, Երընջակ գավառները, ինչպես նաև երբեմն նրա մեջ մտնող Նախիջևանն ու Գողթնը։

Այժմ հարց է առաջանում՝ ի՞նչ գծով էր անցնում արևմուտքում նրա սահմանը։ Օրբելյանի մոտ հիշատակված Սյունյաց թագավորությանը պատկանող բերդերից ամենաարևմտյանները Կաքավաբերդ, Մեղրի և Շլորուտ բերդերն են[2]։

Կաքավաբերդի ավերակները գտնվում էին այժմյան Մեղրագետի ակունքների շրջանում։ Մեղրի բերդի ավերակները նույնպես գոյություն ունեն և գտնվում են այժմյան Մեղրի ավանի հյուսիսային մասում, իսկ Շլորուտն էլ, ինչպես կտեսնենք Ձորք կամ Կապան գավառի մասին խոսելիս, համապատասխանում է այժմյան Վերին Հանդ գյուղի մոտ գտնվող տեղացիների անվանակոչությամբ «Շլրոտ» վայրին։

Հիշված բերդերը, մանավանդ նրանցից Մեղրին և Կաքավաբերդը, գրեթե կպած են Սյունյաց լեռների ջրբաժան շարին։ Անկասկած՝ հենց Սյունյաց լեռներն էլ, որ ձգվում են միջօրեականի ուղղությամբ մինչև Երասխ, հանդիսացել են

---

[1] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 337։

[2] Տե՛ս նույն տեղը, էջ 335։

թագավորության գրաված տերիտորիայի արևմտյան սահմանը։ Նրա սահմաններն այս մասում համընկնում են Արևիք, Ջորք և Ծղուկք գավառների արևմտյան սահմաններին[1]։

Ծայր հարավում թագավորության տերիտորիայի մեջ էին մտնում Արևիք և Գրհամ կամ Կովսական գավառները։ Մեր այդ միտքը հաստատելու համար ունենք հետևյալ փաստերը. ա) Կաքավաբերդ, Մեղրի և Կարճևան բերդերը, որոնք հիշատակված են Վարդանի («Պատմութիւն տիեզերական», էջ 168) և Օրբելյանի («Պատմութիւն նահանգին Սիսական», էջ 335) մոտ, պատկանում են Արևիք գավառին։ բ) Թագավորության անկման ժամանակների մասին խոսելիս Օրբելյանը գրում է. «Ի 575 թուականին (1126 թ.) եկն ամիր Հարոնն և բնաջինջ արար զտուն Կապանին և զԱրևիք գաւառ...»[2]։

գ) Սյունյաց թագավորությանը պատկանող նշանավոր բերդերից էր Գրհամը[3]։ Նախկին Կովսական գավառն այդ ժամանակներում կոչվում էր գլխավոր բերդի անվամբ՝ Գրհամ (Օրբելյան, էջ 17)։

Հիշված գավառների հարավային սահմաններն անցնում էին Երասխ գետով[4]։ Նշանակում է՝ թագավորության հարավային սահմանը, Գողթն ավանից մինչև Աղավնո (Հագարի) գետի գետաբերանը, կազմում էր Երասխ գետը։

10-րդ դարի առաջին քառորդում Սյունյաց իշխանները բուն Սյունիքը բաժանել էին իրար մեջ։ Սահակ իշխանը ստացել էր արևելյան մասը՝ մինչև Հագարի գետը. «...և զի հարթ և հաւասար վայելչութեամբ կային իշխանքն Սիւնեաց Սմբատ և Սահակ, և բաժանեալ էին զհայրենի ժառանգութիւնս աշխարհին, աւագն Սմբատ զաւագագոյն մասն Սիւնեաց ընդ արևմուտս կողմն և զբոլոր Վայոց ձոր ունէր ի բաժնի. իսկ

---

[1] Սյունյաց լեռները ըստ երևույթին միշտ ծառայել են որպես սահմանային բնական գիծ բուն Սյունիքի և Գողթնի ու Երնջակի միջև։ Մինչև այժմ էլ Օխչու ենթաշրջանի բնակիչները Գողթնի կողմերին անվանում են՝ «Սարին էն զոլը» («սարի այն կողմը»)։

[2] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 335։

[3] Տե՛ս Վարդան վարդապետ, Հաւաքումն պատմութեան, էջ 128։ Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 335։

[4] Տե՛ս Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 335, Ալիշանի «Սիսական»-ին կցված քարտեզը։

Սահակ՝ ընդ արևելս մինչ ի Հակարի. բայց փոքրիկն Բաղգէն սակաւ ինչ ունէր մասն ի բաժնի»[1]։

Հայաստանում 10-րդ դարի առաջին քառորդի վերջերից սկսած համեմատաբար խաղաղ շրջանը վերաբերում է նաև նրա մի մասը կազմող Սյունիքին։ Այդ խաղաղության հետևանքով Սյունիքն արևելյան կողմից մինչև 11-րդ դարի սկիզբը և դեռ նրանից հետո էլ տերիտորիալ փոփոխություններ չի կրել։

Այսպիսով, պարզվում է, որ Սյունյաց թագավորության գրաված տերիտորիայի սահմանն արևելքում ձգվում էր մինչև Հագարի գետը, որովհետև, ինչպես մենք սույն գլխի սկզբում տեսանք, թագավորությունը կազմավորվել էր Սահակ իշխանի բաժնում, որի սահմանն արևելքում անցնում էր Հագարի գետով։

Սյունյաց թագավորության արևելյան սահմանների վերաբերյալ մեր այդ ընդհանուր դիտողությունն անտարակուսելի դարձնելու համար դիմենք Ստեփանոս Օրբելյանի անուղղակի վկայություններին։ Նրա մի ակնարկից երևում է, որ Բաղք գավառն ամբողջությամբ մտնում էր թագավորության տերիտորիայի մեջ. «Եւ ի սուր սուսերի մաշեցան բազմութիւնք քրիստոնէից, և բնաւին յաւեր անցաւ տունն Բաղաց...»[2]։

«Տունն Բաղաց» ասելով, անշուշտ, պետք է հասկանալ իշխանական տան հետ միասին նաև նրա գրաված տերիտորիան։ Բաղաց տունը, տերիտորիալ իմաստով, ոչ այլ ինչ է, եթե ոչ ամբողջ Բաղքը, որն իր հերթին բաժանվում էր երկու գավառի՝ Աճենի և Քաշունիքի, որոնց արևելյան սահմանն անցնում էր Հագարի գետով։ Հետևապես և թագավորության տերիտորիայի սահմանը՝ Քաշունիք և Աճեն գավառների ուղղությամբ, կազմում էր Հագարի գետը։

Բաղքից հյուսիս գտնվում էր Հաբանդ գավառը, որը համապատասխանում է գրեթե այժմյան Գորիսի շրջանին։ Օրբելյանի հին վավերագրերից վերցված երկու հիշատակություններից դժվար չէ տեսնել, որ Հաբանդ գավառն ամբող-

---

[1] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 197։

[2] Նույն տեղում, էջ 334։

չութեամբ մտնում էր թագավորության տերիտորիայի մեջ։ Ահա այդ հիշատակությունները. ա) «Յանուն Աստուծոյ կամ եղև ինձ Շահանդխտոյ՝ դստեր Սևադայի, տալ ի Հաբանդ գաւառի զանուանեալ շէնդ զՏեղ իւր ամենայն բոլոր սահմանովն, լերամբ և դաշտիւ և այլ մտիւք, զոր իմ թագաւորին Սմբատայ ինձ տուեալ էր, և իմ ի կորդոյ շէն դրեալ.՝ և ես յետ ելից երանելի թագաւորին իմոյ յաստեացս՝ իւր հոգւոյն ի Տաթև ի սուրբ մայրաքաղաքն և ի սուրբ նշանն ետու ի ձեռն Տեառն Յակոբայ՝ Սիւնեաց եպիսկոպոսի...»[1]։ բ) «Իշխան մի Դլեն անուն՝ որդի խաղբակայ, տայ իւր հայրենի ժառանգութեանցն զԽոտ գիւղն և զխոտագետոյ մեծ այգին, եւ ի Վժանիս զԾաղկիկ որ է տեղի բազում անդաստանաց, վասն իւր հոգւոյն ի Տէր Յովհաննէս և ի սուրբ նշանն. և գրէ ինքեան կտակ վճռի...»[2]։

Առաջին մեջբերումը վերաբերում է 998 թվականին և հանդիսանում է այն վավերագիրը, որ գրված է եղել Շահանդուխտ թագուհու հրամանով՝ իր որդի Վասակի ձեռքով։ Երկրորդը՝ 1046 թվականին է վերաբերում։

Ինչպես տեսնում ենք, Տեղ և Խոտ գյուղերը մտնում էին թագավորության տերիտորիայի մեջ։ Տեղը մինչև այժմ էլ գոյություն ունի, գտնվում է Հաբանդ գավառի հյուսիս-արևելյան մասում, գավառի սահմանագծին շատ մոտ և ոչ հեռու Հագարի գետից։ Իսկ Խոտը, որը նույնպես այժմ կա, գտնվում էր Հաբանդի հարավ-արևմտյան մասում։ Հետևապես՝ Հաբանդ գավառը մտնում էր Սյունյաց թագավորության մեջ։ Ուրեմն թագավորության գրաված տերիտորիայի արևելյան սահմանը՝ Քուշունիք, Բաղք և Հաբանդ գավառների ուղղությամբ, անցնում էր Հագարի գետով։

Թագավորության հյուսիսային սահմանների վերաբերյալ մեր սկզբնաղբյուրներում տեղեկություններ չկան։ Սյունյաց երկրի այդ մասը, որտեղ տարածվում էին Աղահեճք գավառն ու արևմուտքից նրան սահմանակից Ծղուկք գավառի հյուսիսային կեսը, առհասարակ քիչ է ծանոթ մեր պատմիչներին, այդ թվում և Սյունյաց տան պատմիչ Ստեփանոս Օրբելյանին։

---

[1] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 291—292։

[2] Նույն տեղում, էջ 315։

Հյուսիսային սահմանի վերաբերյալ ուղղակի փաստեր չունենալու պատճառով ստիպված ենք բավարարվել չափազանց ընդհանուր դիտողություններով։

Աղահեճք գավառը տարածվում էր Հագարի գետի վերին հոսանքի շրջանում։ Նա հարավում սահմանակից էր Հաբանդ գավառին։ Աղահեճքում գտնվող բազմաթիվ բերդերից, վանքերից և բնակավայրերից ոչ մեկը սկզբնաղբյուրներում չեն հիշատակվում իբրև Թագավորության տերիտորիայում գտնվող վայրեր, չնայած բազմաթիվ հարմար առիթների[1]։ Հնարավոր է, որ սկզբնական շրջանում Աղահեճքը Թագավորության մասը կազմած լիներ, բայց ինչպես քիչ հետո կտեսնենք, 1003 թվականից սկսած նա երբեք չէր կարող պատկանել Սյունյաց Թագավորությանը, որի սահմանն այս մասում համընկնում էր Աղահեճք և Հաբանդ գավառների սահմանագծին։

Ալիշանը ենթադրում է[2], որ Ծղուկք գավառից Թագավորության մեջ մտնում էր նրա մի փոքր մասը։ Այդ ենթադրությունը, որի հետ մենք միանում ենք անվերապահորեն, ավելի հավանական դարձնելու համար անհրաժեշտ ենք համարում բերել մի երկու անուղղակի փաստեր, որոնք վրիպել են նշանավոր հայագետի ուշադրությունից։

Մեր պատմիչները Սյունյաց աշխարհի ավերման սկիզբը համարում են 1103 թվականը[3], երբ թշնամին կողոպտեց և տակնուվրա արեց Կապան մայրաքաղաքը։ Հաջորդ տարին՝ 1104 թ., թշնամին գրավում է Որոտն բերդը (Օրբելյան, էջ 334), և եթե Կապան քաղաքն ավերելուց հետո Չորթմանի զորքերը թողնում ու հեռանում են իրենց տեղերը, ապա Որոտն բերդն ընդմիշտ մնում է նրանց ձեռքին։ Որոտնը Սյունյաց Թագավորության տերիտորիայում հիշատակված ամենահյու-

---

1 Մենք նկատի ունենք Գանձակի աթաբեկության կողմից Սյունյաց Թագավորության վրա կատարվող այն բազմաթիվ հարձակումները, որ տեղի են ունենում գլխավորապես Աղահեճքի կողմերով։

2 Տե՛ս Ղ. Ալիշան, *Սիսական*, էջ 273։

3 Տե՛ս Վարդան վարդապետ, *Հաւաքումն պատմութեան*, էջ 140—141, Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 334։

*սիսային բերդն է։ Նրա այդքան վաղ գրավումը թշնամու կողմից անկասկած ցույց է տալիս, որ բերդն այնքան հեռու չէր սահմանից։*

*Ասողիկը վկայում է. «Յայսմ ժամանակի, ի ՆԾԲ թուականին (1103 թ.) իշխանքն Փառիսոսյ, որ ի Հայկազեան ազանց՝ բաւեալ մինչև ցՍենեքերիմ և ցԳրիգոր՝ սպառեցան մահուամբ։ Զորոց զաշխարհն բաժանեալ հակառակութեամբ ի միջի իւրեանց արքայն Հայոց Գագիկ և Փատլոն ամիրայն Գանձակայ»*[1]*։*

*Ինչպես տեսնում ենք, Գագիկ առաջինը 1003 թ. Փառիսոսի կողմերում գրավել է որոշ շրջաններ։ Նույն պատմիչը մի ուրիշ տեղ ասում է, որ Փառիսոսի հետ միասին Գագիկը գրավումներ է կատարել նաև Փառիսոսի թագավորների տիրապետության տակ գտնվող Խաչենում։ Նախկին Արցախի մասերը կազմող Խաչեն և Փառիսոս*[2] *գավառներում գրավումներ կատարելու համար, ինչպես մենք մեկ անգամ արդեն ասացինք, Գագիկն անպայման պետք է նախօրոք տիրապետած լիներ Ծղուկքի հյուսիսային մասին ու Աղահեճք գավառին։ Այլապես Գագիկի տիրապետությունները այս մասում կտրված կլինեին նրա պետության մասը կազմող Վայոց ձորից։*

*Հաշվի առնելով վերը բերված փաստերը՝ Սյունյաց թագավորության հյուսիսային սահմանը Ծղուկք գավառի շրջանում անց ենք կացրել (տե՛ս քարտեզը) Իշխանասար-Գզըլթեփե և Գզըլ-բողազ հրաբխային լեռներով, համարելով այն որպես ամենահավանական բնագիծը, որ Ծղուկքի հյուսիսային մեծ մասը բաժանում էր թագավորության տերիտորիայի մեջ մտնող հարավային փոքր մասից։*

*Ամփոփելով Սյունյաց թագավորության գրաված տերիտորիայի սահմանների վերաբերյալ մեր ասածները, հանգում ենք հետևյալ եզրակացության.*

---

[1] Ասողիկ, *Պատմութիւն տիեզերական*, էջ 283։

[2] *Արցախի կենտրոնական մասը, որ գտնվում է Խաչեն գետի ավազանում, 10—11-րդ դարերից հայտնի է Խաչեն անունով։ Սրան հյուսիսարևմուտքից հարևան էր Փառիսոս գավառը, որը սահմանակցվում էր Ուտի աշխարհի Առանձնակ Ուտի գավառի հետ։*

*Սյունյաց թագավորության տերիտորիան 11-րդ դարի սկզբներից իր մեջ ընդգրկում էր նախկին Սյունյաց աշխարհի հարավ-արևելյան մասը։ Թագավորության սահմաններն արևմուտքում կազմում էր Սյունյաց լեռների հարավային մասը, հարավում՝ Երասխ (Արաքս) գետը, արևելքում՝ Աղավնո (Հակարի կամ Հագարի) գետը, իսկ հյուսիսում նրա սահմանն անցնում էր Հագարի գետի Աղօղլան վտակի և Որոտան գետի ջրբաժան լեռներով, ապա Իշխանասար, Գզըլ-Թեփե և Գզըլ-բողազ հրաբխային գագաթների գծով դեպի արևմուտք՝ մինչև Սյունյաց լեռների հետ հատվելը։ Սյունյաց թագավորության գրաված տերիտորիան հիշյալ սահմաններում իր մեջ ընդգրկում էր Բաղք (Աճեն և Քաշունիք), Կապան կամ Ձորք, Արևիք, Գրհամ կամ Կովսական և Հաբանդ գավառներն ամբողջությամբ ու Ծղուկք գավառի հարավային մասը։*

*Նկարագրված սահմանները, որոնք վերաբերում են 11-րդ դարին, ներկայացնում են Սյունյաց թագավորության գրաված տերիտորիայի մաքսիմումը, հաջորդ ժամանակների համեմատությամբ։*

*Աղբյուրների մանրազնին ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ նշված սահմանների մեջ ամփոփված ամբողջ տերիտորիան, մոտավորապես 10-րդ դարի վերջերից սկսած, կոչվել է «Սյունյաց և Բաղաց» աշխարհ։ Ավելորդ չի լինի այստեղ բերել մեր այդ միտքը հաստատող մի քանի փաստեր.*

*«Եւ պայազատէ զտէրութիւն նորա (Սմբատ թագավորի— Թ. Հ.) մանուկ որդին իւր Վասակ, որ և սա մեծահանդէս ժողովով և աղատակոյտ բազմութեամբ օծանի թագաւոր Սիւնեաց և Բաղաց ձեռամբ Տեառն Գրիգորի՝ Սիւնեաց եպիսկոպոսի»[1]։ «Եւ բարեպաշտ և աստուածասէր թագաւորն Սիւնեաց և Բաղաց աշխարհիս Վասակ...»[2]։ «Եւ այս իսկ են գաւառք վիճակեալք հօտի նոցա (Սյունյաց եպիսկոպոսական թեմին պատկանող գավառները—Թ. Հ.) Սիւնիք, Բաղք, Արևեաց տունն, Որոդուատ, Արքուլիք, Վանանդ, Երնջակ, Նախիջաւան, Ջուղայ որքան Երասխայ գետն հատանէ, Ճահուկ, Վայոց ձոր խաչերոյ խոռովն, Գեղաքունի Կողայ բակովն...» և*

[1] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 301։

[2] *Նույն տեղում*, էջ 303։

այլն[1]։ «Կամաւ կարող հզօրին Յիսուսի ես Սեննեքերիմ՝ Թագաւոր Հայոց, կացեալ ի Սիսական և Բաղաց աշխարհիս...»[2]։ «Ահա զայսօրինակ բարձաւ տէրութիւն Սիւնեաց և Բաղաց. և եղև վախճան տոհմին Սիսակայ և նախարարութեան Սիւնեաց...»[3]։

«Սյունյաց և Բաղաց» աշխարհ անունը առաջացել է Սյունյաց իշխանական տան այն երկու ճյուղերից, որ ժառանգաբար իշխում էին այդ կողմերում։ Ծղուկքում և Հաբանդում իշխում էին գահերեց իշխանական ճյուղին պատկանող իշխանները, իսկ Բաղքում, Կովսականում, Ձորքում և, հավանաբար, նաև Արևիքում իշխում էր նույն իշխանական մյուս ճյուղը, որը բերված վկայությունների մեջ անվանված է «Բաղաց» իշխանական տուն[4]։

Ուրեմն «Սիւնեաց և Բաղաց» աշխարհ ասելով պետք է հասկանալ այն տերիտորիան, որում իշխում էին Սյունյաց և Բաղաց իշխանները։

Այն հայագետները, որոնք այս կամ այն առիթով ստիպված են եղել որոշ գաղափար տալ Սյունյաց թագավորության մասին, հատուկ ուսումնասիրությունների բացակայության պատճառով բավարարվել են միայն ընդհանուր դիտողություններով։

Թագավորության գրաված տերիտորիայի վերաբերյալ համեմատաբար ավելի կոնկրետ մտքեր են արտահայտել Ալիշանն ու ակադ. Հ. Մանանդյանը, որոնց կարծիքները բերում ենք առանց կրճատումների։

«Եւ առ Սեննեքերիմաւ յամի 1070 մինչդեռ «չէն էին գաւառք Կապանին», ըստ պատմիչին, որ այնու իմանայ զերկիր թագաւորութեանն Սիւնեաց ժամանակին, տասնեքին յիշատակեալ գաւառքն այնորիկ և բերդեան՝ չորեցուն հին գաւառացն պատշաճին, այսինքն են Ծղուկք, Ձորք, Արեւիք և Կովսական. և ոչ յիշի և ոչ մի տեղի Հաբանդայ և Բաղաց՝ որոց յառաջն տիրէին»[5]։

[1] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 310։

[2] *Նույն տեղում*, էջ 322։

[3] *Նույն տեղում*, էջ 337։

[4] *Այդ իշխանական տունը Ալիշանի մոտ անվանված է «Ջագիկեանք»*։

[5] Ալիշան, *Սիսական*, էջ 291։

«Ստեփանոս Օրբելյան պատմագրի վկայությամբ այս թագավորության (Սյունյաց թագավորության—Թ. Հ.) իշխանության տակ էին գտնվում 43 բերդ, 48 վանք և 1008 գյուղ, իսկ նրա կենտրոնն էր Կապան մայրաքաղաքը։ Որքան և մոտավոր լինեն այդ թվերը, Ստեփանոս Օրբելյանի այս և ուրիշ տեղեկություններից պարզ երևում է, որ Կապանի ընդարձակ թագավորությունը պարունակել է իր մեջ Սյունյաց և Բաղաց աշխարհի մեծագույն մասը»[1]։

Մեր կատարած ուսումնասիրությունների արդյունքները ցույց են տալիս, որ Սյունյաց թագավորության մեջ մտնող գավառների վերաբերյալ Ալիշանի արած կողմնակի դիտողությունները հիմնականում ճիշտ են։ Ինչ վերաբերում է ակադ. Մանանդյանի կարծիքին, ապա պետք է ասել, որ այն ունի բավականաչափ անորոշություններ։

Եթե «Սյունյաց և Բաղաց աշխարհ» ասելով անվանի գիտնականը նկատի ունի նախկին Սյունիքի Ծղուկք, Ձորք, Արևիք, Կովսական, Հաբանդ և Բաղք գավառները, ապա մենք միանում ենք նրա կարծիքին, որովհետև իրոք «Սյունյաց և Բաղաց աշխարհի մեծագույն մասը» մտնում էր այդ թագավորության տերիտորիայի մեջ, իսկ եթե «Սյունյաց և Բաղաց աշխարհ» ասելով նա նկատի ունի նախկին ամբողջ Սյունիքը, որը բաղկացած էր 12 գավառից, ապա մեր ուսումնասիրության արդյունքները չեն հաստատում այդ, հետևապես ընդունել չենք կարող։

## 2. Սյունյաց թագավորության բերդերը, վանքերը և գյուղերը

Մեզ հայտնի աղբյուրները Սյունյաց թագավորության բերդերի, վանքերի և գյուղերի վերաբերյալ պարունակում են բավականին մեծ թվեր։ Որքան մեզ հայտնի է՝ այդ մասին գոյություն ունի և մեզ է հասել միայն երկու աղբյուր։ Բերենք այդ աղբյուրների համապատասխան վկայությունները. ա) «...և ի վեցհարիւր վաթսուն և ութ թուին առնու (Իվանեն—

[1] Հ. Մանանդյան, *Հայաստանի պատմությունը թուրք-թաթարական արշավանքների շրջանում*, 1922, էջ 50։

Թ. Հ.) զՍիրատն, և զմերձակայ դղեակն, ՚Թէպէտ ոչ զբովանդակ. քանզի երբ ունէին զնա Հայկազունքն, քառասուն և երեք բերդք էին նշանաւորք, և հազար չորեքհարիւր գեղք, և քառասուն և ութ վանորեայք. որոց սկիզբն աւերման եղև ի հինգ հարիւր յիսուն և երկու թուին...»[1]։ Նույն Վարդան վարդապետի պատմության այլ հրատարակության մեջ ասված է.

բ) «Ի վեց հարիւր վաթսուն և ութ թուին առնու զՍիրատն և զմերձակայ դղեակն՝ թէպէտ ոչ զբովանդակն. քանզի երբ ունէին զնա Հայկազունքն՝ քան և երեք բերդք կային նշանաւորք, և գեօղք հազար և չորս հարիւր, քան և ութ վանորայք[2], որոց սկիզբն աւերման եղև ի հինգ հարիւր յիսուն և երկու թուին...»[3]։

Ստեփանոս Օրբելյանի պատմության թե՛ Փարիզի և թե՛ Թիֆլիսի հրատարակություններում (վերջինս արտատպված է Փարիզի հրատարակությունից) բերդերի, վանքերի և գյուղերի վերաբերյալ բերված են միևնույն թվերը. «Ահա՛ այս իսկ եղև սկիզբն աւերման աշխարհին, և օր ըստ օրէ սկսաւ նուազիլ և պակասիլ իշխանութիւնն այն որ ունէր ընդ ձեռամբ բերդս 43. և անուանիքն ի նոցանէ 12. և վանորայս 48, և գիւղս 1008. և մայրաքաղաք զԿապանն. այս Բաղաց իշխանութիւնն է»[4]։ Մոսկվայի հրատարակության մեջ ևս («Պատմութիւն տանն Սիսնեայ», 1861, էջ 245) բերդերի և վանքերի միևնույն թվերն են տրված։

Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվան մատենադարանում պահպանված Օրբելյանի պատմության բոլոր ձեռագրերում, որոնց թիվը 9 է, հիշատակված են 43 բերդ և 48 վանք[5]։

---

[1] Վարդան վարդապետ, Հաւաքումն պատմութեան, էջ 140—141։

[2] Էմինի մոտ եղած ձեռագրի օրինակում «քառասուն և ութ վանորայք» են, էջ 185։

[3] Մեծին Վարդանայ Բարձրբերդեցւոյ պատմութիւն տիեզերական, ի լոյս ընծայեաց Մկրտիչ Էմին, Մոսկվա, 1861, էջ 185։

[4] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, Փարիզ, 1859, գիրք II, էջ 78, նույնը Թիֆլիս, 1910 թ., էջ 334։

[5] Ձեռագիր №№ 6271, 15-րդ դար (սա Երևանի ձեռագրատանը գտնըվող Օրբելյանի պատմության ամենահին ձեռագիրն է), էջ 225 բ, 2698, 17-րդ դար, էջ 116 ա. 5501, 1683 թ., էջ 276. 1488, 18-րդ դար, էջ 142 բ, 2869, 19-րդ դար, էջ 150 ա, 6546, 1849 թ., էջ 127 ա. 2868, 1854 թ., էջ 175, 2924, 1864թ., էջ 100 բ. 7503, 1865 թ., էջ 150 ա։

Դժվար չէ նկատել, որ բերված վկայություններում թվերը իրար համապատասխանում են, բացառությամբ Վարդանի պատմության Մոսկվայի հրատարակության մեջ եղած թվերի։ Այստեղ բերդերի քանակը 23 է, իսկ վանքերինը՝ 28։ Մոսկվայի հրատարակության համար հիմք ծառայած ձեռագրի այդ թվերը, որոնք անշուշտ սխալ են, արդյունք են ձեռագրական աղավաղումների։ Դրա համար էլ չափազանց հավանական ենք համարում Սյունյաց թագավորության մեջ 43 բերդերի և 48 վանքերի գոյությունը։ Այժմ այդ հարցը քննության ենթարկենք առանձին-առանձին։

**Բերդերը:** Միջին դարերում հայտնի բոլոր երկրներում, այդ թվում և Հայաստանում, առավել մեծ չափերով տարածում ունեին բերդերը։ Յուրաքանչյուր նախարարական (ֆեոդալական) տուն իր գրաված գավառը կամ աշխարհն անվրտանգ դարձնելու նպատակով կառուցել էր մի շարք բերդեր և ամրոցներ, որոնցից համեմատաբար ավելի մեծ հռչակ ունեցող բերդը, ամրոցը կամ բերդաքաղաքը հանդիսանում էր նրա ոստանը (իշխանանիստը)։

Սյունիքը լինելով պատմական Հայաստանի արևելյան սահմանամերձ աշխարհներից մեկը և ստրատեգիական տեսակետից իշխող դիրք ունենալով Այրարատի նկատմամբ, բնականաբար պետք է ամրացվեր։ Մեր պատմիչները Սյունյաց երկրի անմատչելիությունը ցույց տալու համար հաճախակի անվանում են այն «անառիկ», «անձուկ» և այլն։ Սյունիքին տրված այդ ածականները, մեր կարծիքով, պայմանավորված են ոչ միայն երկրի անտառապատ և խիստ լեռնային լինելով, այլև այն բազմաթիվ բերդերի ու արհեստական ամրոցների առկայությամբ, որոնցից շատերը (Երնջակ, Որոտն, Բաղաբերդ) հռչակված էին դեռ 4-րդ դարում։

«Զորանամակ»-ում հիշատակված[1] նախարարական տների մեջ ամենամեծ թվով ձիավոր զորք տալիս էր Սյունիքը։ Այս երևույթը, մեր կարծիքով, պետք է բացատրել ոչ թե նրանով, որ իբր Սյունիքում բնակչության թիվն անհամեմատ

---

[1] Տեսնել տե՛ս Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, էջ 251—252։

գերազանցում էր կենտրոնական շրջաններին, այլ գլխավորապես նրանով, որ նա ուներ սահմանային դիրք[1]։

Սյունիքի դիրքի ստրատեգիական առավելությունները չէին կարող վրիպել Սասանյան Պարսկաստանի արքաների ուշադրությունից։ 10-րդ դարի սկզբների արաբական հեղինակ Իբն-ալ-Ֆակիհն իր «Գիրք երկրների մասին» աշխարհագրական բնույթի աշխատության մեջ վկայում է, որ Խոսրով Անուշիրվանը Սիսաջանում (Սյունիք) կառուցել է մի շարք բերդեր և ամրոցներ, այդ թվում և մեզ հայտնի Շահապոնիքը («Շահբուշ») և Վայոց ձորը («Վայ»)։ Իմիջիայլոց, նույն այդ արաբ հեղինակը վկայում է նաև, որ ամրոցներում ու բերդերում բնակեցվեցին սիսաջանցիներ (սյունեցիներ), որոնց նա անվանում է «խիզախ» զինվորականներ[2]։

Ստեփանոս Օրբելյանի պատմության մեջ նրան կցված Տաթևի եպիսկոպոսական թեմին տրվող հարկի ցուցակում կան բազմաթիվ գյուղերի անուններ, որոնք բարդված են «բերդ» բառով, իսկ նրանցից մի քանիսն ուղղակի կոչվում են «Բերդ», «Բերդիկ» և այլն։ Պատմիչն իր պատմության Գ գլխում, ամբողջ Սյունիքում հիշատակելով 24 նշանավոր բերդեր, ավելացնում է. «...և այլ ևս յոլովս, զորս աւելորդ համարեցաք գրել...»[3]։

Սյունյաց թագավորության բերդերի քանակի վերաբերյալ պատմիչների հաղորդած տեղեկությունների ճշտությունը պարզելու համար նպատակահարմար համարեցինք դուրս հանել ինչպես մյուս պատմիչների նշած, այնպես էլ Օրբելյանի պատմության և եկեղեցական հարկի գյուղացուցակում եղած բոլոր բերդերի անունները, ներառյալ նաև այն գյուղերի անունները, որոնք սկսվում կամ վերջանում են «բերդ»-ով՝

---

[1] Զորքի այդպիսի մեծ քանակությունը, թվում է, կարելի է բացատրել նրանով, որ Սյունիքում ֆեոդալիզմը չափազանց դանդաղ է իր վերջնական ձևավորումն ստացել և «Զորանամակ»-ի ժամանակներում այնտեղ համեմատաբար ազատներ ավելի շատ կային, քան թե կենտրոնական շրջաններում։ Իսկ, ինչպես հայտնի է, ձիավոր զորքը կազմվում էր ազատներից։

[2] Տե՛ս Караулов, Сведение арабских писателей о Кавказе, Армении и Азербайджане, Сборник мат. для описан. местн. и племен Кавказа, էջ 15—17։

[3] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 13—14։

վերջիններիս բերդ կամ ամրոց լինելը համարելով չափազանց հավանական։

Մեր կազմած բերդերի և ամրոցների ցանկը, որ բերում ենք ստորև, վերաբերում է միայն Արևիք, Կովսական, Բաղք, Ձորք, Ծղուկք, Հաբանդ գավառներին, այսինքն այն գավառներին, որոնք մտնում էին Սյունյաց թագավորության մեջ։

**Արևիք գավառ**

1. Կարճաւան
2. Մեղրու բ.
3. Կաքավաբերդ

**Կովսական գավառ**

4. Գիլաբերդ
5. Գրհամ

**Բաղք գավառ**

6. Անդոկաբերդ
7. Բարկուշատու բ.
8. Բ ե ր դ
9. Բերդիկ
10. Պահու բ.
11. Կլուաքար կամ Կըկոց քար
12. Բղենոյ բ.

**Ձորք գավառ**

13. Բաղաբերդ
14. Բաղակամ քար կամ Քար Բաղակու
15. Գեղի
16. Շլորուտ

**Ծղուկք գավառ**

17. Բորտի Վերին
18. Բորտի Ներքին
19. Եղնաքար
20. Որձաբերդ
21. Որձաքար բ.
22. Որոտն բ.
23. Սյունյաց բ.
24. Յուրաբերդ
25. Բերդն

**Հաբանդ գավառ**

26. Խոժոռաբերդ
27. Հաբանդի կամ Զագեձորի բ.
28. Հայրաբերդ

Այս բոլոր բերդերն ու ամրոցները մտել են Ալիշանի կազմած Սյունյաց աշխարհի բերդերի ցուցակի մեջ։ Հեղինակը ամբողջ Սյունիքում թվարկել է 69 բերդ՝ առանց նրանց գավառները ցույց տալու[1]։ Դրանցից, ինչպես տեսնում ենք, 28-ը գտնվում էին Սյունյաց թագավորության տերիտորիայում։

Ալիշանի կողմից բաց թողված բերդերի ու ամրոցների թիվը մեր հաշվումներով հասնում է 8-ի։ Դրանք են.

[1] Տե՛ս Ալիշան, Սիսական, էջ 7—8։

1. Դաստակերտ (Քաշունիքում)
2. Երվանդակերտ (Քաշունիքում)
3. Դոնակերտ (Կովսականում)
4. Վասակակերտ (Ծղուկքում)
5. Դաստակերտ (Ծղուկքում)
6. Շաղատի բ. (Ծղուկքում)
7. Կապան բերդաքաղաք (Ձորքում)
8. Շնհեր (Հաբանդում)

Այս 8 տեղանունները Օրբելյանն ուղղակի բերդեր չի անվանում, ինչպես և բերդ կամ ամրոց չի անվանում նաև նըշված 28 տեղանունները։ Ութ տեղանուններից 5-ը (Դոնակերտ, Վասակակերտ, Դաստակերտ, Երվանդակերտ, Դաստակերտ) ունեն «կերտ» վերջավորություն։

Առանց մեծ սխալ գործելու կարելի է ասել, որ ոչ միայն Սյունիքում, այլև Հայաստանի մյուս նահանգներում մեր պատմիչների կողմից հիշատակված «կերտ»-ով վերջացող տեղանունները, գրեթե առանց բացառության, միաժամանակ եղել են բերդեր. օրինակ՝ Տիգրանակերտը, Վաղարշակերտը, Երվանդակերտը, Կարկաթիոկերտը, Հադամակերտը և այլն։ Ճիշտ է, դրանք չափազանց տարբեր բնույթի պատմա-աշխարհագրական վայրեր էին, բայց դա չի խանգարում Սյունիքում եղած «կերտ»-ով վերջացող վայրերը համարելու այնպիսի վայրեր, որտեղ պաշտպանական նպատակներով կատարված են եղել որոշ կառուցումներ։ Դա ավելի հավանական է դարձնում այն փաստը, որ նրանցից երկուսի անունները (Վասակ-ա-կերտ, Երվանդ-ա-կերտ) առաջացել են իշխանների (Վասակ, Երվանդ) անուններից, որոնց համար այդ բերդադյուղերը, հավանաբար, ծառայել են որպես ամրոց կամ դղյակ։

Այնուհետև, Կապան քաղաքը պատմագիտական և աշխարհագրական մի շարք աշխատությունների մեջ նույնացված է նրանից 3—4 կմ հեռու գտնվող Բաղաբերդի հետ։ Ալիշանն էլ հավանաբար այդպես վարվելով, Կապան բերդաքաղաքը չի նշել բերդացուցակի մեջ։ Կապան քաղաքի մասին ավելի մանրամասն խոսելը թողնենք Ձորք գավառի նկարագիրը տալիս, նշենք այստեղ միայն այն, որ Կապանը մայրաքաղաք լինելով հանդերձ, եղել է նաև ամուր բերդ։ Նրա բերդի

աշտարակների մնացորդներն անգամ այժմ նշմարելի են։ Սյունյաց տան պատմիչ Ստեփանոս Օրբելյանի՝ Կապան քաղաքին տված բնութագրի տակ («...մատնեաց Տէր զանառիկն ի մարդկանէ զԿապան քաղաք...»[1]) պետք է հասկանալ ոչ միայն Կապանի բնական հարմար դիրքը, այլև արհեստական կառուցումները, որոնք էլ ավելի անառիկ էին դարձնում քաղաքը։

Շաղատ ավանը երկար ժամանակ հանդիսացել է Սյունյաց իշխանների ոստանը։ Միջնադարյան Հայաստանում բոլոր նախարարական տների ոստաններն անկասկած միաժամանակ բերդեր կամ ամրոցներ էին[2]։ Շաղատում բերդ լինելու մասին ուղղակի հիշատակություն ունի Մովսես Կաղանկատվացին, որը ոչ ոքի կողմից նկատի չի առնվել. «Ի նոյն ամի (821 թ.) ասպատակեաց Սևադայ աշխարհաւերն Տաճիկ, որոյ Աւառանշան անուն ճանաչէր, ի սահմանս Հայոց. և յաւարի առեալ զաշխարհն ամենայն դառնայ ի Սիւնիս, և ամրանայ ի բերդատեղի աւանին Շաղատու, որ է ի գաւառին Ծղկաց»[3]։ Այսպիսով, Շաղատը ևս պետք է ավելացնել վերը նշված բերդացուցակում։ Շնհերը, որ ըստ Տաթևի եպիսկոպոսական թեմին տվող հարկացուցակի՝ Հաբանդ գավառի մյուս գյուղերից ավելի շատ հարկ էր տալիս[4], թե՛ իր մեծությամբ և թե՛ բնույթով տարբերվում էր Հաբանդի մյուս գյուղերից։ Օրբելյանը վկայում է. «Եւ ապա էր մեծ Վասակայ որդի մի Փիլիպպէ անուն, որ ունէր զՇնհեր և զՀամբանդ»[5]։ Դժվար չէ նկատել, որ Հաբանդ գավառը բաժանվում էր երկու մասի, որից մեկը կոչվում էր Շնհեր։ Շնհերի բերդ կամ ամրոց լինելն տարակույս չի առաջացնի, եթե հաշվի առնենք, որ

---

[1] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 334։

[2] Այսպես՝ Բագրատունիների Դարոյնք, Տարոնի Մամիկոնյանների Ողական, Արծրունիների Հադամակերտ ոստանները միաժամանակ հռչակված ամրոց-բերդեր էին։

[3] Մովսես Կաղանկատվացի, Պատմութիւն Աղուանից աշխարհի, Թիֆլիս, 1912, էջ 374—375։

[4] Տե՛ս Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 516—517։

[5] Նույն տեղը, էջ 298։

18-րդ դարում հոչակված[1] այդ բերդի այժմյան ավերակներն իրենց վրա կրում են հնության կնիքը։

Այսպիսով, Սյունյաց և Բաղաց թագավորության տերիտորիայում հիշատակված բերդերի ու ամրոցների թիվը մոտավորապես հասնում է 36-ի։ Հետևաբար, պատմիչների վկայությունը՝ թագավորության տերիտորիայում 43 բերդերի գոյության մասին անհավանական չէ։

Հնարավոր է, որ մեր կազմած ցուցակում տեղ գտած լինեն այնպիսի վայրերի անուններ, որոնք բերդեր կամ ամրոցներ չէին, սակայն և կլինեն այնպիսիները, որոնք բոլորովին չեն հիշատակվել պատմիչների կողմից կամ հիշատակված են. սակայն դժվար է դրանք տարբերել մյուս տեղանուններից։

Սյունյաց թագավորության տերիտորիայում եղած 43 բերդից նշանավոր էին, ինչպես վկայում է Օրբելյանը[2], միայն 12-ը, որոնք քաղաքական դեպքերի կապակցությամբ հիշատակված են նրա մոտ[3]։

Դրանք են՝ Որոտն (Ծղուկք գավառում), Բղեն և Կկոց քար (Բաղքում), Բաղաբերդ, Բաղակու քար, Գեղի, Շլորուտն և Կապան (Ձորքում), Գրհամ (Կովսականում), Կաքավաբերդ, Կարճևան և Մեղրի (Արևիքում)։ Մնացած բերդերը, ինչպես երևում է Օրբելյանի հիշատակությունից, երկրորդական նշանակություն ունեին[4]։

Եվ իրոք, մեր բերած ցուցակում եղած բերդերի մոտ մեկ երրորդ մասը միայն կարելի է բառիս իսկական իմաստով բերդ կոչել։ Իսկ նրանց գերակշիռ մեծամասնությունը սովորական գյուղեր էին և, հավանաբար, բնական անառիկ դիրք ունենալու հետևանքով են միայն կոչվել բերդ կամ ամրոց։

Սյունյաց թագավորության գլխավոր բերդերի մեծ մասի ավերակները մինչև այժմ էլ պահպանվել են, որովհետև 800—900 տարվա ժամանակամիջոցը չի բավականացել քայքայման ենթարկելու հաստատպատ պարիսպներն ու աշտարակնե-

---

[1] Տե՛ս Ստեփանոս Վրդանենյան (Ծահումյան), Դաւիթ բէգ, Վաղարշապատ, 1871, էջ 6—7։

[2] Տե՛ս Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 334։

[3] Տե՛ս նույն տեղը, էջ 334—335։

[4] Տե՛ս նույն տեղը, էջ 334։

րը։ Մինչդեռ այն բազմաթիվ գյուղերը, որոնք մենք հաշվել ենք բերդեր և որոնց մի մասի ավերակները պահպանվել են մինչև օրս, չունեն բերդին հատուկ կառուցումներ։ Այլ կերպ ասած՝ աղբյուրներում նշված 43 բերդերի գերակշիռ մասը ամուր և անառիկ դիրք ունեցող սովորական գյուղեր պետք է ենթադրել, որովհետև այս երկրում բնակավայրերի ճնշող մեծամասնությունը գտնվում էր կամ բարձր ժայռերով պատած խոր ձորերում և կամ դժվարամատչելի լեռների բարձունքներում[1]։

**Վանքերը**: Վերը տեսանք, որ Սյունյաց թագավորության տերիտորիայում կար 48 վանք։

Ստեփանոս Օրբելյանը, որ իր պատմության մի գլուխը տրամադրել է ամբողջ Սյունիքում եղած վանքերի թվարկությանը[2], հիշատակում է ընդամենը 30 վանք և ավելացնում. «Ահա այս ամենայն վանեար յականէ և յանուանէ ի գլխաւորագունիցն, յորոց բազումք ամայի և թափուր են ի շինութեանց, և սակաւքն ի լուսաւորութեան այժմ, որք են թուով 30, բայց այլ ևս բազումք կային զորս ոչ թուեցաք»[3]։

Պատմիչի այս վկայությունը ցույց է տալիս, որ Սյունիքում վանքերը իսկապես մեծ տարածում ունեին։

Ալիշանը ենթադրում է, որ Սյունյաց աշխարհում վանքերի թիվը հասնում էր հարյուրների[4]։ Նա կազմել է առաջին վկայություններից մինչև 17-րդ դարը հիշատակված ամբողջ Սյունիքի վանքերի, եկեղեցիների և ուխտատեղիների ցուցակը, ըստ որի դրանց թիվը հասնում է 148-ի[5]։ Այդ ցուցակում

---

[1] Հետաքրքիր է, որ այդ լեռնային երկրում, ժողովրդական զրույցների համաձայն (միայն վերաբերում է այժմյան Ղափանի շրջանին), դեռ հնագույն ժամանակներից սկսած յուրաքանչյուր գյուղ ունեցել է իր «տիրք»-երը (դիրք), որոնք տեղադրված են եղել բարձրադիր տեղերում և իրենցից ներկայացրել են փոքրիկ ու շատ հասարակ աշտարակներ։ Դրանք, ժողովրդի ասելով, կառուցվում էին դեպի տվյալ գյուղը տանող ճանապարհների վրա և ծառայում էին իբրև պաշտպանական կետեր ընդդեմ արտաքին վտանգի։

[2] Տե՛ս Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, գլխ. ԿԲ, էջ 338—340։

[3] Նույն տեղում, էջ 340։

[4] Տե՛ս Ղ. Ալիշան, Սիսական, էջ 21։

[5] Տե՛ս նույն տեղը, էջ 21—23։

*տեղ են գտել նաև այն գյուղերը, որոնց անունները բարդված են «վանք» բառով։*

*Սյունյաց թագավորության մեջ 48 վանքերի գոյության խնդիրը պարզորոշ դարձնելու համար մենք ևս ստիպված ենք կազմել նույնատիպ ցուցակ, բայց հետևյալ տարբերություններով.*

*ա) Մենք կազմում ենք միայն այն վանքերի, եկեղեցիների և ուխտատեղիների ցուցակը, որոնք գտնվում էին թագավորության տերիտորիայում.*

*բ) Ցուցակը կազմում ենք ըստ գավառների.*

*գ) Նպատակադրման տեսակետից մեր կազմած ցուցակում մտել են միայն այն վանքերը, եկեղեցիները և ուխտատեղիները, որոնք հիշատակված են 10—13-րդ դարի պատմիչների կողմից։ Թվում է, թե մեծ սխալ չենք գործում, երբ 10—13-րդ դարերում հիշատակված վանքերը, եկեղեցիները և ուխտատեղիները հաշվում ենք թագավորության ժամանակներում գոյություն ունեցածներ։ Նախ այն պատճառով, որ 9-րդ դարի կեսերից ի վեր, այսինքն Բուղայի արշավանքներից հետո, արտաքին թշնամիների կողմից Սյունիքում այնպիսի ավերածություններ չեն կատարվել, որոնք ենթադրել տային նաև վանքերի ոչնչացում։ Երկրորդ, ինչպես հայտնի է, երկրի ներսը խուժած թշնամիները, քաղաքացիական շինությունների համեմատությամբ, կրոնի հետ կապված կառուցումները[1] ավելի քիչ էին ավերում, իսկ ավերելու դեպքում էլ դրանք մեծ մասամբ վերականգնվում էին։*

## Ցուցակ

*10—13-րդ դարերի պատմիչների կողմից Սյունյաց թագավորության տերիտորիայում հիշատակված վանքերի, եկեղեցիների և ուխտատեղիների.*

[1] *Կարծում ենք, դրանով է բացատրվում այն երևույթը, որ Հայաստանում ամենից շատ պահպանված են վանքերի, եկեղեցիների և կրոնական այլ շինությունների ավերակները, այն դեպքում, երբ քաղաքացիական բնույթի շենքերից, համեմատաբար, մեզ շատ քիչ բան է հասել։*



6—1351

### Արևիք գավառ

1. Արկավանք
2. Գանձափարախ
3. Ջուարի վ.
4. Խոլա վանք
5. Կարճևանի վ.
6. Մանլևու Ամենափրկիչ անապատն կուսանաց
7. Մեղրու վ.
8. Որդիշո վ.
9. Լհե վ.
10. Լուսկե վ.

### Կովսական գավառ

11. Ձեռատիվան
12. Պողոսի վ.
13. Վարոսի վ.
14. Փառվարտո վ.

### Բաղք գավառ

15. Բակուրի վ.
16. Երիցավանք
17. Կատարոի վ.
18. Տատանեա վ. (՞)[1]
19. Վարդանավանք
20. Աչաղուի վ.

### Ձորք գավառ

21. Բաղակու քար վ.
22. Գեղու վ.
23. Գողերեա վ.
24. Վահանու վ.
25. Գանձափարախի վ.

### Ծղուկք գավառ

26. Բյուրոտի վ.
27. Թանահտի վ.
28. Լերին վ.
29. Որոտան վ.
30. Կնեվանք (՞)
31. Կուռափաձորի վ. (՞)
32. Կուրավանք
33. Հալիձորու անապատն կուսանաց
34. Հարանց անապատն արանց
35. Նորավանք մյուս
36. Շաղատի վ.
37. Շաքեի վ.
38. Տաթևի վ.
39. Սյունի վ.[2]

### Հաբանդ գավառ

40. Պատանդավանք
41. Պետրոսկա վանք
42. Վաղատու վ.

*Ինչպես տեսնում ենք, Վարդանի և Օրբելյանի վկայությունն այն մասին, թե Սյունյաց թագավորության մեջ կար 48 վանք, հեռու չէ ճշմարտությունից։ Եթե 10—13-րդ դարե-*

[1] Փակագծերում դրված հարցական նշանը ցույց է տալիս, որ ստույգ հայտնի չէ, թե որ գավառում է գտնվում տվյալ վանքը։

[2] Նկատի ունենալով Օրբելյանի վկայությունը, որ Սյունի վանքը կառուցվել է 551 թվականից առաջ (էջ 338), Ալիշանը կարծում է, որ Սյունի և Շաղատու վանքերը նույնն են («Սիսական» էջ 22)։ Սակայն քանի որ Սյունի և Շաղատու վանքերը պատմիչը հիշատակում է առանձին-առանձին (էջ 338—510), ուստի դրանք առանձին վանքեր էին. Սյունին գտնվում էր այժմյան ՀՍՍՌ Սիսիանի շրջկենտրոնում (այժմ էլ այն կա և կառուցվել է 7-րդ դարում), իսկ մյուսը՝ նույն շրջանի Շաղատ գյուղի մոտ։

րի պատմիչներն այս կամ այն առիթով նրանցից 42-ը հիշատակում են, ապա կարծում ենք, որ այլևս տեղ չի մնում նըշված 48 վանքերի, եկեղեցիների և ուխտատեղերի գոյության մասին կասկածելու։

Արևիք գավառում (որը Սյունյաց թագավորության մեջ մտնող փոքր գավառներից մեկն էր) հիշատակված է 10 վանք (տե՛ս ցուցակը)։ Ալիշանի կարծիքով նրանցից շատերը մենակյացների ապրելու համարակ վայրեր էին. «Սոցա՝ որպէս տեսանիդ՝ նշանաւոր է յոլովից վանք բառի բարդութիւն, զոր աստանօր ըստ համարակ նշանակութեան իմանալ անկ համարիմ, այսինքն միանձնականաց բնակարանս...»[1]։

10—11-րդ դարերում ոչ միայն Սյունիքում, այլև Հայաստանի մյուս մասերում վանքերի թիվը չափազանց մեծ էր։ Սամվել Անեցու վկայության համաձայն 11-րդ դարի առաջին քառորդում Վասպուրականում կար 115 վանք, իսկ ըստ ոմանց, ինչպես նշում է Անեցին, դրանց թիվը 900 էր։ «Բայց զվանորայսն ոչ ետ Սենեքերիմ ի Վասիլ. զի կայցեն ազատս, և աղօթս արասցեն Սենեքերիմայ և որդւոյն նորա. և էին ՃԺԵ (115) վանք և ոմանք ԹՃ. (900) վանք ասեն»[2]։

Ինչքան էլ մեծացված լինեն այդ թվերը, այնուամենայնիվ, նրանք ցույց են տալիս, որ վանքերը, եկեղեցիները և ուխտատեղիները Վասպուրականում շատ էին։ Նույնպիսի դրություն էր նաև Կարինում, Վանանդում, Շիրակում, Այրարատում, Տաշիրում (Լոռի) և Հայաստանի մյուս մասերում։

Ինչո՞վ բացատրել Հայաստանում 10—11-րդ դարերում այդքան մեծ ծավալ ստացած վանքաշինությունը։ Դրա պատասխանը շատ դյուրին կգտնվի, եթե մի փոքր հայացք ձգենք 10—11-րդ դարերում Հայաստանի ներքին տնտեսական դրության վրա։

10—11-րդ դարերը Հայաստանի համար, ինչպես ակադ. Հ. Մանանդյանը ցույց է տվել իր «Հայաստանի քաղաքները 10—11-րդ դարերում» փոքրածավալ, բայց արժեքավոր աշ-

---

[1] Ղ. Ալիշան, *Սիսական*, էջ 299։

[2] Սամուէլի Քահանայի Անեցւոյ *Հավաքումն ի գրոց պատմագրաց Յաղագս գիւտի ժամանակաց անցելոյ մինչեւ ի ներկայս ծայրաքաղ արարեալ*, Վաղարշապատ, 1893, էջ 104։

*խատության մեջ, հանդիսանում է տնտեսական վերելքի և ֆեոդալիզմի հետագա խորացման շրջան։ Առևտրի, արհեստավորության, անասնապահության, երկրագործության, հանքամշակության զարգացման և գյուղացիներին ճորտական կախման մեջ դնելու միջոցով 10—11-րդ դարերում հսկայական հարստություն է կուտակվում ազնվական դասի, այդ թվում և՝ հոգևորականության ձեռքում։*

*Հավաքված այդ ահռելի հարստության գերակշիռ մասը «Հոգու փրկության» քողի տակ ծախսվում էր վանքերի՝ ֆեոդալական հասարակարգի գաղափարախոսության տարածման օջախների կառուցման համար։*

Գյուղերը։ *Թագավորության տերիտորիայում եղած գյուղերի թվի վերաբերյալ կան մի շարք իրար հակասող հիշատակություններ. այդ թիվը տատանվում է 1000—1400 միջև։ Վենետիկում գտնվող Օրբելյանի պատմության ձեռագրերից մեկում, ինչպես վկայում է Ալիշանը, գյուղերի թիվը նշված է 2000*[1]*։ Սակայն այդ հավանաբար աղավաղման արդյունք լինելով, չի համապատասխանում Երևանում եղած ձեռագրերից ոչ մեկին։*

*Օրբելյանի պատմության թե՛ Փարիզի (էջ 78) և թե՛ Թիֆլիսի (էջ 334) հրատարակություններում հիշվում է 1008 գյուղ։*

*Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվան մատենադարանում եղած 9 ձեռագրերից 7-ի մեջ (այդ թվում նաև ամենահին ձեռագրում. 15-րդ դար № 6271) նշված է 1400*[2] *գյուղ*[3]*, մեկ ձեռագրում՝ 1000*[4]*, իսկ վերջինում՝ «ՌԸՆ», որը գրիչի տողատակ տված ծանոթության համաձայն պետք է հասկանալ կամ «ՌԸ» (1008), կամ թե «Ռ» (1000)*[5]*։*

---

[1] *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսական, էջ 274։*

[2] *Օրբելյանի պատմության Մոսկվայի հրատարակության մեջ ևս («Պատմութիւն նահանգին Սիսական», 1861, էջ 245) գյուղերի թիվը 1400 է։*

[3] *Մեսրոպ Մաշտոցի անվան մատենադարան, ձեռագիր № 1488, էջ 142 բ, 6271, էջ 255 ա, 7503, էջ 150 ա, 2698, էջ 117 բ, 2924, էջ 100 բ, 2869, 150 ա, 6546, էջ 127 ա։*

[4] *Նույն տեղը, ձեռագիր № 5501, էջ 276։*

[5] *Նույն տեղը, ձեռագիր № 2868, էջ 175։*

Վարդան վարդապետի պատմության երկու հրատարակություններում էլ գյուղերի քանակը 1400 է[1]։

Սյունյաց թագավորության սահմանների մասին խոսելիս տեսանք, որ նրա մեջ մտնում էին նախկին Սյունյաց աշխարհի վեց համեմատաբար փոքր գավառները։ Հենց միայն այդ տերիտորիային էլ վերաբերում է 1000, 1008, 1400 կամ 2000 գյուղերը։ Չնայած նշված թվերի այդպիսի մեծ տարբերությանը, որը թվում է, թե առաջին երաշխիքը պետք է հանդիսանար կասկածելու նրանց իսկության վրա, այնուամենայնիվ մինչ այժմ եղած բոլոր ուսումնասիրողները, որոնք այս կամ այն առիթով, թեկուզ կողմնակիորեն, անդրադարձել են այդ հարցին, ընդունում կամ հավանական են համարում թագավորության տերիտորիայում 1000—1400 գյուղերի գոյությունը[2]։ Միայն մեկը՝ Շահնազարյանը, այդ թիվը ընդունում է մի փոքր վերապահությամբ[3]։

Սրանք են հիմնականում Սյունյաց թագավորության տերիտորիայում եղած գյուղերի քանակի վերաբերյալ մեզ հասած վկայությունները ու գոյություն ունեցող կարծիքները։

Մինչև օրս ոչ միայն Սյունիքի, այլև ամբողջ Հայաստանի վերաբերյալ չկա այնպիսի ուսումնասիրություն, որտեղ նպատակ լինի դրված պարզելու միջնադարյան Հայաստանի զանազան տիպի բնակավայրերի (բացի մի քանի խոշոր քաղաքների՝ Անի, Դվին, Տիգրանակերտ և այլն) մեծությունն ու բնույթը։

Սյունիքի բնակավայրերի, այդ թվում հատկապես գյուղերի վերաբերյալ մեր ձեռքի տակ եղած տվյալներն առայժմ քիչ են և ոչ այնքան զորավոր՝ այդ հարցը գիտականորեն լուծելու համար։

---

[1] Վարդան Բարձրբերդցի, Պատմութիւն տիեզերական, Մոսկվա, 1861, էջ 185, «Հաւաքումն պատմութեան...», Վենետիկ, 1862, էջ 141։

[2] Ջալալյանց Սարգիս, Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, մասն Բ, Տփխիս, 1858, էջ 301։ Ալիշան, Սիսական, էջ 280։ Մանանդյան. Հայաստանի պատմությունը թուրք-թաթարական արշավանքների շրջանում, էջ 50, և այլն։

[3] Տե՛ս Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 299, ծանոթություն № 7։

Բայց անհրաժեշտ ենք համարում իբրև հավելված սույն աշխատությանը կցել Սյունյաց աշխարհի բնակավայրերի ցուցակը, ավելորդ չհամարելով անել նաև հետևյալ ընդհանուր դիտողությունը։

Գյուղերի մեծության վերաբերյալ պատմիչների մոտ որևէ հիշատակություն չկա։ Դժվար չէ սակայն ենթադրել, որ նրանք պետք է որ բավականին փոքր լինեին, ըստ որում ամենամեծը հավանաբար բաղկացած էր ոչ ավելի, քան 2—3 տասնյակ ծխից։ Զարմանալի ոչինչ չի մնա, եթե նկատի ունենանք Շահխաթունյանի այն վկայությունը, որ անգամ 19-րդ դարում Գեղարքունիքում և Սոտքում անասնապահությամբ զբաղվող բազմաթիվ գյուղեր ունեին ոչ ավելի, քան 2—48 ծուխ[1] (նրանցից միայն մեկն է ունեցել 48 ծուխ)։

### 3. Ճանապարհները

Հայկական լեռնաշխարհն իր դիրքի շնորհիվ Արևելքն Արևմուտքի հետ կապող օղակ էր։ Հնագույն ժամանակներից սկսած Հայաստանով էին անցնում տարանցիկ այն ճանապարհները, որոնք գալիս էին Չինաստանից ու Հնդկաստանից և անցնում դեպի Սև ու Միջերկրական ծովերի ափերը։

Հայաստանում այդ ճանապարհներն անցնում էին գլխավորապես Արևմտյան Տիգրիսի, Արածանիի և Արաքսի հովիտներով։ Սակայն պատմական Հայաստանի ոչ բոլոր մասերն ունեին հարմար ճանապարհներ։ Այդպիսի մասերի թվին է պատկանում և Սյունիքը։

Հայաստանով անցնող ճանապարհների մասին ամբողջական տեղեկություններ է հաղորդված «Պևտինգերյան» քարտեզում։ Այստեղ տրված հինգ հիմնական ճանապարհներից (որոնց ելման կենտրոնը Արտաշատ մայրաքաղաքն էր) և ոչ մեկը չէր անցնում Սյունիքով[2]։ Անհրաժեշտ է նկատել, որ

[1] Տե՛ս Շահխաթունեանց Յովհ. եպիսկոպոս, Ստորագրութիւն կաթողիկէ էջմիածնի և հինգ գաւառացն Արարատայ, հ. երկրորդ, էջմիածին, 1842, էջ 255—257։

[2] Տե՛ս Հ. Մանանդյան, Հայաստանի գլխավոր ճանապարհները ըստ Պևտինգերյան քարտեզի, Երևան, 1936, էջ 11։

*«Պևտինգերյան» քարտեզում տրված ճանապարհները գլխավորապես Արտաշատից ձգվում էին դեպի արևմուտք, նրանցից միայն մեկն էր, որ գնում էր դեպի արևելք՝ դեպի Համադան։*

*Մեր նպատակների տեսակետից հետաքրքրական են «Մղոնաչափք»-ը[1], որտեղ հիշատակված են Հայաստանով անցնող 6 հիմնական ճանապարհների ուղղությունները.*

*ա) Դվին—Կարին—Ամասիա—Կոստանդնուպոլիս*

*բ) Դվին—Խլաթ—Ուռհա—Դամասկոս—Երուսաղեմ*

*գ) Դվին—Բերդկունք—Պարտավ—Կասպից ծով*

*դ) Դվին—Նախիջևան—Գանձակ Շահաստան—Տիզբոն*

*Վերջինս Նախիջևանում բաժանվում էր երկու ճյուղի, որոնցից մեկը դեպի Գանձակ և Տիզբոն գնացողն էր, իսկ մյուսը՝ Արտեվանի (այժմ Օրդուբադ), Վարդանակերտի և Փայտակարանի վրայով տանում էր դեպի Կասպից ծովի ափերը։*

*ե) Գանձակ[2]—Նինվե—Ուռհա*

*զ) Դվին—Կողբ—Տփխիս (Թբիլիսի)[3]*

*Նշված ճանապարհներից մեզ հետաքրքրում են՝ Դվին—Բերդկունք—Պարտավ—Կասպից ծով և Դվին—Նախիջևան—Օրդուբադ—Վարդանակերտ—Փայտակարան—Կասպից ծով ուղղությունները։ Դրանցից վերջինի ընթացքը հանրահայտ է։ Այն ձգվում էր Երասխի ափով, ուստի և հարկ չկա դրա վրա կանգ առնել։*

*Ուրեմն մեզ մնում է ավելի մանրամասն ծանոթանալ Դվին—Պարտավ գլխավոր ճանապարհին, ապա նրանցից դեպի Սյունյաց թագավորության տերիտորիան ձգվող ու այնտեղ եղած մի քանի երկրորդական ճանապարհներին։*

*Դվին—Պարտավ ճանապարհի ուղղության և կայանների*

---

[1] *«Մղոնաչափ»-ը պատկանում է 7-րդ դարի գիտնական Անանիա Շիրակացուն։*

[2] *«Գանձակ Շահաստան»-ը չպետք է շփոթել Աղվանքում գտնվող Գանձակ կամ Գյանջա (այժմ Կիրովաբադ) քաղաքի հետ։ Նա գտնվում էր Ատրպատականում, Ուրմիո լճից հարավ-արևելք, մոտավորապես այժմյան Թախտի-Սուլեյմանի տեղում։*

[3] *Տեքստը տե՛ս Ա. Աբրահամյանի «Անանիա Շիրակացու մատենագրությունը», աշխ. 355 էջում։*

միջև եղած տարածությունների մասին մանրամասն հաղորդել է արաբ աշխարհագիր Իստահրին։ Հիշատակենք նրա տված Բերդա-Դաբիլ[1] ճանապարհի կայաններն ու դրանց միջև եղած տարածությունները։ Բերդայից Կալկագուա՝ 9 փարսախ, Կալկագուայից Մետրիս՝ 13 փ., Մետրիսից Դավմիս՝ 12 փ., Դավմիսից Կիլ-կու՝ 16 փ., Կիլ-կուից Սիսաջան՝ 16 փ. և Սիսաջանից Դաբիլ՝ 16 փարսախ[2]։

Ինչպես տեսնում ենք, այդ ճանապարհի կայաններից ծանոթ են միայն եզրային երկու կետերը՝ Դվինը և Պարտավը։ Մյուս կայանների անուններն ու տեղադրությունները մեզ համար անհայտ են։ Մի քանի ուսումնասիրողներ անդրադարձել են այդ հարցին։ Նրանցից ոմանք բավարարվել են միայն շատ ընդհանուր ենթադրություններ անելով։ Այսպես, Լեոն ենթադրում է, որ «Այս ճանապարհը գնում էր Արցախի և Սյունիքի վրայով»[3]։ Այս կարծիքն այնքան ընդհանուր և անորոշ է, որ հազիվ թե կարելի լինի ասել, թե նա որևէ պարզություն է մտցնում Դվին—Պարտավ ճանապարհի ուղղությունն իմանալու մեջ։

Ավելի որոշակի է պրոֆ. Ստ. Լիսիցյանի ենթադրությունը։ Ըստ նրա, ճանապարհն Արտաշատից և Դվինից դուրս գալով ձգվում էր Վեդի գետի հոսանքին հակառակ ուղղությամբ. անցնելով Գեղամա լեռների վրայով, մտնում էր Արգիճի գետի հովիտը, ապա Սևանա լճի ավազանի հարավային հարթություններով և Թարթառ գետի հովտով հասնում էր Պարտավ[4]։

Սևանա լճի ավազանից մինչև Պարտավ ընդամենը ուղղությունը, ինչպես քիչ հետո կտեսնենք, բոլոր ուսումնասիրողների մոտ էլ նույնն է։ Ուստի դրա մասին խոսելն ավելորդ ենք համարում։ Մեզ մնում է քննել Արտաշատից և Դվինից մինչև Սևանի ավազանն ընկած ճանապարհահատվածի՝

---

[1] Արաբական աղբյուրները Պարտավն անվանում են Բերդա, Դվինը՝ Դաբիլ, Նախիջևանը՝ Նաշավա և այլն։

[2] Տե՛ս *Н. А. Караулов*, Сведения арабских писателей о Кавказе, Армении и Азербайджане. Сборник мат. для опис. местн. и племён Кавказа, вып. XXIX, 1901, էջ 33-34։

[3] Լեո, *Հայոց պատմություն*, հ. 2-րդ, էջ 382։

[4] Տե՛ս Ստ. Լիսիցյան, *ՀՍՍՀ ֆիզիկական աշխարհագրություն*, էջ 28—29։

պրոֆ. Լիսիցյանի ենթադրած ուղղությունը։ Դվին—Պարտավ ճանապարհի՝ Դվինից մինչև Սևանա լճի ավազանը եղած հատվածը պրոֆ. Լիսիցյանը անց է կացնում Վեդի գետի հովտով դեպի Արգիճի գետը։ Այս ճանապարհը, որ այժմ էլ գոյություն ունի և որով Վեդու շրջանի սարվորները, ինչպես նշում է հեղինակը, բարձրանում են Արգիճի գետի վերնագավառում գտնվող արոտավայրերը[1], ձմեռը մի քանի ամիս փակվում է և անմատչելի դառնում անգամ հետիոտն մարդու համար։ Մինչդեռ Դվին—Պարտավ ճանապարհը, անշուշտ, եղել է միշտ բանուկ և ժամանակի իմաստով բարեկարգ վիճակում։ Դրա երաշխիքն է հենց այն փաստը, որ Հայաստանի ճանապարհներին վերբերող գրեթե բոլոր աղբյուրների մեջ հիշատակված է այդ գիծը։ Բացի դրանից, ինչպես ժամանակին նկատել է ակադ. Մանանդյանը[2], Սյունյաց իշխանները, Օրբելյանի վկայությամբ (էջ 264—265), դեռևս 4-րդ դարի սկզբներին Վաղարշապատի կողմերից դեպի Գեղարքունի, ապա Վայոց ձորն անցնում էին կառքով։ Իսկ դա այն ճանապարհն էր, որն Այրարատում գտնվող մայրաքաղաքները կապում էր Սևանի ավազանի հետ։ Պրոֆ. Ստ. Լիսիցյանի մատնանշած ճանապարհը, ինչքանով մենք ծանոթ ենք դրան, բոլորովին պիտանի չէ կառքի համար։

Այսպիսով, չափազանց անհավանական է Դվին—Պարտավ ճանապարհի Դվին—Սևանա լճի ավազան հատվածի ուղղությունը ենթադրել Վեդի գետի հոսանքով և Գեղամա լեռներով դեպի Արգիճի։

Ակադ. Հ. Մանանդյանը հիմք ընդունելով «Մղոնաչափք»-ի և Իստահրի տված վկայությունները, ինչպես նաև օգտվելով մի շարք հայ պատմիչներից ու ուսումնասիրողներից, մանրամասն քննության է ենթարկել Դվին—Պարտավ ճանապարհի ուղղությունը «Հայաստանի գլխավոր ճանապարհները ըստ Պևտինգերյան քարտեզի» արժեքավոր աշխատության «Դվին—Պարտավ հին ճանապարհը» հավելվածում։

---

[1] Տե՛ս Ստ. Լիսիցյան, ՀԽՍՀ ֆիզիկական աշխարհագրություն, էջ 28։

[2] Հ. Մանանդյան, Հայաստանի գլխավոր ճանապարհներն ըստ Պևտինգերյան քարտեզի, հավելված «Դվին—Պարտավ հին ճանապարհը», էջ 177։

Հեղինակն այդ աշխատության մեջ հանգում է այն եզրակացության, որ ճանապարհը Դվինից դուրս էր գալիս երկու ճյուղով։ Դրանցից մեկը գնում էր Հրազդանի ափերով (այժմյան Երևան—Սևան գծով), ապա թեքվում դեպի հարավ-արևելք մինչև Բերդկունք (որի քարվանսարայի ավերակներն այժմ էլ պահպանվել են Այրիվանքի մոտ, Կամո քաղաքից 6, 5 կմ հյուսիս՝ Սևանա լճի ափին), Բերդկունքից Սևանա լճի ափով շարունակվել է դեպի արևելք, հասել Իստահրիի հիշատակած Կիլ-կու (Կոթ, Գեղարքունի) և Ջոդով ուղղվել է դեպի Պարտավ։ Սա «Մղոնաչափք»-ում հիշատակված հին ճանապարհն է[1]։

Երկրորդ ճյուղը, որը գլխավոր ճանապարհ էր արաբական շրջանում[2] և համապատասխանում էր Իստահրիի հիշատակած Բերդա—Դաբիլ գծին, դուրս գալով Դվինից նախ հասնում էր Սիսաջան կայանը[3], ուղղվում դեպի հյուսիս, Արփա գետի հոսանքով և Սելիմի լեռնանցքով մտնում Կիլ-կու (Գեղարքունի, Կոթ), հետո Դավմիս (Հաթերք՝ Տրտու գետի ձախ ափին) և Կալկագուայի (Կաղանկատույք՝ Տրտու գետի ձախ ափին) վրայով՝ Բերդա (Պարտավ)[4]։

Դվին—Պարտավ թե՛ հին և թե՛ արաբական շրջանի ճանապարհները հանձին ակադ. Մանանդյանի հիշյալ խոր, փաստերով հարուստ աշխատության, հիմնականում ուսումնասիրված են։

Սակայն անհրաժեշտ ենք համարում մի քիչ ավելի մանրամասն ծանոթանալու Դվին—Պարտավ արաբական շըրջանի ճանապարհի կայաններից մեկին՝ Սիսաջանին (Sisajan)։

Սիսաջանը, Դվինից հաշված, այդ ուղու առաջին կայանն

---

[1] Տե՛ս Հ. Մանանդյան, Հայաստանի գլխավոր ճանապարհները ըստ Պևտինգերյան քարտեզի, հավելված, էջ 177—193։

[2] Տե՛ս նույն տեղը, էջ 196։

[3] Սիսաջանը Կարաուլովի կազմած քարտեզում նշանակված է այժմյան Բաշնորաշենի մոտ՝ Կիսաջան անունով (տե՛ս „Сборник материалов для описания местн. и племён Кавказа", 1901, вып. XXIX-ին կցված քարտեզը)։

[4] Տե՛ս Մանանդյան, Հայաստանի գլխավոր ճանապարհներն ըստ Պևտինգերյան քարտեզի, էջ 193—203։

էր։ Նրա հեռավորությունը Դվինից, Իստահրի վկայության համաձայն, 16 արաբական փարսախ էր։

Հաշվի առնելով, որ արաբական փարսախը հավասար է 5782,8 մետրի[1] և այն, որ արաբական աշխարհագիրները սովորաբար կլորացնում են թվերը, ակադ. Մանանդյանը Դվինից մինչև Սիսաջան հաշվում է 95 կիլոմետր։ Դա մոտավորապես ընկնում է այժմյան Բաշնորաշենի մոտ, այսինքն այնտեղ, որտեղ Կարաուլովը իր քարտեզում նշանակել է Կիսաչանը[2]։

Այսպիսով ակադ. Մանանդյանը համաձայնվում է Կարաուլովի հետ՝ Սիսաջանը Բաշնորաշենի մոտ տեղադրելու հարցում, անելով հետևյալ վերապահությունը. «Սակայն եթե անգամ ընդունելի չլինի Կիսաչանի նույնացումը Սիսաջան կայարանի հետ՝ կարելի է այնուամենայնիվ վստահորեն ենթադրել, որ Սիսաջանի տեղադրությունը լինելու էր Շարուրից Վայոց ձոր տանող ճանապարհագծում, հավանորեն Բաշնորաշենից Արփա գնացող գծամասում»[3]։

Ծանոթանալով Բաշնորաշենից մինչև Արենի (Արփա) գյուղն ընկած ճանապարհին, մենք եկանք այն համոզման, որ Սիսաջան կայանը հավանաբար գտնվում էր այժմյան Արենի գյուղի մոտ։ Մեր այդ ենթադրության համար կան որոշ հիմքեր։

Այժմյան Արենի գյուղի մոտ պահպանվել են հին «Արփա»-ի ավերակները, որոնք ոչ թե սովորական գյուղի, այլ ավելի շուտ բերդագյուղի տպավորություն են թողնում։ Մինչդեռ ենթադրվող Կիսաչանի տեղում, ինչպես և Բաշնորաշենից մինչև Արենի (Արփա) ընկած տարածության վրա, տեղացիների վկայությամբ, հին բնակավայրի ավերակներ չեն նկատ-

---

[1] Տե՛ս Հ. Մանանդյան, Երատոսթենեսի ստադիոնը և Պարսից ասպարեսը, Երևան, 1934, էջ 9—12։

[2] Տե՛ս Հ. Մանանդյան, Հայաստանի գլխավոր ճանապարհներն ըստ Պետինգերյան քարտեզի, հավելվածի քարտեզները։

Караулов, Свед. арабск. писат. о Кавказе..., Сборник мат. для опис. местн. и племён Кавказа, вып. XXIX, Тифлис, 1901, քարտեզը։

[3] Հ. Մանանդյան, Հայաստանի գլխավոր ճանապարհները..., «Դվին—Պարտավ հին ճանապարհը», էջ 195։

ված։ Բացի այդ, Կիսաչան անունը մեզ ծանոթ պատմիչներից և ոչ մեկի մոտ չի հիշատակված։

Արփա (Արենի) գյուղի անունը հաճախակի հիշատակվում է Ստեփանոս Օրբելյանի մոտ (էջ 343, 364, 367, 368, 429, 490, 491) «Առփա» ձևով։ Բերենք Օրբելյանի հիշատակություններից ամենակարևորները. «Այս Տէր Սարգիս, որպէս յառաջն ասացաք, բազում արդիւնս ցուցեալ ի Նորավանս, ևս առնել արար գործ. մի երևելի, զի ի գիւղն Առփայ ի վերայ գետոյն կանգնեաց կամուրջ զարմանալի տաշածոյ վիմօք՝ յոյժ բարձր և ընդարձակ և լայն, հիացուցիչ տեսողաց, բազում ծախիւք և անչափ աշխատութեամբ՝ հրամանաւ բարեպաշտին և մեծափառ իշխանին Տարսայիճին, որոյ վարձատրեսցէ Քրիստոս հազարապատիկ»[1]։

Արփա գետի վրա կամուրջ կառուցելու համար կատարված այդ մեծ ծախսերը, որ նշում է Օրբելյանը, ցույց է տալիս, որ Առփան սովորական գյուղ չէր, այլ կարևոր ճանապարհի վրա գտնվող կայան[2]։ Այլապես անիմաստ կլիներ «յոյժ բարձր և ընդարձակ և լայն» կամուրջի կառուցումը։ Ճիշտ է, նրա կառուցումը վերաբերում է ավելի ուշ ժամանակներին (13-րդ դարի երկրորդ կես), սակայն դա չի բացասում ավելի հին ժամանակներում Առփայի՝ ճանապարհային կայան լինելը։ Այդ կամուրջի ավերակները մինչև այժմ էլ նշմարվում են Արենի գյուղի մոտ։

Օրբելյանի վկայության համաձայն դեռևս հնագույն ժամանակներից Առփա գյուղում բնակություն էր հաստատված. «...որպէս Ախթամարեան զարմքն որ ի հին ժամանակաց բնակեալ էին յԱռփայ գիւղն՝ տան իւրեանց հայրենացն զԴայեկի քարոյ այգւոյն զվերին բաժինն»[3]։ Բայց ավելի նշանավոր է դառնում այդ գյուղը 13-րդ դարի երկրորդ կեսին, երբ Տարսայիճ իշխանը այնտեղ կառուցում է իր «դարպաս»-ը[4] (իշխանական ապարանքը)։ Այս հանգամանքը ևս անուղղակի

[1] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 429—430։

[2] *Այժմյան Արենի (Արփա) գյուղը, որի մոտ էր և հին Առփան, գտնըվում է Արփա գետի և նրա Եղեգիս վտակի անկյունում, Արփա գետի ափին։*

[3] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 368։

[4] *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսական*, էջ 181։

կերպով գալիս է հաստատելու, որ Առփան ճանապարհի վրա ընկած կայան պետք է լիներ։

Սիսաջան ճանապարհային կայանի անվան ինչպես և Կիլ-կուի վերաբերյալ գոյություն ունի երկու կարծիք։ Ըստ Մարկվարտի[1] Խատահրի մոտ Sisajan (Սիսական, Սյունիք) և Կիլ-կու (Gelakuni, Գեղաքունի) կայանները նախասկիզբ են եղել՝ առաջինը Գեղարքունի գավառի, իսկ երկրորդը՝ Սիսական կամ Սյունիք (այժմ Սիսիան) գավառի և հենց այդ պատճառով էլ, ինչպես Մարկվարտն է կարծում, նրանք կոչվել են Գեղարքունի[2] և Սիսական (Սիսաջան)։

Մյուս կարծիքը ակադ. Մանանդյանինն է։ Նա հիմնականում ընդունում է Մարկվարտի տեսակետը միայն մի փոքր տարբերությամբ։ Այսպես, նա գտնում է, որ Սիսաստջան կամ Սիսական ճանապարհային կայանի անունն առաջացել է համապատասխան աշխարհի՝ Սյունիքի (որի տակ հասկանում է Սյունիքի գավառներից Վայոց ձորը) անունից։

Մանանդյանն իր այդ թեզը հավանական դարձնելու համար կռվան է ծառայեցնում այն հանգամանքը, որ Խատահրիի աշխարհագրական երկի հրապարակ գալու ժամանակ (951 թ.) Սյունյաց գահագլուխ իշխանների «արքունական ապարանքները» գտնվում էին Վայոց ձորի «Եղեգիք գիւղաքաղաք»-ում[3]։ Ուստի և նրա սահմանի վրա գտնվող ճանապարհային կայանն էլ, ինչպես կարծում է Մանանդյանը, կոչվել է Սիսաջան[4]։

Բերված կարծիքներից որևէ մեկի հետ անվերապահորեն միանալ չենք կարող։ Եթե ակադ. Մանանդյանը, ինչպես մենք տեսանք, հիմնականում ճիշտ էր Սիսաջան կայանի աշխարհագրական դիրքի որոշման հարցում, ապա նրա անվան առաջացման խնդրում նախապատվությունը պետք է տալ Մարկվարտին՝ միայն այնքանով, որքանով նա Սիսաջանի առաջացումը կապում է Սյունիք կամ Սիսական գավառի անվան հետ։ Եվ իրոք, 10-րդ դարի սկզբներից սկսած մեր մատենա-

---

[1] Տե՛ս Հ. Մանանդյան, Հայաստանի գլխավոր ճանապարհները, էջ 193։

[2] Գեղարքունի կայանը համապատասխանում է Կոթ ավանին։

[3] Տե՛ս Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 199։

[4] Տե՛ս Հ. Մանանդյան, Հայաստանի գլխավոր ճանապարհները..., հավելված, էջ 193—195։

գիրների մոտ սովորաբար Սյունիք է կոչվում միայն «Աշխարհացույց»-ի մեջ նկարագրված 12 գավառից բաղկացած Սյունյաց աշխարհի հարավ-արևելյան մասը՝ հատկապես Ծղուկք գավառը, որտեղ մինչև 9-րդ դարի առաջին քառորդի վերջերը գտնվում էր Սյունյաց գահագլուխ իշխանների ոստանը։

Մեր կարծիքով, Սիսաչան (Սիսական, Սյունիք) ճանապարհային կայանի անվան ծագումը բացատրելու համար նախ պետք է ընդունել, որ նշանավոր ճանապարհների կայանները գտնվել են գերազանցապես այլ ճանապարհների հետ ունեցած հատման կետերում։ Արաբական շրջանի Դվին-Պարտավ ուղու Սյունիքում եղած երեք կայաններն էլ, իրոք, գտնվում էին ճանապարհների խաչման կետերում. Կոթում (Գեղարքունի, Կիլ-կու) նրա հետ հատվում էր Դվինից Հրազդանի ափերով և Բերդկունքով անցնող հին ճանապարհը[1], Սիսաչանում (որ մենք ենթադրաբար տեղադրում ենք այժմյան Արենի գյուղի տեղում) Ծղուկքի կողմերից եկող ճանապարհը, իսկ Զոդում՝ նրանից սկիզբ էին առնում երկու ճանապարհներ, որոնցից մեկը Գեղամա (Սևանա) լճի հյուսիսային ափերով գնում էր դեպի հյուսիս-արևմուտք, իսկ մյուսը Սոտք գավառի տերիտորիայով ձգվում էր դեպի հարավ, ապա նրա սահմանի մոտ թեքվելով արևմուտք՝ հասնում էր Վայոց ձորի Եղեգիք կամ Եղեգիս քաղաքավանը[2]։

Այստեղից էլ դժվար չէ տեսնել նաև այն, որ արաբական շրջանի Դվին—Պարտավ ուղու Սյունիքում ունեցած կայանների անունները՝ Սիսական (Սիսաչան, Ծղուկք), Գեղարքունի (Կիլ-կու) և Զոդ, առաջացել են ոչ թե նույնանուն գավառների նախասկիզբը լինելու պատճառով[3], այլ այն բանի շնորհիվ, որ տվյալ կետերում գլխավոր ճանապարհը հատող երկրորդական ճանապարհները, որոնց մասին մենք ասացինք, տանում էին դեպի համապատասխան գավառները, Գեղարքունուց դե-

---

[1] Տե՛ս Հ. Մանանդյան, *Հայաստանի գլխավոր ճանապարհները...*, հավելվածին կցված քարտեզը։

[2] Տե՛ս Ղ. Ալիշանի «Սիսական» աշխատ. կցված քարտեզը։

[3] Ի դեպ, նկատենք, որ նշված ճանապարհային կայաններից ոչ միայն Սիսաչանը, այլև մյուս երկուսը (Գեղարքունի և Զոդ) ևս չէին հանդիսանում համապատասխան գավառների նախասկիզբը (տե՛ս Ալիշանի «Սիսական» աշխատ. կցված քարտեզը)։

պի Գեղարքունի գավառի խորքը, Սոտքից՝ դեպի Սոտք գավառի տարբեր մասերը, Սիսաշանից՝ դեպի Սյունիք (Ծղուկք)։

Դվին-Պարտավ ուղու հետ միացող ճանապարհներից մեզ հետաքրքրում է Արենի (Արփա) գյուղի մոտերքից դեպի Ծղուկք գնացողը։

Ծղուկքից Վայոց ձոր, իսկ այնտեղից էլ դեպի Այրարատ գնացող ճանապարհը, ինչպես երևում է դեռևս 4-րդ դարի սկզբներին վերաբերող հիշատակություններից, գտնվում էր բավականին բարեկարգ վիճակում։ Բերենք Օրբելյանի վկայությունը. «...և կազմեցին (Սյունյաց իշխանները) կառս ի սպիտակ ջորւոց. և կողոբս արծաթիս արարեալ՝ եդին ի նմա զնշխարս սրբոյն և բարձին սաղմոսիւք և օրհնութեամբ. և տաճիկ նժուզօք՝ սրավար երիվարօք իբր օդապարիկ թևօք թռուցեալ անցին ընդ լայնածիր ասպարէզ երկայն ռահին, և հասին ի բնիկ սահմանս իւրեանց տէրութեանն ի Մազազ գաւառ. և անցեալ ընդ Գեղամ մտին ի Վայոց ձոր. զի դէմ եդեալ էր տանել ի Սիւնիս յարքունական գահոյս իւրեանց»[1]։

Ինչպես տեսնում ենք, Սյունյաց իշխանները, կառքով Այրարատից դուրս գալով, անցել են Մազազ գավառով, Գեղամա երկրով և մտել Վայոց ձորը՝ իրենց առաջ նպատակ դնելով այստեղից էլ «արքունական» գահը տանել Սյունիք։ Սա անուղղակի կերպով վկայում է, որ Այրարատից դեպի Սյունյաց ոստան Ծղուկք (որ վկայության մեջ անվանված է Սյունիք) տանող ճանապարհն անցնում էր Վայոց ձորով։

Ավելի որոշակի է նույն պատմիչի՝ 6-րդ դարին վերաբերող մի ուրիշ վկայությունը. «Եւ նորա (Մուշե կաթողիկոսը) տիրաբար խոնարհեալ գթալով ի հօտն իւր՝ ոչ ինչ վերջացաւ ի գալոյն. այլ պատրաստել հրամայեաց ըստ հայրապետական ճոխութեանն զճանապարհն՝ հեծեալ ի սպիտակ ջորւոջ ոսկէզօծ թամբօք, եպիսկոպոսօք և բազմամբոխ պաշտօնէիւք գառաջեաւ ունելով զոսկիափայլ նշանն աստուածաընկալ արեգակնակերպ նշուլիւք՝ ընթանային զճանապարհաւն սաղմոսիւք և քաղցրաձայն եղանակօք։ Եւ այն ինչ հասանէին ի սահմանս Սիւնեաց, ի գաւառն Վայոց ձորոյ՝ տեսին երաշտացեալ ի բազում աւուրց և ողորմ տեսակաւ թարշամեալ ամենայն

[1] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 264—265։

բոյսք...։ Իսկ ի մերձենալն ի գահ իշխանաց ի Սիւնիս՝ աւետաւորքն առաջի ընթանային... կէսկք հետևակք կէսկք հեծեալք ընթանային յաջմէ և յահեկէ. և մեծաձայն աղաղակաւ հնչէին, գոչէին զերգս օրհնութեան այնքան, մինչ լի լինէր փորակ գաւառին իբրև յորոտմանէ ամպոյ։ Եւ այնպէս փառաւորութեամբ տարեալ իջուցանէին ի խորանն արքունական. և նստուցանէին ի վերայ ոսկեթել և մարգարտաշար բազմականին, ի գահ իշխանացն, ի տեղին որ կոչի Կից վտակաց»[1]։

Կասկածից վեր է, որ Վայոց ձորից դեպի Ծղուկք տանող ճանապարհը պետք է անցներ մոտավորապես այժմյան խճուղու ուղղությամբ, այսինքն՝ Մարտունի—Սելիմ—Եղեգնաձոր—Որոտանի լեռնանցք—Բազարչայ գծով, որովհետև խիստ լեռնային այդ երկրում նշված գավառները միացնող այլ ճանապարհ չկա։

Նույն այդ ճանապարհը Ծղուկքում չէր ընդհատվում, այլ շարունակվում էր մինչև Բաղք գավառի Երիցավանքը (այժմ Արծվանիկ) և այստեղ էլ հավանաբար միանում Ողջագետի հովտով գնացող ճանապարհին։ Ծղուկք—Երիցավանք ճանապարհն այնքան բարեկարգ էր, որ կարելի էր անցնել կառքով։ Ահա ինչ է գրում Օրբելյանը. «Իսկ տիկինն Սահակիա ընծայէ նմա զվրանն արքունի ամենայն կահիւքն և բազմականօքն. և հեծուցանէ զնա (Երիցակ վանականին—Թ. Հ.) յոսկիապատ կառս սպիտակ ջորւոց. ընդ որում և ամենայն բազմութիւնն գրոհ տուեալ գնացին զկնի։ Եւ այն ինչ հասեալք ի դուռն Երիցու վանիցն որ է ի Բաղք գաւառի որ Քաշունիք կոչի, և այժմ Բարկուշատ, կամեցաւ սուրբն Երիցակ իջանել պարանօք ընդ պարիսպն և փախչել, և ոչ թողացուցին պահակքն»[2]։

Սյունյաց երկրի հարավ-արևելյան մասում մյուս համեմատաբար հարմար ճանապարհը գալիս էր Արցախի և Մուղանի կողմերից։ Այս ճանապարհն, անշուշտ, բանուկ է եղել շատ վաղուց, սակայն նրա մասին եղած հիշատակությունները վերաբերում են չափազանց ուշ ժամանակներին։ Առաջին հիշատակությունը պատկանում է Աբրահամ Կրետացուն։ Նա նկարագրում է 1736 թ. Մուղանում Նադիր Շահի թագադրու-

[1] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 73—74։

[2] *Նույն տեղում*, էջ 75։

*թյան հանդեսից Վաղարշապատ վերադառնալիս իր անցած ճանապարհը, որը Սյունյաց երկրի հարավ-արևելյան մասում ունի հետևյալ ուղղությունը։ Արցախից անցնելով Սյունիք. նա ամենից առաջ մտնում է Խնձորեսկ գյուղը, հետո՝ Քարահունջ, ապա «Սատանի կամուրջ»-ով, Մեծ Անապատով, Տաթև գյուղով անցնում է Տանձավեր ավերակ գյուղի մոտով (հնում կոչվում էր Տանձավայր, այժմ բնակեցված է և գտնվում է Ղափանի շրջանում) և դուրս գալիս Ողջադետի ափը։ Այս գետի հոսանքով շարունակելով իր ճամփորդությունը՝ հասնում է Ղափանի շրջանի Փուխրուտ (հնում Բեխորատ, Ձորք գավառում) գյուղը, այստեղից էլ Մեղրի և ապա՝ Օրդուբադ[1]։*

*Նշված ճանապարհի Ծղուկք գավառը Բաղքի հետ կապող հատվածի մասին որոշ ակնարկներ կան Օրբելյանի կողմից մեջ բերված վավերագրերից մեկում, որը վերաբերում է Տաթևի վանքի կալվածքների 906 թվականի սահմաններին։*

*Բերենք մեկ հետաքրքրող հատվածը. «...և Քարաձորին մեծ ընասեռովն ի սարն և ի բուն ճանապարհն որ գայ սարովն ի Հարսնավաղն, և Հարսնավազին ձորակովն զառ ի կողմն յեկեղեցին որ ի պառակոչ ճանապարհին, և սալքարովն հատեալ զմեծ ձորովն ի միասր քարն որ կայ հանդէպ ի յայն կողմն մեծ ձորոյն. և հատանելով զմեծ տափն ի յերկայն խաչն և ջրաթափովն ի մեծ խոռն և ի ճանապարհն որ գայ ի Բաղաց ձորոյ, և անտի ի նոյն լեառնն Գազբոյլ»[2]։*

*Անշուշտ Հարսնավազ սարի մոտով եկող բուն ճանապարհը, որի մասին ակնարկվում է, վերաբերում է Ծղուկքից դեպի Բաղք տանող ուղուն, այսինքն այն ճանապարհին, որով անցել է նաև Աբրահամ Կրետացին։ Դրա համար էլ առանց որևէ լրացման միանում ենք Ալիշանի կարծիքին, ըստ որի. «Հարսնեվազն (Հարսնեքար), Կէլին գայա ըստ այլզգեաց. զոր և ըստ նախագրեալ սահմանադրութեան թեմին Տաթեւոյ համարիմ լինել յելից հարաւոյ Վանացն, առ հին ճանապարհաւն՝ որ ի Բաղաց տանէր (ընդ Ծղուկ) յԱյրարատ աշխարհ»[3]։*

---

[1] *Տե՛ս* Աբրահամ կաթողիկոսի Կրետացւոյ *Պատմագրութիւն անցիցն իւրոց ու Նատր-Շահին Պարսից, Վաղարշապատ, 1870, էջ 73—77։*

[2] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 232։*

[3] Ղ. Ալիշան, *Սիսական, էջ 252։*

Արցախից Ծղուկք, այստեղից էլ դեպի Բաղք տանող ճանապարհի մասին Օրբելյանն ունի մի ուրիշ վկայություն ևս, որը վերաբերում է 7-րդ դարի կեսերին. «...ես մեղուցեալ ազախինս Քրիստոսի Շահանդուխտ՝ դուստր Վարազ-Տրդատայ (Աղվանից գահերեց իշխանի—Թ. Հ.), երթայի հարսն ի տունն Թորգոմեան. և եկեալ ի սահմանս Բաղաց, ի գլուխ քարիս ընդ որ անցանէ ճանապարհն»[1]։

Ինչպես այս, այնպես էլ նույն պատմիչից քիչ առաջ բերված մյուս վկայության մեջ Ծղուկքից դեպի Բաղք և Արցախ գնացող ճանապարհների ուղղությունների մասին որոշակի ոչինչ չի ասված, սակայն դժվար չէ նույն վկայություններից տեսնել, որ Արցախից դեպի Ծղուկք և այստեղից էլ Բաղք գնացող ճանապարհը հին ժամանակներից սկսած բանուկ է եղել։

Տաթևի վանքի կալվածքների սահմաններին վերաբերող վավերագրում, բացի «բուն ճանապարհ»-ից, հիշատակվում է նաև մի ուրիշ ճանապարհ. «...և ջրաթափովն ի մեծ խոռն և ի ճանապարհն որ գայ ի Բաղաց ձորոյ, և անտի ի նոյն լեառնըն Գազբոյլ»[2]։

Ի տարբերություն քիչ առաջ քննված «բուն ճանապարհ»-ի, սա կոչվում է Բաղաց ձորից եկող ճանապարհ։ Հավանական է, որ վերջինս համապատասխանում է այժմյան այն ճանապարհին, որն սկսվում է Ողջագետի ափից (Կապան քաղաքի և Բաղաբերդի ավերակների մոտից), ապա անցնելով Ներքին ու Վերին Գիրաթաղ գյուղերի մոտով և Կազբել (Գազբոյլ) գագաթից ոչ շատ արևելք գտնվող Արմազ լեռան արևելյան կողմով (Կամբիլի լեռնանցքով)՝ դուրս է գալիս Տաթևի ձորի նեղ հովիտը։ Հետո շարունակվելով Տաթևի ձորի ափերով դեպի հյուսիս՝ նա հասնում է Տաթև և Տանձատափ գյուղերին ու սրանից քիչ հյուսիս միանում հիմնական ճանապարհին։

Մեր այս կարծիքը հիմնավորվում է նախ նրանով, որ վավերագրի մեջ (Օրբելյան, էջ 232) Տաթևին պատկանող շրջանի սահմանների թվարկությունը սկսվում է Գազբոյլ սարից

[1] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 164։

[2] Նույն տեղը, էջ 232։

(որը հանդիսանում էր նրա արևմտյան սահմանի վրա գտնվող կետերից մեկը) և, ընթանալով ժամացույցի սլաքի ուղղությամբ, արևելքի կողմից գալիս է նորից Գաղբույլ: Ուստի «Բաղաց ձորից եկող ճանապարհը» Բարկուշատի լեռնաշղթայի վրայով անցնում էր Գաղբույլից ոչ շատ արևելք ընկած մասով, որտեղ ճանապարհի համար միակ հարմար լեռնանցքը Կամբլի (Արմաղ) լեռնանցքն է:

Երկրորդ՝ «... ի ճանապարհն որ գայ ի Բաղաց ձորոյ...» ակնարկից պետք է հասկանալ, որ այդ ճանապարհը գալիս էր ոչ թե Բաղք, այլ Ձորք գավառից (որում գտնվում էին Կապան քաղաքն ու Բաղաբերդը), որովհետև՝ ա) բուն Բաղք գավառը մատենագրական ոչ մի երկի մեջ Բաղաց ձոր չի անվանված, բ) հնագույն ժամանակներում, ինչպես ճիշտ կերպով նշում է Ալիշանը[1], Ձորքն ու Բաղքը կազմում էին մի գավառ՝ Բաղք անունով: Հետագայում, թեև այն բաժանված էր երկու մասի՝ Բաղքի և Ձորքի, այնուամենայնիվ երկու գավառներում էլ իշխում էր Սյունյաց իշխանական տան Ջագիկյանների ճյուղը: Այդ պատճառով էլ չափազանց հավանական ենք համարում, որ վավերագրում հիշատակված Բաղաց ձորը նույն Ձորք գավառն է: Իսկ Ձորքից դեպի Տաթև շատ թե քիչ հարմար է միայն այն ճանապարհը, որ սկսվում է Բաղաբերդի և Կապան քաղաքի մոտից և Գիրաթաղ գետի հոսանքով ու Կամբլի լեռնանցքով անցնում Տաթևի շրջանը:

Սյունյաց երկրի հարավ-արևելյան մասի վերջին ճանապարհը, որի մասին ուզում ենք նշել, Սյունյաց իշխանների ոստան Ծղուկը Երասխի (Արաքսի) ափին գտնվող Նախիջևանի հետ միացնող բավականին բարեկարգ ուղին է: Նրա ուղղությունը համընկնում է այժմյան Սիսիան—Շաղատ—Սիսիանի լեռնանցք—Նախիջևան խճուղու հետ:

Ծղուկք—Նախիջևան ճանապարհի մասին առաջինը հիշատակել է Սեբեոսը 7-րդ դարի առաջին կեսին. «Իբրև ետես Երակլոս, եթէ ի մեջ արկին զնա՝ դարձաւ ի վերայ զաւրուն՝ որ ի թիկանց կողմանէ հապճեպ զաւրութեամբ եհար զնա (Շահենին—Թ. Հ.) և խորտակեաց. և գնաց ընդ Ծղուկս. և թափե-

[1] Տե՛ս Ղ. Ալիշան, Սիսական, էջ 290:

ցաւ ընդ լեռնակողմն ի դաշտն Նախճուանն ի ձմերան ժամանակի»[1]։

Հերակլ կայսրը պարսկական զորքերի կողմից շրջապատման էր ենթարկվել Տրառ (այժմ Թարթառ) գետի հովտում, որտեղից դեպի Նախիջևան նրա անցած ճանապարհի ուղղության մասին Լեոն գրում է. «Այս ճանապարհը մոտավորապես նույնն է, որ այսօր էլ Գանձակից (այժմ Կիրովաբադ) մեկնելով, Շուշի ու Գորիս քաղաքների վրայով տանում է ուղիղ Նախճավան»[2]։

Լեոյի կարծիքի այն մասը, որ վերաբերում է Հերակլի զորքի Թարթառ գետի հովտից մինչև Ծղուկք անցած ճանապարհի ուղղությանը, մեզ տվյալ դեպքում չի հետաքրքրում, իսկ ինչ վերաբերում է Ծղուկքից (Սիսիան) մինչև Նախիջևան հատվածը, որն ըստ նրա համընկնում է այժմյան խճուղու հետ, ընդունում ենք անվերապահորեն։

Պետք է ենթադրել, որ Ծղուկք—Նախիջևան ճանապարհը Սյունյաց աշխարհի համար տնտեսական մեծ նշանակություն է ունեցել, սակայն մեր մատենագիրների մոտ այդ մասին, բացի Սեբեոսից վերը բերված անուղղակի վկայությունից, ոչինչ չկա ասված։

Այսպիսով, մենք խոսեցինք Սյունյաց երկրի հարավ-արևելյան մասի այն բոլոր ճանապարհների մասին (ա) Վայոց ձոր—Ծղուկք—Արցախ, բ) «Սատանի կամուրջ»—Տաթև—Տանձավայր—Երիցավանք—Ողջի գետ —Բեխորոտ—Մեղրի, գ) Տաթև—Կամբլի լեռնանցք—Վերին Գիրաթաղ—Ներքին Գիրաթաղ—Բաղաբերդ, դ) Ծղուկք—Սիսիանի լեռնանցք—Նախիջևան), որոնք այս կամ այն առիթով հիշատակվում են մատենագիրների աշխատություններում։

Սյունյաց երկրի այս մասում եղած գրեթե բոլոր ճանապարհները ձմեռը փակվում են[3]։ Նրանք համեմատած Դվին—

---

[1] Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն, Թիֆլիս, 1913, էջ 115։

[2] Լեո, Հայոց պատմություն, հ. 2-րդ, 1947 թ., էջ 252։

[3] Դրա տակ, իհարկե, չպետք է հաշվել այն բարեկարգ խճուղիները (Ղափան—Քաջարան, Ղափան—Գորիս—Շուշի—Եվլախ, Գորիս—Սիսիան), որոնք կառուցվել են մեր օրերում Ղափանի, Մեղրու, Գորիսի և Սիսիանի շրջաններում։

*Պարտավ, Դվին—Նախիջևան, Դվին—Անի և Հայաստանի մյուս նշանավոր ճանապարհների հետ, իրենց նշանակությամբ երկրորդական էին։*

## ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

## ՍՅՈՒՆՅԱՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԳԱՎԱՌՆԵՐԸ

*Նախորդ գլխում տեսանք, որ Սյունյաց թագավորության գրաված տերիտորիան բաժանված էր վեց գավառի՝ Արևիք, Կովսական, Ձորք, Բաղք, Ծղուկք և Հաբանդ։*

*Այս գլխում մեր նպատակն է տալ այդ գավառների պատմա-աշխարհագրական նկարագիրը՝ գլխավորապես կանգ առնելով պատմական այն վայրերի վրա, որոնք կապված են Սյունյաց երկրում 10—12-րդ դարերում տեղի ունեցած դեպքերի հետ։*

### 1. Արևիք

*Այս գավառի տերիտորիան գրեթե համընկնում է Մեղրագետի ավազանին, նրա մի փոքր մասը միայն տարածվում է դեպի արևելք՝ Կովսականի կողմերը, իր մեջ ընդգրկելով մի քանի փոքրիկ ձորահովիտներ։*

*Արևիքը սահմանափակված էր հյուսիսից Մեղրու (Ալիշանի մոտ, Կապանի կամ Ձորքի) լեռներով, հարավից՝ Երասխ գետով, արևմուտքից՝ Սյունյաց, իսկ արևելքից՝ Խաչպըլու (հին անունը հայտնի չէ) լեռներով*[1]*։*

*Արևիքում տիրող իշխանական ոչ մի տան անուն հայտնի չէ։ Հավանական ենք համարում Ալիշանի այն կարծիքը, թե Արևիքը նախկինում կազմել է Գողթնի մի մասը, իսկ հետա-*

[1] *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսական, էջ 298։*

*գայում անջատվել է Գողթնից և միացել Սյունյաց աշխարհին՝ կազմելով վերջինիս գավառներից մեկը*[1]*։*

*Օրբելյանը եկեղեցուն տրվող հարկի ցուցակում Արևիք գավառի տակ հիշատակում է ընդամենը 24 գյուղ*[2]*, որոնց մի զգալի մասն այժմ էլ գոյություն ունի։ Նա վկայում է, որ իր ժամանակներում Արևիքը բաժանված էր երկու մասի՝ «Իննեբորդ՝ Արևիք գաւառ, որ այժմ կոչի Դաշտոն և Մեղրի»*[3]*։*

*Այդ բաժանումը, որ գոյություն ուներ Ստեփաննոս Օրբելյանի օրոք, հավանաբար կատարվել էր լոկ աշխարհագրական պայմաններից ելնելով, որովհետև վարչական բնույթի գավառաբաժանման և եկեղեցական վիճակաբաժանման մասին եղած աղբյուրներում Մեղրին ու Դաշտոնը չեն հիշատակվում որպես առանձին շրջաններ։ Եվ իսկապես, Դաշտոնը*[4] *(այժմ Տաշտուն) իր շրջակայքով հանդերձ ֆիզիկա-աշխարհագրական պայմաններով խիստ կերպով տարբերվում է Մեղրու շրջակայքից։ Առաջինը գտնվում է Մեղրագետի ակունքների մոտ, որտեղ երկիրը լեռնոտ է, և ծովի մակերևույթից ունեցած մեծ բարձրության շնորհիվ կլիմայական խիստ պայմաններ ունի, մինչդեռ Երասխի ափին գտնվող Մեղրու և նրա շրջակայքի կլիման չոր, մերձարևադարձային է։*

*Արևիքը Սյունյաց թագավորության ամենահարավային գավառն է։ 1126 թ. Արևիքը ավերման է ենթարկվել ամիր Հարոնի կողմից, որը 1156 թ. էլ գրավել է Մեղրին*[5]*։*

*Արևիքի առավել աչքի ընկնող վայրերից կանգ առնենք մի քանիսի վրա.*

Մեղրի: *Այժմ էլ գոյություն ունի։ Գտնվում է Արաքսից 3—3,5* կմ *հյուսիս, նույնանուն գետի վրա։ Օրբելյանի մոտ անվանված է մեծ ավան՝ «էր աւագ երէց մի ի մեծ աւանին Մեղրոյ Գրիգոր անուն»*[6]*։*

---

[1] *Տե՛ս* Գ. Ալիշան, *Սիսական, էջ 298։*

[2] *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 521։*

[3] *Նույն տեղում, էջ 12։*

[4] Ստ. Շահումյանի *մոտ («Դաւիթ բէգ», էջ 27) Դաշտոնը հիշատակվում է որպես ավան՝ «...գային մինչև ցԴաշտուն աւանն հասանէին»։*

[5] *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 335։*

[6] *Նույն տեղում, էջ 341։*

*Մեղրին համարվում էր թագավորության տերիտորիա-յում եղած ամրացված բազմաթիվ վայրերից մեկը։ Նրա բեր-դի մնացորդները պահպանված են մինչև այժմ՝ հյուսիսային կողմի բարձրության վրա։*

*Մեղրիի մոտ, նրանից դեպի արևելք պահպանվել են Ս. Հովհաննես կոչվող վանքի ավերակները, որը Օրբելյանի մոտ հիշատակվում է միայն երկու անգամ*[1]*։ Ավելի ուշ ժամա-նակներում Մեղրին որպես մեծ ավան բաժանվել է երեք թա-ղի՝ Մեծ, Փոքր և Միջին*[2]*։*

**Կարճևան կամ Կարճավան ավան:** *Գտնվում է Մեղրուց 7—8* կմ *արևմուտք՝ Կարճևան գետի հովտում։ Կարճևան ա-վանի մասին առաջին հիշատակությունը վերաբերում է 10-րդ դարի սկզբներին. «Ընծայէ թագաւորն (Սմբատ Ա Բագրատու-նին—Թ. Հ.) ի սուրբ եկեղեցին զմեծ աւանն Կարճաւան յԱրե-վիք գաւառի, ի Մեղրաձորի ընդ գնոյ ստացեալ...»*[3]*։*

*Բերված վկայության համաձայն Սմբատ Բագրատունի թագավորը, Տաթևի վանքի կառուցումը (906 թ.) ավարտելուց հետո, Կարճևան ավանը գնելով տվել է նորակառույց վանքին։*

**Կաքավաբերդ կամ Կքեբերդ:** *Սյունյաց թագավորության կարևոր բերդերից մեկն էր։ Տաթևին տրվող պտղի (18-րդ դա-րին վերաբերող) ցուցակում («Քէօթուկ») Արևիքի (այժմյան Մեղրու շրջանի) արևմտյան մեծ մասը անվանված է «Կաքա-ւաբերդու գաւառ», որի տակ թվարկված է (չհաշված Մեղրու Մեծ, Փոքր և Միջին թաղերը) 22 գյուղ՝ Լիչք, Տաշտուն, Վահ-րավայ, Ագարակ, Կարճևան, Կալեր, Վանք և այլն*[4]*։*

*Կաքավաբերդի դիրքն անծանոթ է։ 1947 թվականի ամ-ռանը Մեղրու շրջանում Կաքավաբերդի աշխարհագրական դիր-քը որոշելու համար մենք կատարել ենք որոնումներ։ Ամբողջ շրջանում, ինչքանով կարողացանք իմանալ, մինչև հիմա պահպանված բերդերի ավերակներից ամենանշանավորը*

---

[1] *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *էջ 499, 521։*

[2] *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսական, էջ 303։*

[3] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, (էջ 228։*

[4] *Տե՛ս «Ժամանակագրութիւն Ստեփաննոս Օրբելյանի», հավելված, էջ 41։*

գտնվում է Կալեր—Վանքի շրջանում։ Պետք է ենթադրել, որ հենց ավերակների տեղում էլ հնում գտնվելիս է եղել Կաքավաբերդը։

## 2. Կովսական

Տարբեր ձեռագրերում անվանված է նաև Կուսական, Կոսական։ Օրբելյանի ժամանակ (13-րդ դար) կոչվում էր Գրհամ՝ «Ութերորդ՝ Կովսական գաւառ, որ այժմ Գրհամ կոչեն»[1]։ Գրհամ անունը առաջացել է նույնանուն բերդից։

Եկեղեցուն տրվող հարկի հին ցուցակում Կովսականի տակ թվարկված 53 գյուղից[2] այժմ հայտնի է միայն 8—10-ը։

Կովսականը Սյունիքի համեմատաբար անծանոթ գավառներից է։ Բանասիրական և աշխարհագրական մանրակրկիտ ուսումնասիրության շնորհիվ Ալիշանին հաջողվել է մոտավորապես պարզել Կովսականի ընդգրկած տերիտորիան[3]։ Ըստ նրա Կովսականը հիմնականում տարածվում էր Բասուտ (այժմ Ծավ) գետի և Ողջագետի աջակողմյան մի շարք վտակների (Բեխ, Վաչագան, Գեղանուշ և այլն) ավազաններում։ Նրա սահմաններն արևմտյան կողմում անցնում էին Բասուտի արևմտյան ջրբաժանով, հարավ-արևելքում՝ Երասխով, հյուսիս-արևմուտքում՝ Արևիքի (Մեղրու) լեռնաշղթայից սկիզբ առնող և դեպի հյուսիս տարածվող Խուստուփ լեռնաճյուղով։ Ընդ որում անհրաժեշտ է նկատել, որ Խուստուփ գագաթից մի քանի կիլոմետր արևմուտք գտնվող Բեխ գյուղը (որն այժմ էլ գոյություն ունի և Ղափան քաղաքի մի ավանն է) ևս մտնում էր Կովսականի մեջ՝ «Փոխանակեալ ընդ Բեխոյ շինոյն որ ի Կովսական գաւառի էր» (Օրբելյան, էջ 217)։

Ավելի անորոշ է գավառի արևելյան սահմանը։ «Սիսական»-ին կցված քարտեզում Ալիշանը սահմանը անց է կացրել Բասուտ և Ողջի (ստորին հոսանքի շրջանում հաճախ կոչվում է Չավնդուր) գետերի ջրբաժան լեռների կատարներով։ Մեզ թվում է, որ Կովսականի արևելյան սահմանը, որ տրված

[1] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 13։

[2] Տե՛ս նույն տեղը, էջ 519—520։

[3] Տե՛ս Ղ. Ալիշան, Սիսական, էջ 286։

*է Ալիշանի քարտեզում, չի կարելի հաշվել վերջնական։ Հավանաբար նրա սահմանն այս մասում անցել է ոչ թե Ողջագետի աջ կողմով, ինչպես Ալիշանի մոտ է, այլ հենց գետի ընթացքով։ Դեռ ավելին, նրա սահմանն այժմյան Շաբիփլու և Փրչեվան երկաթուղային կայարանների մոտ շեղվել է Ողջագետի հոսանքի ուղղությունից և անցել նրա ձախ կողմը՝ ընդգրկելով մի փոքր շրջան։*

*Որոնք են այն պայմանները, որ թույլ են տալիս մեզ Կովսականի արևելյան սահմանն անցկացնել նշված գծով։*

*Ինչպես վերն ասացինք, Կովսականը Օրբելյանի օրոք կոչվում էր Գրհամ, որի անվան առաջացումը անկասկած կապված է Սյունյաց թագավորության բերդերից մեկի՝ Գրհամի անվան հետ։ Բերենք Գրհամ բերդի մասին Վարդան վարդապետի և Ստ. Օրբելյանի վկայությունները. ա) «Ի սոյն ժամանակի առան և մնացեալ ղղեակք Կապանին յայլազգիս՝ Գրհամ և Գեղի և Կաքաւաբերդ (Կաքավաբերդ—Թ. Հ.) վասն սատակեալ մեզաց մերոց»[1]։ բ) «...բայց մնացին Բաղաբերդ և Գեղի, Կաքաւաբերդ, Շլորուտն, Կարճևան, Մեղրի, Գրհամ առ Գրիգորոյ թագաւորի և Սմբատայ՝ թոռանց Աշոտոյ որք էին անպատակ...»[2]։ գ) «Եւ այլ ևս ամուրք զովելիք անվախ և անսասան ի հնարից մարդկան՝ Հայրաբերդ, Գրհամ, Մայրի, Շլորուտն...»[3]։*

*Բերված վկայություններից պարզ երևում է, որ Գրհամը թագավորության մեջ մտնող իր դիրքով և ամրությամբ հռչակված բերդերից էր։ Սակայն նույն այդ վկայությունները (որոնցից բացի Գրհամի մասին ավելի որոշակի տեղեկություններ չկան մեր մատենագիրների մոտ) աշխարհագրական դիրքի մասին ոչինչ չեն ասում։*

*Այժմյան տեղանունների մեջ կա մի լեռան անուն, որը շատ է հիշեցնում Գրհամ բերդի անունը։ Տեղացիների արտասանությամբ այն կոչվում է «Գրվա» կամ «Գրվին լեռ»։ «Գրվա» գագաթը գտնվում է այժմյան Ղափան-Մինջևան երկաթգծի Շայփլու կամ Շարիփլու կայարանի դիմաց, Ողջագետի*

[1] Վարդան Բարձրբերդցի, *Պատմութիւն տիեզերական*, էջ 168։

[2] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 335։

[3] *Նույն տեղում, էջ 13։*

(Զավնդուր) ձախ կողմում, գետից ոչ հեռու։ Լեռնագագաթի դեպի արևելք նայող լանջերին փռված են մի քանի գյուղերի ավերակներ, որոնք դժբախտաբար չունեն հատուկ անուն։ Գագաթին շատ մոտ գտնվում են հին բերդի ավերակները։ Այդ վայրերին ծանոթ անձնավորությունը անկասկած չի առարկի, եթե ասենք, որ Քաշունիքի (կամ Բարկուշատ, այժմ՝ Բերդուշետ) կողմերից դեպի Ողջագետի միջին հոսանքի շրջանը, չհաշված Ողջագետի հովիտը, միակ հարմար ճանապարհն անցնում է այդ բերդի ավերակների մոտով։ Թվում է, թե հենց նկարագրված ավերակների տեղում էլ գտնվում էր Գրհամ բերդը։

Հնարավոր է, որ Կովսականի և Քաշունիքի միջև եղած սահմանը տարբեր ժամանակներում անցած լինի տարբեր բնագծով, որովհետև նրանք առանձին գավառներ լինելով հանդերձ, 9-րդ դարում միասին կազմում էին Սահակ իշխանի որդի Հրահատի սեփականությունը։ Այդ մասին Օրբելյանը հետևյալն է պատմում. «Ապա տեսեալ և զայս մեծ իշխանին Հրահատայ՝ Սահակայ որդւոյ, և Գրիգորի՝ Արումանայ եղբօր, Հայկազնի՝ ի նոյն Սիսական տոհմէ, որ ունէր ի բաժնի ժառանգութեան զԿովսական գաւառ և զՔաշունիք...»[1]։

Չի բացառված, որ Կովսականն ու Քաշունիքը հետագայում իրարից բաժանվելիս Գրհամ ամրոցն իր շրջակայքով Քաշունիքից անցած լինի Կովսականի սահմանների մեջ։

Վերջապես, անհավանական է թվում 53 գյուղերի գոյությունը[2] այնպիսի փոքր տերիտորիայում, որպիսին մենք տեսնում ենք Ալիշանի քարտեզում։

Իհարկե, Կովսականի արևելյան սահմանի վերաբերյալ մեր ասածները վերջնական չեն։ Նրա տերիտորիայի այս մասի (Ողջագետի ստորին հոսանքի շրջան) հին տեղանուններից ոչ մեկը չի պահպանված։ Այդ հանգամանքն էլ արգելակում է Կովսականի արևելյան սահմանը ճշտելուն։

18-րդ դարին վերաբերող Ստ. Շահումյանի մի վկայությունից կարելի է եզրակացնել, որ Արևիքի (այժմյան Մեղրու շրջան) Կալեր և Մանլև գյուղերի շրջակայքը այդ ժամանակնե-

[1] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 208։

[2] Տե՛ս նույն տեղը, էջ 519։

րում մտնում էր Գրհամ գավառի մեջ. «Յայնմ վայրի հրեշտակս արձակեցին մեզրեցիքն ի գաւառն Գուրհամայ ի Կալեր, և առեն ահա զօրք Թուրքացն հասին՝ կալան զփոքրիկ թաղն մեր»[1]։

Կովսականի մեջ գտնվող պատմա-աշխարհագրական վայրերից 10—12-րդ դարերում նշանավոր էր միայն Գրհամը, մնացած վայրերի՝ գյուղերի, բերդերի և վանքերի վերաբերյալ կան շատ աղոտ հիշատակություններ, որոնք չեն կապված մեզ հետաքրքրող խնդիրների հետ։ Այդ պատճառով էլ բավարարվում ենք նրանցից մի քանիսի անունները քարտեզի վրա գրանցելով։

## 3. Ձորք

Փոքրիկ Ձորք գավառը տարածվում էր Ողջագետի և նրա ձախակողմյան վտակ Գեղվագետի ու դրանց բազմաթիվ օժանդակների ավազաններում։ Այս գավառի անունն էլ, հավանաբար այդպես է կոչվել այն բազմաթիվ ձորերի առկայության պատճառով, որոնք կտրտելով Մեղրու և Բարկուշատ լեռնաշղթաների լանջերը հյուսիսից ու հարավից թափվում են Ողջագետի մեջ։

Ձորք գավառը սահմանափակված էր հյուսիսից՝ Ծղուկքով, որի հետ բնական սահմանը կազմում էին Բարկուշատ լեռնաշղթայի բարձրադիր կատարները, արևելքից՝ Բաղք և Կովսական գավառներով։ Առաջինի հետ նրա սահմանը կազմում էր Բարկուշատից սկսվող այն լեռնաճյուղը (հատուկ անուն չունի), որը Ողջագետի ձախ ափին վերջանում է մի քանի հարյուր մետր բարձրության հասնող ուղղաձիգ ժայռով և որին տեղացիներն անվանում են «Սուրուն կապ»[2]։ «Կապ»-ից անմիջապես արևելք (1—1,5 կմ) գտնվող Աչաղու (Աչըղլու) գյուղը, որն այժմ էլ գոյություն ունի, մտնում էր Բաղք գավառի մեջ (Օրբելյան, էջ 518), իսկ «Կապ»-ից արևմուտք, գրեթե նույնքան տարածության վրա, Ձորք գավառի ամենանշանավոր բերդն էր՝ Բաղաբերդը։

---

[1] Ստ. Շահումյան, Դավիթ բեկ, էջ 30։

[2] Այս ժայռը ճեղքելով այժմ անց է կացված Ղափան—Քաջարան բարեկարգ խճուղին։

*Կովսականի հետ նրա սահմանը կազմում էր այն լեռնաճյուղը, որի արևելյան կողմում գտնվում է Բեխ գյուղը. Նրանից արևմուտք, մոտ 6 կիլոմետրի վրա, Ձորքի մեջ մտնող Վահանա վանքն էր։*

*Հարավից Ձորքին հարևան էր Արևիք գավառը՝ բնագիծ ունենալով Արևիքի կամ Կապանի (այժմ Մեղրու) լեռները։ Արևմուտքում Գողթն գավառից սահմանագծվում էր Սյունյաց լեռնաշղթայով*[1]*։*

*Ձորք գավառը Սյունյաց աշխարհի ամենալեռնոտ շրջանն է. նրա մի զգալի մասն այժմ էլ ծածկված է խիտ և տեղ-տեղ նույնիսկ կուսական անտառներով։ Հավանաբար հնում ամբողջ գավառը ծածկված էր անտառներով՝ ավելի անմատչելի դարձնելով այդ փոքրիկ երկիրը։*

*Թագավորության շրջանում Ձորքը նրա կենտրոնական շրջանն էր։ Օրբելյանի օրոք մայրաքաղաքի անվամբ նա կոչվում էր Կապան գավառ. «Տասներորդ՝ Ձորք գաւառ, որ ունի դանմատոյց ամուրն Բաղաբերդ, և այժմ կոչի Կապան»*[2]*։*

*Տաթևի եպիսկոպոսական աթոռին տվող հարկի հին ցուցակում Ձորքի տակ թվարկված է 16 գյուղ (Օրբելյան, էջ 521)։ Եկեղեցական հարկի չափին նայելիս անմիջապես նկատվում է, որ Ձորքը խիստ լեռնային լինելով նրա բնակավայրերը, համեմատած հարթավայրային գավառների հետ, փոքր են եղել։*

*Ձորքի բնակավայրերի անունների մեծ մասը չի պահպանվել, իսկ պահպանվածներն էլ մեծ մասամբ կրել են զգալի փոփոխություններ։ Բնակավայրերից մինչև այժմ որոշ փոփոխություններով իրենց անունները պահպանել են՝ Գեղին (այժմ նույնպես Գեղի), Աչարաչ, հավանաբար՝ Աչաբաչ, (այժմ ևս Աչաբաչ), Կահուրդ կամ Գահուրան, վերջինը Ալիշանի կարծիքով համապատասխանում է այժմյան Քյուրուտին*[3]*, որը գտնվում է Գեղիից 15* կմ *հյուսիս։*

*Բացի հիշվածներից, կա ևս երեք բնակավայր, որոնց անունները հիշեցնում են հինը, սակայն Ալիշանի կողմից*

---

[1] *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսական, էջ 290։*

[2] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 12։*

[3] *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսական, էջ 292։*

*նկատի չեն առնված։ Դրանք են՝ Ոչեթին (Օրբելյան, էջ 521). սա ամենայն հավանականությամբ համապատասխանում է այժմյան Գեղվա ենթաշրջանի Հաչաթի գյուղին, որը գտնվում է Ողջի և Գեղի գետերի խառնարանից ոչ հեռու։ Մյուսը Կիցք կամ Կից բնակավայրն է (Օրբելյան, էջ 521)։ Սա հիշատակված է նաև 18-րդ դարին վերաբերող Տաթևի պաղի ցուցակում (Քէօթուկ)՝ Գեղվաձորու գավառի տակ (տե՛ս «Օրբելյանի ժամանակագրությունը» հավելված, էջ 41)։ Այդ գյուղը անկասկած համապատասխանում է այժմյան Գեղվա ենթաշրջանի Քյուրութ գյուղից ոչ հեռու գտնվող Քիրս կամ Քիս գյուղին, որովհետև թուրքերենում «Կ» փոխվում է «Գ»-ի կամ «Ք»-ի, իսկ «ց»-ն «ս»-ի, ուստի «Կից» հին գյուղի անունը դարձել է «Քիս»։ Դրա համար փաստ է ծառայում նաև այն հանգամանքը, որ այդ գյուղում նշմարվում են հին եկեղեցու ավերակները։ Երրորդը Բեխորոտ բնակավայրն է, որը համապատասխանում է այժմյան Փուխրուտ գյուղին։*

*Այժմ մի քիչ ավելի մոտիկից ծանոթանանք Ձորք գավառում եղած նշանավոր պատմա-աշխարհագրական վայրերին։*

Գեղի: *Եկեղեցական հարկի հին ցուցակում անվանված է «Գեղոյ վանք» (Օրբելյան, էջ 521)։ Հարկացուցակի մեջ Ձորք գավառի 16 բնակավայրերից ամենամեծ հարկը տալիս էր «Գեղոյ վանք»-ը (20)։ Այստեղից կարելի է եզրակացնել, որ Ձորքի բնակավայրերից ամենամեծը (չհաշված Կապան մայրաքաղաքը, որը հարկացուցակում չի հիշատակված) Գեղին էր։*

*Գեղին գտնվում է նույնանուն գետի միջին հոսանքի շրջանում՝ նրա աջ ափին։ Թագավորության օրոք հավանաբար հանդիսացել է բերդ կամ ամրոց, որովհետև Վարդան վարդապետը այն թվարկում է Կաքավաբերդ, Շլորուտ և Թագավորության տերիտորիայում գտնվող մյուս բերդերի շարքում՝ բոլորը համարելով Կապանի ղղյակներ։*

*Րաֆֆու մոտ, ինչպես նկատել է Ալիշանը («Սիսական», էջ 292), Գեղին շփոթված է 18-րդ դարի ազատագրական պատերազմների ժամանակներում Ասլամազ-Ղուլի-խանի ձեռքին գտնվող Ջեվու բերդի հետ. «Ջեվու կոչվում է և Ջեյվա. այդ բերդը պետք չէ շփոթել այն Ջեյվա ամրոցի հետ, որ գտնվում*

*է Ղարաբաղի Գյուլիստան կոչված մահալում, Ղարաչինար կամ Աղջաղալա գյուղի մոտ և ոչ շփոթելու է Բարգյուշատի վիճակի Մուղանջիկ կոչված մասի Ջեյվայի հետ։ Մեր նկարագրած Ջևլուն հայտնի է Սյունյաց պատմության մեջ Գեղի անունով, որը Բաղաց իշխանների բերդն էր, գտնվում է Ղափանում»*[1]։

*Ինչպես տեսնում ենք, մեծ վիպասանը չնայած իր «Դավիթ բեկ» պատմական վեպը գրել է Ղափանի շրջանին տեղում լավ ծանոթանալուց հետո միայն, այնուամենայնիվ, երևի տեղացիների ոչ ճիշտ ցուցումների պատճառով Ջևլու բերդը շփոթել է նրանից 14—15* կմ *հեռու գտնվող Գեղի գյուղի հետ։ Ջևլու բերդի ավերակները*[2] *գտնվում են Ողջի և Գեղի գետերի խառնարանում, մինչդեռ Գեղին, ինչպես տեսանք, գտնվում է Գեղվա գետի միջին հոսանքի շրջանում։*

**Շլորուտ բերդ։** *Օրբելյանն իր պատմության Գ գլխում (էջ 13) թվարկում է Սյունյաց աշխարհի բոլոր գլխավոր բերդերը, այդ թվում նաև Շլորուտը։ Այդ թվարկումը չունի որոշակի հաջորդականություն և հնարավորություն չի տալիս որոշելու Շլորուտ բերդի աշխարհագրական դիրքը։ Սակայն հարցի լուծման համար որոշ դյուրություն է ստեղծում նույն պատմիչի մի ուրիշ վկայությունը*[3]*, որտեղ հիշատակված են այն բերդերը, որոնք Կապանի ավերումից հետո (1103 թ.) մնացել էին Գրիգոր թագավորի ձեռքին։ Դրանց թվարկումը կատարված է հետևյալ հաջորդականությամբ՝ Բաղաբերդ, Գեղի, Կաքավաբերդ, Շլորուտ, Կարճևան, Մեղրի և Գրհամ։ Դժվար չէ տեսնել, որ թվարկված բերդերը գտնվում էին Ձորք, Արևիք և Կովսական գավառներում։ Դրանցից Բաղաբերդը և Գեղին գտնվում էին Ձորքում, Կաքավաբերդը, Կարճևանը և Մեղրին՝ Արևիքում, իսկ Գրհամը՝ Կովսականում։ Ինչպես այս, այնպես էլ 13-րդ էջում կատարած հիշատակության մեջ Օրբելյանը Շլորուտ և Կաքավաբերդ բերդերը թվարկում է իրար մոտ։ Հենց այդ հանգամանքն էլ հաշվի առնելով Ալիշանը ենթա-*

---

[1] Րաֆֆի, *Դավիթ բեկ, Երևան, 1941, էջ 280։*

[2] *Այս բերդից մնացել է միայն Ողջագետին զուգահեռ գնացող նրա պարսպի մի փոքր մասը։*

[3] *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 335։*

դրում է, որ Շլորուտ բերդը պետք է գտնվի Արևիք գավառում։ «Մի յամուր տեղեաց Թագաւորութեան Բաղաց էր բերդն այն Կաքաւուց, թերեւս և նոյն որ կոչի Կքեբերդն, և ընդ ամրագոյնս աշխարհին Սիւնեաց դասի իր պատմիչէն ի սկիզբն պատմութեանն, այլ Արեւեաց երեւի պատշաճել. նոյնպէս և յերկոսին եւս տեղիս պատմութեանն յիշեալն ընդ նմին՝ Շլորուտ ամուր բերդ»[1]։

Մենք ևս այն համոզմանն էինք, որ Շլորուտ բերդի ավերակները պետք է որոնել Արևիքում (Մեղրու շրջան)։ Եվ այդ, ինչպես և մեր սույն թեմայի մի շարք այլ հարցերի պարզաբանման համար, անհրաժեշտ գտանք մյուս շրջանների (Ղափան, Գորիս, Սիսիան) հետ միասին ավելի մոտիկից ծանոթանալ Մեղրու շրջանում երբեմնի եղած պատմական վայրերին։ Սակայն Շլորուտ բերդի ավերակները հայտնաբերելու համար Մեղրու շրջանում 1946 թվականին կատարած մեր որոնումներն արդյունք չտվեցին։

Այժմյան Մեղրու շրջանի Տաշտուն և Լիճք գյուղերի մոտ տեղացիները ցույց տվեցին մի վայր, որն անվանում են «Շլորուտ»։ Սա իրենից ներկայացնում է մի փոքրիկ տարածություն՝ պատած ցածրահասակ սալորիներով, որի համար էլ տեղացիներն անվանել են «Շլորուտ»։ Այս վայրում հնության որևէ հետք չի նշմարվում։ Մեղրու շրջանում, ինչքան մենք տեղյակ ենք, այլ «Շլորուտ» չկա։

Մեր ուսումնասիրությունը հնարավորին չափ լիակատար դարձնելու նպատակով ուշք դարձրինք նաև Զորք գավառի՝ Արևիքին շփվող մասերին։ Այստեղ կա երկու վայր, որոնք նույնպես կոչվում են «Շլորուտ»։ Մեկը գտնվում է այժմյան Քաջարան քաղաքից 1,5 կմ հարավ-արևելք, իսկ մյուսը՝ Վերին Հանդ գյուղից 1 կմ հյուսիս։ Թե՛ առաջինում և թե՛ երկրորդում կան ավերակներ, բայց տարբեր բնույթի։ Քաջարանից դեպի հարավ-արևելք գտնվող «Շլորուտ»-ում կան մի քանի գաճաճ տների հետքեր, որոնք վկայում են, որ նա երբեմն եղել է հասարակ բնակավայր։ Այստեղ պաշտպանական նպատակի կառուցվածքների հետքեր չեն նշմարվում։ Մյուս «Շլորուտ»-ը, որը գտնվում է Վերին Հանդ գյուղից հյուսիս,

---

[1] Ղ. Ալիշան, Սիսական, էջ 297։

ղբաղեցնում է 3—4 հեկտար տարածություն և ունի իշխող դիրք Ողջագետի վերնագավառի նկատմամբ։ Նրա գրաված տարածությունը երկար տարիների ընթացքում միշտ հերկվել է. այդ պատճառով հնության շատ քիչ հետքեր են հասել մեզ։ Բայց պահպանված հետքերն էլ որոշակիորեն ցույց են տալիս նրա բերդ կամ ամրոց լինելը։ Այստեղ կարելի է տեսնել պարսպի հետքեր, գերեզմանատուն, հսասրակ բազմաթիվ գերեզմանաքարեր, շենքերի մնացորդներ և այլն։ Նրա արևելյան և արևմտյան կողմերում ձգվում են երկու լեռնաճյուղեր, որոնց վրա, տեղացիների ավանդության համաձայն, եղել են «տիրքեր» (դիտակետեր)։ «Շլրոտ»-ի միջով է անցնում այն լեռնային ճանապարհը, որ Ողջագետի վերնագավառը կապում է Գեղվագետի ավազանի հետ։

Բերված տվյալներից ելնելով, մենք կարծում ենք, որ Շլորուտ բերդը համապատասխանում է Վերին Հանդ գյուղի մոտ գտնվող «Շլրոտ» վայրին, որը պատկանում է Լեռնաձոր գյուղին։

**Բաղաբերդ։** Հայագիտական որոշ աշխատություններում՝ հիմք ընդունելով Սյունյաց տան պատմիչ Ստեփանոս Օրբելյանի մի վկայությունը, Բաղաբերդը նույնացվում է Բաղակի քարի հետ. «Իսկ ամուրք անառիկք ի սմա որ ի մարդկան հնարից հեռացեալ են, բայց միայն թէ Տէր մատնեսցէ՝ Բաղաբերդ, որ և մի ոմն ի զարմիցն Սիսակայ Բաղակ անուն, առեալ զայս գաւառ մասն ժառանգութեան՝ շինէ զքարն Բաղակու ամրոց, որ կոչի Բաղակի քար. և ամրացուցանէ զբերդն և կոչէ Բաղաբերդ. և գաւառն յիւր անուն կոչեցաւ Բաղաց գաւառ»[1]։ Եթե Օրբելյանի տված տեղեկությունները սահմանափակվեին միայն բերվածով, ապա պարզ է, որ Բաղաբերդն ու Բաղակի քարը պետք է նույնը կարծվեր։ Սակայն պատմիչն ունի մի շարք այլ վկայություններ, որոնց մեջ արդեն որոշակի տարբերություն է դրվում Բաղաբերդի և Բաղակի քարի միջև։ Ահա դրանցից մեկը. «Ի 575 թուականին եկն ամիր Հարոնն և բնաջինջ արար զտուն Կապանին և զԱրևիք գաւառ. և էառ զբերդն Կաքաւու և զքարն Բաղակու որ էր վանք, յորում մթերեալ կայր բազում սրբութիւնք, խաչ և վկայարանք ոսկի և

[1] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 13։

արծաթի և կտակարանք որ գաղթեալ էին ի դաւառացն. և ամենայնն ի գերութիւն մատնեցան»[1]։

Ինչպես տեսնում ենք, Բաղակի քարը վանք էր և գրավվել է 1126 թ., մինչդեռ Բաղաբերդը գրավվեց Բաղակու վանքից ավելի քան 40 տարի հետո և մատենագրական ոչ մի աղբյուրի մեջ չի հիշատակվում որպես վանք։ Այդքանն էլ բավական է Բաղաբերդը Բաղակի վանքից տարբերելու համար։

Բաղաբերդը պատմական Հայաստանի հնագույն բերդերից մեկն է։ Նա իր ամուր դիրքի շնորհիվ, դեռ վաղ ժամանակներից սկսած, հռչակված էր որպես անմատչելի բերդ։ 4-րդ դարում Պարսից Շապուհ արքայից արքայի բազմաթիվ զորքերի կողմից Բաղաբերդը գրավվելու համար կատարված հարձակումները ապարդյուն են անցնում[2]։ Լինելով Սյունյաց աշխարհի ամենաամուր բերդը[3], արտաքին վտանգների դեպքում հաճախակի ծառայում էր իբրև ապաստան շրջակայքի բնակիչների համար։

Բաղաբերդի նշանակությունը ավելի է մեծանում թագավորության օրոք՝ հատկապես նրա վերջին շրջանում, երբ քաղաքական աննպաստ պայմանների պատճառով Բաղաբերդում էր կենտրոնացվել Տաթևի և երկրում եղած մյուս վանքերի հսկայական հարստություններն ու բազմաթիվ ձեռագրերը։ Ահա ինչ է գրում Օրբելյանը. «...և զի վասն անառիկ ամրութեանն յամենայն վանորէիցն անդ էին կուտեալ զսրբութիւնս և զգրեանս և զսպաս եկեղեցւոյ. եւ առաւել՝ զանհամար և զաննման սրբութիւնս և սպաս եկեղեցւոյն Տաթևոյ՝ փարթամ և հարուստ աթոռոյն, խաչ և վկայարանք յոսկւոյ և յարծաթոյ, և անգին ակամբք և անհուն մարգարտով զարդարեալ, և կտակարանք յոլովք որք թուով աւելի քան զ10.000 զօրս ամբարեալ էին անդ»[4]։

Բաղաբերդում կենտրոնացված հարստությունները, ինչպես վկայում է Օրբելյանը, նրա գրավման ժամանակ ավարի են ենթարկվում, իսկ ձեռագրերը ոչնչացվում են։

---

[1] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 335։

[2] Տե՛ս նույն տեղը, էջ 28—37։

[3] Տե՛ս Ղ. Ալիշան, Հայապատում, մասն Բ, Վենետիկ, 1901, էջ 116։

[4] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 336։

Կապանի ավերումից հետո (1103 թ.) թագավորության մայրաքաղաքը դառնում է Բաղաբերդը։ Այդ երևում է նրանից, որ Սյունյաց տան պատմիչը Բաղաբերդի գրավումը հաշվում է թագավորության վերջը[1]։

Թագավորության վերացման մասին Օրբելյանն ունի երկու վկայություն. ա) «...և ի 619 թուին կրկին բարկացաւ Աստուած Բաղաց աշխարհիս և Սիւնեաց նահանգիս. և զապավէնն ամենեցուն և զտեղի ապաստանի զանառիկ ամուրն զԲաղաբերդ մատնեաց ի ձեռս Իսմայէլի անիծեալ և գիշախանձ առն (Ելտկուզի—Թ. Հ.), որ բազում զօրօք եկն և ոչ կարաց հնարել ինչ։ Ապա պատրող բանիւք խաբեաց զպարզամիտ արս քրիստոնեայս Աչաղուացիս. և նոքօք նախ ա՛ռ զքարն Կկոց և ապա ի գիշերի՝ այնու արամբք գողացաւ զԲաղաբերդ» («Պատմութիւն նահանգին Սիսական», էջ 335—336)։

բ) «Աւուրք բազումք ի յետ անցին
Ընդ թագաւորս Բագրատունւոյն.
Հարիւր և քսան ամք յաւելին.
Վասն ամրութեան այնմ աշխարհին.
Որոց վերջին Սենէքարիմ
Նաև Գրիգոր որդի նորին։
Ապա և զայս ի բաց բարձին.
Ի ժամանակս Ելտկուզին
Ազգն անիծեալ և պարսկային,
Որք հրով զաշխարհս տոչորեցին
Ի վեց հարիւր մեր թուականին
Եւ տասն ու հինգ յաւելուածին»[2]։

Առաջին վկայության համաձայն Բաղաբերդի գրավումը, որ համընկնում է թագավորության անկման հետ, տեղի է ունեցել 1170 թվականին։ Իսկ երկրորդ վկայությունից կարելի է ենթադրել, որ վերջին թագավորները Սենեքերիմը, ապա նրա որդի Գրիգորն էին. սրանց օրոք էլ՝ 1166 թ. (615+551) վերանում է թագավորությունը։

Կոստանյանը, հիմք ընդունելով միայն վերջին վկայու-

[1] Տե՛ս Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 336։

[2] Ստ. Օրբելյան, Ողբ ի Ս. Կաթողիկէն, Թիֆլիս, 1885, գլխ. ԺԳ, էջ 38։

*թյունը, Սյունյաց թագավորության անկման տարին համարում է 1166 թվականը*[1]։

*Ըստ Օրբելյանի առաջին վկայության թագավորությունը վերացել է 1170 թ., իսկ ըստ երկրորդի՝ 1166 թ.։ Այս հակասությունը բոլորովին վերանում է, երբ մենք ծանոթանում ենք նույն պատմիչի մի ուրիշ վկայությանը, որը տեղադրված է Բաղաբերդի գրավման մասին եղած հիշատակությունից մի պարբերություն հետո։ Բերենք պատմիչի խոսքերը.*

*«Բայց Գրիգորն որ իշխէր Բաղաց, ետ ածեալ ի Խաչենոյ իշխանացն մանուկ մի Հասան անուն ի Գեռաքարեցեացն. և ետ զդուստր իւր Կատայն նմա ի կնութիւն. կացոյց ժառանգ թագաւորութեան իւրոյ. և ինքն եւ եղբայր իւր Սմբատ յառաջ քան զառնուլ բերդին մեռանին ի 615 թուին։ Մինչ զբերդն կամէին առնուլ՝ Հասան կացոյց բերդապահս, և ինքն առեալ զկին իւր և զընտանիս՝ ի գիշերի ել ի բերդէն (Բաղաբերդից— Թ. Հ.) և անց, գնաց ի գաւառ իւր և ի տուն ի Խաչէն»*[2]։

*Հարցն այնքան պարզ է, որ մեկնաբանման շատ քիչ կարիք ունի։ «Ողբ»-ի մեջ եղած հիշատակության համաձայն վերջին թագավորը, ինչպես տեսանք, Գրիգորն էր, որը 1166 թ. սկսած դադարում է թագավորելուց։ Վերը բերված վկայության մեջ ևս ասվում է, որ Գրիգորի թագավորությունը վերջանում է 1166 թ.։ Բայց դրանով չի վերանում Սյունյաց թագավորությունը, որովհետև, ինչպես վկայության մեջ է ասվում, Գրիգոր թագավորը նախքան հեռանալը իր թագավորության ժառանգորդ է դարձնում Խաչենի իշխաններից մի մանուկի՝ Հասանին։ Վերջինս 1166 թ., Գրիգորի և նրա եղբայր Սմբատի հեռանալուց հետո, որպես թագավոր իշխում է մինչև թշնամու կողմից Բաղաբերդի վրա կատարած վտանգավոր հարձակումները։*

*Այսպիսով, Սյունյաց թագավորությունը վերացել է ոչ թե 1166 թ.՝ Գրիգորի թագավորությունից հրաժարվելու պահից, ինչպես Կոստանյանն է կարծում, այլ 1170 թ.՝ Բաղաբերդի գրավմամբ։*

---

[1] Տե՛ս Ստ. Օրբելյան, *Ողբ ի Ս. Կաթողիկէն, Թիֆլիս, 1885, գլխ. ԺԳ, էջ 63, ծանոթ. 34։*

[2] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 336—337։*

1170 թվականից հետո Բաղաբերդը, հավանաբար, այլևս որպես բերդ չի ծառայել, որովհետև մատենագրական ոչ մի աղբյուրի մեջ, ինչքան մեզ հայտնի է, նրա՝ բերդ լինելու մասին չկա հիշատակություն։ Այս տեսակետից չափազանց բնորոշ է այն փաստը, որ 18-րդ դարի ժողովրդական-ազատագրական պատերազմների ժամանակ նշանավոր դարձած բազմաթիվ բերդերի (Որոտն, Հալիձոր, Ձևլու և այլն) շարքում «Դաւիթ Բէգ»-ի հեղինակը Բաղաբերդը երբեք չի հիշատակում, ավելի ճիշտ բազմաթիվ անգամ տալիս է այդ անունը, բայց ոչ իբրև բերդի, այլ՝ գավառի։

Նույն դարին վերաբերող Տաթևի վանքին տրվող պտղի ցուցակում նախկին Ձորք գավառի մի մասը (Ողջադետի վերնագավառը) կոչված է «Բաղաբերդու գաւառն»[1], որը հետագայում էլ մնաց գործածական։

Բաղաբերդը, ինչպես և Բաղակի քարն ու Կապան քաղաքը, ինչքան մեզ հայտնի է, մինչև այժմ եղած քարտեզների վրա չեն նշանակված։ Ուսումնասիրողները, որոնք օգտվել են գլխավորապես Օրբելյանի և զանազան ճանապարհորդների հիշատակություններից, բավարարվել են նրանց դիրքի մասին միայն ընդհանուր նշումներ կատարելով։ Անգամ Ալիշանը, որ այնքան հանգամանորեն նկարագրել է Սյունիքը, պարզ պատկերացում չունի Բաղաբերդի, նրանից ոչ հեռու գտնվող Բաղակի քարի ու Կապան քաղաքի դիրքի մասին։ Այդ պատճառով էլ նրա «Սիսական» աշխատությանը կցված քարտեզում վերը նշված վայրերը[2] ընկնում են ոչ թե Ձորք կամ Կապան գավառի մեջ, ինչպես իրականում կար, այլ՝ Բաղքի։ Ուրիշ կերպ ասած, Ձորք գավառի Բաղքի հետ ունեցած արևելյան սահմանը Բաղաբերդի, Բաղակի քարի, Կապանի և Վահանու վանքի ուղղությամբ 10—12 կմ արևմուտք է պատկերված[3]։

---

[1] Տե՛ս, «Ժամանակագրութիւն Ստեփաննոսի Օրբելյանի», հավելված, էջ 41։

[2] Դրանց (Բաղաբերդ, Բաղակի քար, Կապան) անուններն Ալիշանի քարտեզում չի գրված։

[3] «Սիսական»-ին կցված քարտեզը համեմատել նույն աշխատությանը կցված քարտեզի հետ։

Բաղաբերդի ավերակները մինչև այժմ պահպանված են։ Դրանք գտնվում են Ողջագետի և նրա ձախակողմյան վտակ Գիրաթաղ գետակի անկյունում, այժմյան Քաջարան քաղաքից խճուղու ուղղությամբ 17 կմ արևելք, Դավիթ բեկ ավանի մոտ, Բարկուշատի լեռնաշղթայից դեպի Ողջագետի ձախ ափը գառիթափ իջնող լեռնաճյուղերից մեկի վրա։ Այս լեռնաճյուղը ընդհուպ մոտենում է Մեղրու լեռնաշղթայից եկող մի ուրիշ լեռնաճյուղի, որից բաժանված է միայն Ողջագետի՝ 15—20 մետր լայնություն և 400—500 մետր խորություն ունեցող կիրճով։

Բաղաբերդը զետեղված է Ողջագետի հունից մոտ 200 մետր բարձրություն ունեցող լեռան վրա, որի երեք կողմերում կողք-կողքի շարված են մինչև 8 մետր բարձրություն ունեցող կիսավեր աշտարակները, որոնք իրար հետ միացած են բավականին բարձր, հաստ պարիսպով։ Բերդի աշտարակները բաժանվում են երկու խմբի։ Արտաքին խումբը գտնըվում է լեռան ստորոտին՝ Ողջի և Գիրաթաղ գետերի ափերին։ Այս խմբի աշտարակները և դրանք իրար միացնող պարիսպը լավ են պահպանված միայն Գիրաթաղ գետի ուղղությամբ։

Ներքին խումբը տեղադրված է արտաքին խմբից 150—180 մետր բարձր՝ լեռնաճյուղի գագաթին։ Այս խմբի աշտարակները և պարիսպը, բարձր դիրք ունենալու շնորհիվ, առաջինից համեմատաբար ավելի լավ են պահպանված։

Եթե կրկնակի պարիսպների հետ նկատի ունենանք նաև բերդի անմատչելի դիրքը, ապա բոլորովին հասկանալի կդառնա Բաղաբերդի անառիկության վերաբերյալ Սյունյաց տան պատմիչի գովեստները։

Աշտարակների վրա փորված են 7—8 սմ տրամագծով անցքեր, որոնք, հավանաբար, ծառայել են կամ որպես դիտանցքեր, կամ թշնամու վրա վառվող հեղուկ թափելու համար։

Բաղաբերդի տակով անցնում էին երկու ճանապարհ։ Մեկը գալիս էր Բարկուշատի և Աճենի կողմերից ու անցնում դեպի Արևիք և Գողթն, իսկ մյուսը սկիզբ էր առնում հենց բերդի տակից և գնում դեպի Տաթև (տե՛ս քարտեզը)։

Բավական հորդաբուխ մի աղբյուր, որն այժմ դուրս է գա-

լիս Ողջաբերդի անմիջապես ափին, ժողովրդական զրույցների համաձայն՝ մի ժամանակ գտնվել է բերդի ներսում։

Տեղացիները մինչև օրս պահպանել են Բաղաբերդի[1] հետ կապված մի ավանդություն։ Ըստ այդ ավանդության Բաղաբերդը պարանով կապված էր մի ուրիշ բերդի հետ, որն իբր գտնվում էր նրա դիմաց՝ Ողջագետի աջ կողմում բարձրացող ժայռի մեջ։ Այնտեղ իբր թե գտնվում էր մի հսկայական դուռ, որով փակում էին Ողջագետի կիրճով անցնող ճանապարհը։

Բաղակի քար (վանք և բերդ)։ Գտնվում է Բաղաբերդի մոտ (700—800 մետր հեռու), այժմյան Վերին Ջրախոր գյուղի տեղում, Ողջագետի աջ ափին։ Որոշակի երևում են թե՛ բերդի և թե՛ վանքի ավերակները։

Մենք արդեն տեսանք, որ թագավորության շրջանում Բաղակի վանքում կենտրոնացվել էր հսկայական հարստություն, որը ավարի ենթարկվեց 1126 թվականին։

Բաղակի քարի դիրքը բնականից շատ ամուր է։ Նա շրջապատված է կուսական անտառներով ծածկված երեք բարձր ու խիստ զառիվեր լեռներով, իսկ առջևից Ողջագետի կիրճն է։ Բերդից այժմ մնացել են աշտարակների մնացորդները, որոնք ժամանակի ազդեցության տակ վեր են ածվել գրեթե համասեռ զանգվածների։ Շատերի վրա աճել են հաստաբուն ծառեր։

Վերին Ջրախոր գյուղում բարձրանում է մի փոքրիկ բլուր, որի գագաթին գտնվելիս է եղել Բաղակի վանքը։ Այս վանքը մինչև վերջին ժամանակները (1922 թ.), ինչպես վկայում են տեղացիները, կանգուն էր։ Այժմ կիսականգուն վիճակում է գտնվում նրա շուրջը եղած պարիսպը, իսկ վանքի տեղում կան մի քանի փոքրիկ տներ։ Վանքից ոչ հեռու գտնվում է հնագույն գերեզմանատունը, որի քարերի վրա, սակայն, ոչ մի հիշատակություն չկա։

Վահանա վանք։ Այս վանքը կառուցվել է Ջագիկ իշխանի որդի Վահանի կողմից 911 թ., Սյունյաց գահերեց իշխան Սմբատի, Սմբատ Ա Բագրատունի թագավորի և Սյունյաց

[1] Բաղաբերդը, ինչպես նաև մի քանի այլ բերդեր, տեղացիներն անվանում են «Դավութ բեգի պերթ» (Դավիթ բեկի բերդ)։ Ժողովուրդը դրանով ցանկացել է երկրում եղած բերդերը կապել 18-րդ դարի ժողովրդականազատագրական պատերազմների հետ։

Հովհաննես եպիսկոպոսի օրոք։ Վանքը, կառուցվելուց հետո, ստանում է մի հսկայական կալվածք (այժմյան Աշխլու և Ծիհարջիկ գյուղերի դիմաց գտնվող ամբողջ տարածությունը)։ Վանքն սպասարկում էին ավելի քան 100 կրոնավորներ[1]։ Վահանա վանքը գտնվում էր Աշաղու և Ծիհարջիկ գյուղերի դիմաց[2]։

Վահանից հետո վանքի վանահայրը դառնում է նրա եղբորորդի Վահանը[3]։ Վերջինս մոտակա տեղից խողովակներով բերում է մի սառնորակ աղբյուր և վանքի առջև կրաշաղախ պատով սարքում այն (որը մինչև այժմ էլ գոյություն ունի), դարձնելով վանքի սեփական աղբյուրը։ Բացի դրանից, եկեղեցու առաջ կառուցում է նաև գավիթ, որն ավելի մեծ շուք էր տալիս եկեղեցուն[4]։

Այս Վահանը, ինչպես երևում է, որպես վանահայր երկար չի մնացել, որովհետև շատ չանցած կարգվում է հայոց կաթողիկոս[5]։

Ավելի ուշ ժամանակներում, 11-րդ դարի երկրորդ կեսում, Գրիգոր թագավորի, Շահանդուխտ թագուհու, Կատայի և Սենեքերիմ թագավորի օրոք կատարվում են նոր կառուցումներ.

«Բայց յետ բազում ժամանակաց յաւուրս Գրիգորի՝ թագաւորի Բաղաց, ի Շահանդխտոյ թագուհւոյն և ի Կայտայէ և ի Սենեքերիմայ թագաւորէ բազում և գեղեցիկ շինուածովք առաւել գեղեցկացուցին զվանսն Վահանու՝ կանգնեալ կամարս մեծամեծս, և ի վերայ՝ եկեղեցիս և սրահս բազմասփինս բարձրաբերձ, հովանի և խրախարան իշխանացն...»[6]։

Մեծ եկեղեցուց 25 մետր հեռու կառուցված է եղել մի ավելի փոքր եկեղեցի, որի կիսականգուն պատերին նայելիս զգացվում է, որ իր գեղեցկությամբ գերազանցել է մեծին։

---

[1] Տե՛ս Ստ. Օրբելյան, Պատմություն նահանգին Սիսական, էջ 238—240։

[2] Տե՛ս նույն տեղը, էջ 238—239։

[3] Վարդան Բարձրբերդցին («Պատմություն տիեզերական», էջ 121) վանքի կառուցումը վերագրում է այս Վահանին։

[4] Տե՛ս Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 240։

[5] Տե՛ս Ասողիկ, Պատմութիւն տիեզերական, էջ 181։ Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն Հայոց, էջ 81։ Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 240—241։

[6] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 241։

*Նրա արևելյան պատի ներսի մասում, հիմքին մոտ գտնվող քարերից մեկի վրա մինչև օրս էլ պահպանված է 1086 թ. վերաբերող մի արձանագրություն, որը սակայն շատ տեղերում աղճատված լինելու պատճառով չկարողացանք լրիվ վերծանել։ Ուստի նրա տեքստը բերում ենք Ալիշանի «Սիսական» աշխատությունից (էջ 296), չնայած այստեղ կան բավականին անորոշ տեղեր.*

*«Ի Թուին ՇԼԵ. ես Շահանդուխտ դուստր մեծի արքային Աղուանից Թագաւորին և ամուսին Գրիգոր Թագաւորին, որ է որդի Աշոտի կաւասն? ոչ գոլով մեզ ի միասին? ժառանգ ըստ մարմնոյ, ես եւ քոյրս իմ Կատայ շինեցաք զՍուրբ Աստուածածինս, փոխարէն զԹոց նորա. Որչափ կենդանի եմ կատարին զսուրբ խորհուրդն. եւ ետ այնորիկ զմեզ կցորդ արասցեն...»*[1]*։*

*Շահանդուխտի և Կատայի կառուցած այդ եկեղեցին, ինչպես ասացինք, ավերված է։ Կիսականգուն վիճակում մնում է միայն նրա պատերի մի մասը։*

*Մեծ եկեղեցին նույնպես փլված է։ Կանգուն վիճակում գտնվում են միայն նրա երեք կամարներն ու գմբեթի մի մասը։ Պատերի արտաքին ու ներքին կողմերի սրբատաշ քարերը թափված են. մնացել է միայն նրանց կրաշաղախային զանգվածը, որի վրա աճել են բազմաթիվ ծառեր։*

*Վահանա վանքի բակում թաղված են մի շարք իշխաններ, եպիսկոպոսներ և Աղվանից ու Սյունյաց թագավորներ։ Բերենք պատմիչի վկայությունը.*

*«Սա (Ջևանշերի որդի Վահանը—Թ. Հ.) յաւել բազում շինութիւնս և զարդարեաց զվանսն հանդիսական կարգօք, շինէ զմեծ աղօթարանն ի դրան եկեղեցւոյն վիմարդեան մահարձանօք, յորում հանգուցեալ կան ի շիրմի բազում թագաւորք և թագուհիք Աղվանից և Բաղաց, և բազում իշխանք փառաւորք Սիսական աշխարհիս»*[2]*։*

*Օրբելյանի հիշատակած մահարձանները հայտնաբերելու*

---

[1] *Արձանագրությունը գտնվում է 176* սմ *երկարություն և 62* սմ *լայնություն ունեցող քարի վրա։ Այդ փոքրիկ եկեղեցու վրա կան քարեր, որոնց երկարությունը հասնում է 285* սմ-*ի։*

[2] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 240։*

*համար մեր կատարած որոնումներն ապարդյուն անցան, որովհետև այն քիչ թվով գերեզմանաքարերը, որոնք գտնվում են գետնի երեսին, իրենց վրա ոչ մի արձանագրություն չունեին։*

Կապան քաղաք։ *Եթե չհաշվենք Նախիջևանը, որ երբեմն կարճ ժամանակով մտել է Սյունիքի մեջ, ապա ամբողջ Սյունյաց աշխարհում Կապանը միակն է, որ հիշատակվում է որպես քաղաք։*

*Կապան քաղաքի աշխարհագրական դիրքի մասին բացակայում են ուղղակի հիշատակությունները։ Մասամբ այդ է պատճառը, որ այն քարտեզների վրա չի նշանակվել։ Սակայն մեղադրել Օրբելյանին այն բանի համար, որ Կապանի դիրքի մասին ոչինչ չի հաղորդում, կլինի սխալ, որովհետև նրա մոտ կան այնպիսի տեղեկություններ, որոնք բավականին պարզ կողմնորոշում են տալիս քաղաքի դիրքը որոշելու համար։ Բերենք դրանցից թեկուզ մեկը. «Եւ մեծամեծ և թագաւորական սպասուք զարդարէ զնա (Վահանա վանքը—Թ. Հ.). և ժողովէ եղբարս սրբակրօնս աւելի քան զ100. և հաստատեն մասն ժառանգութեան եկեղեցւոյն, որ յանուն սուրբ լուսաւորչին Գրիգորի, զձորն գետովն յայս դեհս և յայն յանդաստանս և յայգեստանս վանիցն, և զլեռնակողմն մինչ ի վեր ի վեր ի ծայր բարձրավանդակին ուր հօրանք հօտիցն լինէին. և բնակետղ խաշանց. և ի քաղաքին կողմանէ ի պատուար պարսպի արտաքին որմոյն որ ի լեռնէն սկսանի...»[1]։*

*Այստեղ պատմիչը նկարագրում է 911 թ. Վահանա վանքին տրված կալվածքների սահմանները։ Ասված է, որ վանքի կալվածքի սահմանը հասնում էր մինչև քաղաքի պարսպի արտաքին պատը։ Քաղաքը, որի մասին ակնարկված է, միայն կարող է Կապանը լինել, որովհետև Ձորք գավառում, ուր գտնվում էր Վահանա վանքը, բացի Կապանից ոչ միայն ուրիշ քաղաք չկար, այլև չեն հիշատակվում անգամ ավաններ ու գյուղաքաղաքներ։ Եվ դա բնական է։ Ձորքի խիստ լեռնային բնույթը բացառում էր խոշոր տիպի բնակավայրերի գոյությունը։*

[1] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 239։

Այստեղից դժվար չէ եզրակացնել, որ Կապան քաղաքի ավերակները պետք է փնտրել Վահանա վանքի մոտակայքում։ Եվ իսկապես, նրա ավերակները գտնվում են Վահանա վանքի արեմտյան կողմում 3—2,5 կմ-ի վրա, այժմյան Աչխլու գյուղի դիմաց, Ողջագետի բարձրադիր աջ ափին, որին տեղացիներն անվանում են «Տանձուլենջ»։ Կապանի ավերակների տեղում այժմ գտնվում են Բաղաբերդի պիոներական ճամբարները։

Կապան անունը առաջին անգամ հիշատակված է 5-րդ դարի վերջին քառորդին վերաբերող մի պատմության մեջ, որն Օրբելյանը վերցրել է Հովհաննես եկեղեցապանից[1]։ Բերենք այդ պատմությունից այն փոքր հատվածը, որի մեջ Կապանը հիշատակվում է. «Եւ հայր Յովհաննէս ի Կապանէն եկն աստ և առեալ զեղբարսն գնաց յեզր գետոյն...»[2]։

Ինչպես տեսնում ենք, սա չափազանց անորոշ վկայություն է։ Այստեղ չի ասված, թե Կապան ասելով ինչ նկատի ունի՝ գավառ, գյուղ, գյուղաքաղաք, ավան, բերդ, թե՞ քաղաք։ Սակայն առանց կասկածելու կարելի է ընդունել, որ 5-րդ դարում հիշատակված Կապանը ոչ գավառանուն կարող էր լինել, ոչ էլ քաղաք, որովհետև Կապանը որպես գավառ գործածական դարձավ 10-րդ դարից հետո միայն, իսկ որպես քաղաք դարձյալ 10-րդ դարից է սկսում հիշատակվել։ Ուստի մնում է կարծել, որ Կապանը այդ ժամանակներում սովորական բնակավայր է եղել։ Հենց դրանով պետք է բացատրել այն, որ 5-րդ դարի վերջին քառորդի հիշատակությունից հետո այդ անունը մինչև 10-րդ դարը ոչ մի մատենագրի կողմից այլևս չի հիշվում։

10-րդ դարից սկսած մատենագիրների մոտ Կապանն արդեն հիշատակվում է որպես քաղաք։ Օրբելյանի տված տեղեկություններից երևում է, որ Կապանը նախքան մայրաքաղաք դառնալը հանդիսանում էր Ձագիկյան իշխանների ոստանը[3]։ Նրա հիմնադրման, ինչպես նաև իշխանական ոստան դառնա-

---

[1] Տե՛ս Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 81—88։

[2] Նույն տեղում, էջ 87։

[3] Տե՛ս նույն տեղը, էջ 200, 284։

լու ժամանակի վերաբերյալ մեզ ոչ մի տեղեկություն չի հասել։

10-րդ դարի պարսիկ մի անհայտ աշխարհագիր վկայում է, որ իր ժամանակներում Կապանը ծաղկող քաղաք էր։ Անհրաժեշտ ենք համարում անգլերենից թարգմանաբար բերել նրա խոսքերը. «Կապան ծաղկող քաղաքը, որն արտադրում է շատ բամբակ՝ լավ որակի»[1]։ Սակայն այս հիշատակության՝ բամբակի աճմանը վերաբերող մասը կարող է ճիշտ չլինել, որովհետև Կապանի շրջակայքում բամբակ չէր կարող աճել, կլիման ցուրտ է։

Եթե Կապանը 10-րդ դարում արդեն ծաղկող քաղաք էր, ինչպես ասում է ժամանակակիցը, ապա կարելի է ենթադրել, որ նա որպես քաղաք ավելի հին պետք է լինի։

Այժմ հարց է առաջանում, թե Կապանը ե՞րբ դարձավ Սյունյաց թագավորության մայրաքաղաք։

Այս չափազանց հետաքրքրական հարցին պատասխան տալու համար կատարած մեր ուսումնասիրությունները դժբախտաբար սահմանափակվում են հավանական ենթադրությամբ, որովհետև մեզ հասած մատենագրական երկերում, հիշատակություններում և արձանագրությունների մեջ, ինչքան մեզ հայտնի է, Կապանի մայրաքաղաք դառնալու թվականի վերաբերյալ տեղեկություններ չկան։

Առաջադրված հարցի վերաբերյալ Ալիշանը իր աշխատության («Սիսական») մեջ արտահայտում է երկու կարծիք. ա) «Ոչ է քաջայայտ երբ թագաւորք Սիւնեաց հաստատեցին զաթոռ իւրեանց յամուրս գաւառիս (Ձորք գավառում, որում և գտնվում էր Կապանը—Թ. Հ.), փոխադրելով ի կողմանց Ծըղկայ և Վայոց ձորոյ. այլ յայտ է զի ի ԺԱ դարու և անդր քան կէս ԺԲ-ին աստ նստէին...» (էջ 290)։ բ) «Ոստան Տեարց Սիւնեաց ի հնումն էր ի Ծղկաց գաւառի, այլ Վասակեան հարստութիւն հաստատեաց զիւրն ի Վայոց ձոր, երկրորդական զարմին թողեալ զԾղուկս, որպէս յայտնապես ասի վասն Մեծին Սմբատայ՝ հօրեղբօր առաջնոյ թագաւորին Սիւնեաց. իսկ սա թուի հաստատեալ զաթոռ թագաւորութեանն ի Կապան

[1] Hudud al Alam, The necions of the World en Persian geography, London, 1937, էջ 143։

քաղաքի Բաղաց, առ անառիկ ամրոցաւն Բաղաբերդի, որոց առանձինն իշխանք տիրէին ՅԸ—Ժ դարս յոլովք Ջագիկ և Ջուանշէր անուամբ, որպէս տեսցի յուրոյն տեղագրի գաւառին» (էջ 17)։

Դժվար չէ տեսնել, որ Ալիշանի երկու կարծիքները մեկը մյուսին մի փոքր հակասում են։ Առաջինի մեջ հեղինակն արտահայտում է այն միտքը, թե թագավորանիստը սկզբում գտնվում էր Ծղուկքի և Վայոց ձորի կողմերում, իսկ հետո այն հաստատվեց Ձորքում։ Միայն հայտնի չէ, թե երբ տեղի ունեցավ այդ փոխադրումը։ Իսկ երկրորդում հեղինակն այն կարծիքին է, որ Սյունյաց թագավորների մայրաքաղաքը հենց սկզբից էլ Կապանն էր՝ վկայակոչելով Օրբելյանի այն հիշատակությունը, ըստ որի նախկին Սյունյաց երկիրը, բացի Գեղամա լճի շուրջը գտնվող գավառներից, 10-րդ դարում բաժանված էր երկու մասի։ Մեկում (Վայոց ձոր և Ճահուկ գավառներում) իշխում էր Սմբատ իշխանը, որը միաժամանակ Սյունյաց տերն էր, իսկ մյուս մասում (Ծղուկք, Բաղք և այլն) իշխում էր նրա եղբայր Սահակը։ Թագավորությունը կազմակերպվեց վերջին ճյուղի (Սահակի սերունդների) տերության օրոք (առաջին թագավորը հենց հիշյալ Սահակի որդի Սմբատըն էր), ուստի այստեղից էլ Ալիշանը ենթադրում է, որ նրանք Կապան քաղաքը հենց սկզբից դարձրին աթոռանիստ։

Եթե հաշվի առնենք պատմիչների միայն ուղղակի վկայությունները, ապա Ալիշանի երկու կարծիքներից վերջինը (ըստ որի Կապանը սկզբից եթ թագավորության մայրաքաղաք էր), թվում է, թե ավելի հավանական է։ Այդպիսի ուղղակի վկայություններ մեր մատենագիրներից ունեն երեքը՝ Ուռհայեցին, Վարդան վարդապետը և Օրբելյանը։ Ուռհայեցին և Վարդան վարդապետը Սյունյաց թագավորությունն անվանում էին Կապանի թագավորություն[1]։ Նրանք բացի Կապանից այս թագավորության համար այլ մայրաքաղաք չեն հիշատակում։ Սյունյաց տան պատմիչ Օրբելյանը ևս, որն ավելի գիտակ է այս խնդրում, այս կամ այն առիթով որպես մայրաքաղաք

[1] Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, էջ 80, 231։ Վարդան վարդապետ, Հաւաքումն պատմութեան, էջ 103, 128։

*հիշատակում է միայն Կապանը[1] («Պատմութիւն նահանգին Սիսական», էջ 333—334 և այլն)։*

*Դրա օգտին կարող է ծառայել նաև այն հանգամանքը, որ Սյունիքում թագավորության շրջանում Կապանից բացի ուրիշ քաղաք չկար, իսկ թագավորական աթոռը սովորաբար տեղադրվում էր քաղաքում։*

*Ալիշանի մյուս ենթադրության համար (ըստ որի մայրաքաղաքն սկզբում գտնվում էր Ծղուկքի և Վայոց ձորի կողմերում, իսկ հետո այն տեղափոխվեց Կապան քաղաքը) առիթ է ծառայել միայն այն հանգամանքը, որ նախքան թագավորության կազմավորվելը Սյունյաց իշխանների ոստանը գտնվում էր Վայոց ձորում, իսկ նույն տան իշխան Սահակի և նրա որդի Սմբատի ոստանը Ծղուկք գավառում։ Վերջինը իր հորեղբոր որդի Վասակի մահից հետո դառնում է ամբողջ Սյունիքի գահերեց իշխանը. «Իսկ Վասակ՝ որդի Սմբատայ, յետ բազում իշխանութեանց և գովելի գործոց մեռանի. և տիրէր համագունդ աշխարհիս Սիսական Սմբատ՝ որդին Սահակայ, գահերեց իշխանութեամբ»[2], հետևապես նրա ոստանը պետք է մնար կամ իր հոր բաժնում՝ Ծղուկքում կամ տեղափոխվեր Վայոց ձոր, ուր այդ ժամանակներում գտնվում էր Սյունյաց գահերեց իշխանների ոստանը։*

*Եվ քանի որ Սյունիքում առաջին անգամ հենց այս Սմբատն էր, որ Խորասանի արաբական էմիրից թագ ստանալով իրեն հռչակեց թագավոր (տե՛ս Օրբելյան, էջ 299—300), ուստի այստեղից էլ ենթադրվում է, որ թագավորության մայրաքաղաքը սկզբնական շրջանում գտնվում էր Ծղուկքի կամ Վայոց ձորի կողմերում։*

*Բերված փաստը բավականին զորավոր է։ Հնարավոր է, որ թագավորության գոյության սկզբնական շրջանում մայրաքաղաքը գտնվելիս լիներ Ծղուկքում[3], սակայն 1003 թ. հետո, երբ գրավվեց Վայոց ձորը և Ծղուկքի հյուսիսային մասը, այն*

---

[1] *Այստեղ նկատի չունենք Կապանի ավերումից հետո (1103) ընկած ժամանակաշրջանը, երբ թագավորանիստ էր դարձել Բաղաբերդը։*

[2] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 299։*

[3] *Մայրաքաղաքը Վայոց ձորում գտնվելը բոլորովին անհավանական է։*

չմնաց Ծղուկքում, որովհետև վերջինս գտնվում էր սահմանի վրա և դիրքային պայմանների տեսակետից աննպաստ։

Կապան քաղաքն ուներ դիրքային մի շարք առավելություններ։ Բաղաբերդ և Բաղակի քար բերդերը ապահովում էին քաղաքի անվտանգությունը արևմտյան (Գողթնի և Երընջակի կողմերից) և հյուսիսային (Ծղուկքի) կողմերից։ Քաղաքի հյուսիսային կողմով անցնում էր Ողջագետը, որն այդ մասում առաջացրել էր անանցանելի խոր կիրճ՝ խիստ զառիվեր և անտառապատ լանջով, իսկ դիմացը մի քանի հարյուր մետրի հասնող ժայռ է։ Հարավում ձգվում են Արևիքի (Մեղրու) բարձրաբերձ և ժայռոտ լեռները, որոնք անմատչելի են դարձնում քաղաքը հարավային կողմից։ Այդ պատճառով քաղաքը հարավային կողմից պարսպափակված չէր։ Այդ առթիվ Օրբելյանը գրում է. «Նախ՝ բազում հետևակազօր մարդիկ սորամուտք և քարագնացք ելին ի գլուխ ապառաժուտ լերինն. և իջին ընդ մեծ ւսարի հեղեղատն ի քաղաքն, զի այն վայր ոչ էր պարսպափակ վասն անհնարին գոլոյ մտից մարդկան...»[1]։

Ուրեմն, այսպես, Կապան քաղաքը հարավային և հյուսիսային կողմերից պատած էր բնական արգելքներով, իսկ արևմտյան կողմից Բաղաբերդ և Բաղակի քար ամուր բերդերով։ Բաղաբերդը փաստորեն Կապանի միջնաբերդն էր, բայց տեղանքի առանձնահատկությունների պատճառով գտնվում էր ոչ թե քաղաքի մեջտեղում, այլ ծայրամասում։ Համեմատաբար դյուրին էր քաղաք մտնելը արևելյան կողմից։ Դրա պատճառով էլ քաղաքի արևելյան կողմում, Օրբելյանի վկայությամբ, կառուցված էր պարիսպ[2]։

Կապան քաղաքի ավերման մասին տեղեկություններ են հաղորդում Վարդան վարդապետն ու Ստեփանոս Օրբելյանը։ Բերենք նրանց վկայությունները.

ա) Վարդան վարդապետ, Հաւաքումն պատմութեան, էջ 103. «Ի հինգ հարիւր քառասուն և երեք թուին (1094 թ.) առաքեաց Փատլուն ամիրայն Գանձակայ զՎասակ Պահլաւ՝ որդի Գրիգորոյ Մագիստրոսի, ամենայն զօրօքն Առանայ, յանառիկ յամուրսն Բաղաց և Կապանին, որ և խաբէութեամբ հնա-

[1] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 334։

[2] Տե՛ս նույն տեղը, էջ 239 և 334։

բեալ մտին անդր և սպանեալ զՍեննեքերիմ արքայն Հայկազնի, զի Թագաւորն որ անդ՝ հայկականք էին. և ոչ բարձաւ մինչև ի յետին աւուրս եղելոյ երկուց եղբարք անզաւակաց, Սմբատայ և Գրիգորոյ, որ առեալ զմանուկն Սեննեքերիմ հայազարմ՝ եդին Թագաւոր ժառանգորդ իւրեանց. զոր և սպանեալ հրամանաւ Փատլնոյ՝ շիջաւ ճրագն որ անդ, և տիրեցին Պարսիկք»։

բ) Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 333—334.

«Իսկ ի լնուլ մետասան յոբելենին և երկուց Թուոց որ է ի 552 թուին (1103 թ.)՝ օր մի յանկարծակի մինչ կային յանհոգութեան քաղաքացիքն, մատնեաց Տէր զանաւրէնսն ի մարդկանէ զԿապան քաղաք. և անիծեալ Ջորթման վասն քինուն իւր յեղակարծում ժամու հեղաւ ի վերայ քաղաքին... և իջին ընդ մեծ աւարի հեղեղատն ի քաղաքն... և ապա բացին զդուռն քաղաքին որ ի խնձորոյ գլուխ հայէր. և մտին զօրքն ամենայն և հարեալ սատակեցին զամենեսեան առ հասարակ. բայց ի բերդն ոչ ինչ կարացին ձեռնարկել. այլ գնացին անդրէն ի տեղի իւրեանց»[1]։

Ինչպես տեսնում ենք, Վարդանի և Օրբելյանի վկայությունների միջև կան զգալի տարբերություններ։ Առաջինի համաձայն Կապանն ավերվել է Գանձակի Փատլուն ամիրայի հրամանով՝ Գրիգոր մագիստրոսի որդի Վասակ Պահլավի կողմից, 1094 թվականին։ Իսկ ըստ Օրբելյանի այն ավերվել է 1103 թ.՝ Ջորթման ամիրայի կողմից։

Այս խնդրում, մեր կարծիքով, անկասկած, նախապատվությունը պետք է տալ Օրբելյանին, որովհետև վերջինս ոչ միայն առհասարակ Սյունյաց պատմության մեջ ավելի գիտակ է, այլև Կապանի գրավման մասին նրա հաղորդածը, ինչպես ինքն է ասում, վերցրել է մի ժամանակակցի պատմությունից. «Յամի յորում էր Թուականն Հայոց 552, եղև սկիզբն աւերածոց Կապանի գաւառի և ամուր աշխարհին Բաղաց, և սպառելոյ տէրութեան նոցա Թագաւորաց և իշխանաց, զոր լուաք և ընթերցաք ի թղթոյն Տեառն Ստեփաննոսի՝ Սիւնեաց եպիսկոպոսի, զոր գրեալ էր ի հոյակապ քաղաքն Անի ի խրն-

[1] Բերված է որոշ կրճատումներով։

դրոյ սուրբ քահանային Մխիթարայ՝ ուագերիցու քաղաքին և փակակալի սուրբ կաթողիկէին»[1]։

Օրբելյանի հիշատակած Ստեփանոս եպիսկոպոսի մատենագրական աշխատությունը մեզ չի հասել, սակայն դա չի խանգարում հավատալու Օրբելյանի այն վկայությանը, որ Կապանի ավերումը եղել է 1103 թ.։ Ի դեպ անհրաժեշտ է նկատել, որ ավերումից հետո, նույն վկայության համաձայն, թրքնամու զորքերը չեն ամրացել Բաղաց աշխարհում, այլ թողել ու հեռացել են։

Կապանի ավերումից հետո մինչև 15-րդ դարը նրա մասին այլևս տեղեկություններ չկան։ 1405 թ. վերաբերող իր մի վկայության մեջ Թովմա Մեծոփեցին հիշատակում է նրա անունը։ Անհրաժեշտ ենք համարում մեջ բերել այն. «Եվ երբ մնացեալ աշակերտաց նորա (Վարդանի—Թ. Հ.)՝ թողեալ գնացաք ի գաւառն Սիւնեաց առ մեծն Գրիգոր...։ Եւ նորա ժողովեալ զբազումս յաշակերտաց իւրոց՝ զՄխիթարն ի Տաթեւոյ, զՅովհաննէսն ի յԵկեղեաց ի վանից Հերմոնի, զԳալուստըն ի Վաղաղնու Սիւնեաց սուրբ Կարապետէն, զՍիմէոնն ի Սիւնեաց, զՅակոբն Բոստացի, զԳրիգորն Արարատեան, զԳրիգորն և զՄաթէոսն Ջուղայեցի, զԱւետիսն ի յԱստապատէ, զԵղիայն ի յՈծոփայ, զՅովհաննեսն ի Վաղաղնու, վանացն, զՈւսան ի Շամախոյ, Յովհաննէս Կարմիրն ի Կապանայ։ Եւ էին երեք յաշակերտացն յայլ տեղիս. Մատէոս Ոսկանեցի սուրբ ուխտին Գանձասարու, Մկրտիչն ի Փայտակարանէ, Ստեփաննոս ի Թաւրիզոյ։ Եւ քահանայս բազումս աւելի քան զ60 ոգի, և սկսաւ ուսուցանել զգիրս արտաքին իմաստասիրացն»[2]։

Բերված վկայության մեջ ընդամենը հիշատակված է 15 վայր, որոնցից միայն «Արարատեան»-ը ուներ տերիտորիալ (աշխարհ, գավառ, շրջան) իմաստ, իսկ մյուս 14-ը (Տաթև, Հերմոնի վ., Սյունյաց Վաղաղնու վ., Սյունիք վ., Ջուղա, Աստապատ, Բոստ, Ոծոփայ վ., Վաղաղնու վ., Շամախի, Կապան, Գանձասարի վ., Փայտակարան, Թավրիզ), այդ թվում և Կա-

[1] Ստ. Օրբելյան, Պատմություն նահանգին Սիսական, էջ 332։

[2] Թովմա Մեծոփեցի, Պատմութիւն Լանկթամուրայ և յաջորդաց իւրոց, Փարիզ, 1860, էջ 50—51։

պանը վանքեր, բնակավայրեր և քաղաքներ էին։ Այստեղից կարելի է եզրակացնել, որ Կապանը 1103 թ. ավերումից հետո էլ շարունակում էր գոյություն ունենալ, բայց արդեն ոչ որպես քաղաք, այլ սովորական բնակավայր։ Եթե նա իբրև քաղաք հետագա շրջանում պահպանվեր, ապա Օրբելյանի կողմից անկասկած որևէ առիթով կհիշատակվեր։ Բացի դրանից, այն եթե քաղաք լիներ, աթոռանիստը Բաղաբերդը չէր լինի։ Միայն մութն է մնում նրա բոլորովին անմարդաբնակ դառնալու ժամանակը։

Կապան անունը հետագայում պահպանվել է Ղափան ձևով[1], որն արդեն շրջանի, երկրի անունն է[2]։

Կապան քաղաքից շատ քիչ բան է պահպանվել։ Նրա արևելյան կողմի պարսպի հետքերը հազիվ նշմարվում են, իսկ աշտարակներից նկատելի են չորսը, որոնցից մնացել են միայն հիմքերը՝ 1—2 մետր բարձրությամբ։ Նույնպիսի աշտարակների հետքեր կան նաև քաղաքի արևմտյան կողմում։ Ավելի աննախանձելի է բուն քաղաքից պահպանված ավերակների վիճակը։ Քաղաքի բռնած տարածության գրեթե կեսը դարերի ընթացքում հերկվել և վեր է ածվել միապաղաղ դաշտի, ուր բացի փոքրիկ բլրի վրա գտնվող մի քանի անշուք գերեզմանաքարերից ոչինչ չի նշմարվում։ Վաղեմի քաղաքի մյուս կեսը թաղված է խիտ ու անանցանելի անտառի տակ։ Այս մասում, այժմ Մեղրի կոչվող լեռների լանջերին, որքան մենք կարողացանք տեսնել, կան բազմաթիվ տների հետքեր։

Շենքերի ավերակներից երևում է, որ Կապանը իր ժամանակաշրջանի համեմատությամբ առաջնակարգ քաղաք չի եղել ո՛չ ճարտարապետական տեսակետից, ո՛չ էլ մեծությամբ։ Ըստ մեր չափումների Կապանի երկարությունը մոտ 3 կմ է («Տանձուլենչ»-ի ջրից մինչև Բաղակի վանքի մոտերքը), իսկ լայնությունը 150—700 մետր։ Քաղաքի տեղադրավայրը մի եռանկյունի տարածություն է (այդ երևում է նաև նրա չափերից), որի գագաթային մասը ուղղված է դեպի Բաղակի քար և Բաղաբերդ բերդերը։ Վաղեմի քաղաքի տեղում

---

[1] Տե՛ս Ղ. Ալիշան, Սիսական, էջ 8—9։

[2] Նախկին Կապան քաղաքը չպետք է շփոթել այժմյան Ղափանի հետ. վերջինս գտնվում է նրա ավերակների վայրից 17—18 կմ հարավ-արևելք։

*այժմ գտնվում են Քաջարանի կոմբինատի և շինարարական տրեստի պիոներական ճամբարները։*

## 4. Բաղք

*Սյունյաց աշխարհի Բաղք գավառը 10—12-րդ դարերում հաճախ կոչվում էր «Բաղաց աշխարհ», որի մեջ բացի Բաղք գավառից մտնում էին Ձորքը, Կովսականը և թերևս Արևիք գավառը*[1]*։*

*Բաղքը որպես գավառ (նեղ իմաստով) սահմանափակված էր հարավից՝ Կովսականով, արևմուտքից՝ Ձորքով և Ծղուկքով, հյուսիսից՝ Հաբանդով, իսկ արևելքից՝ Հագարի գետով։ Տաթևի վանքին տրվող հարկի հին ցուցակում Բաղքը բաժանված է երկու մասի՝ արևմտյան և արևելյան։ Արևմըտյանն անվանված է «Բաղք գաւառ» (Օրբելյան, էջ 518), իսկ արևելյանը՝ «Միւս Բաղք», որ կոչվում է նաև Քաշունիք (նույն տեղը, էջ 518)։*

*«Բաղք գաւառ»-ը 10-րդ դարից սկսած հայտնի է նաև Աճեն կամ Աճանան անունով*[2]*, որը հետագա դարերում էլ շարունակվեց գործածական մնալ։ Այժմ տեղացիները մի փոքր աղավաղման ենթարկելով անվանում են «Ըջանան»։ Իսկ երկրորդը, բացի «Միւս Բաղք» և Քաշունիք կոչվելուց կրում էր նաև Բարկուշատ անունը*[3]*, որը մինչև օրս էլ պահպանվել է Բերգուշետ ձևով։ Վերջինս Ադրբեջանական ՍՍՌ-ի շրջաններից մեկն է՝ կազմված նախկին Բարկուշատի արևելյան մասից, իսկ նրա արևմտյան մասը՝ Խոտանան, Արծվանիկ, Ագարակ և մի քանի այլ գյուղերի շրջակայքով, մտնում է Հայկական ՍՍՌ-ի Ղափանի շրջանի մեջ։*

*Ստույգ վկայությունների համաձայն 9-րդ դարից սկսած Բաղաց աշխարհը (Բաղքը լայն իմաստով) հանդիսացել է Սյունյաց իշխանական տան ճյուղերից մեկի՝ Բաղաց իշխանների (Ջագիկյանների) երկիրը։*

---

[1] *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, 1859, Շահնազարյանի ծանոթությունը, էջ 315։* Ալիշան, *Սիսական, էջ 273։*

[2] *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 12, 238։*

[3] *Տե՛ս նույն տեղը, էջ 75, 80, 86, 331, 391, 392 և այլն։*

*Ալիշանը բանասիրական մեծ բարեխղճությամբ կազմել է Բաղքում տիրող այդ իշխանների ցեղագրական և ժամանակագրական տախտակը (ծառը), որն ավելորդ չենք համարում տեղադրել մեր սույն աշխատության մեջ։*

**Վահան**
|
**Ջագիկ (Ա) 844 թ.**
|
**Ջագիկ (Բ) 895—905**
|
**Ջունաշեր 906**
|
**Ջագիկ (Գ) 911—975**

| | | |
|---|---|---|
| **Վասակ 925** | **Ջուանշեր (Բ) 911—958** | **Վահան 911** |

| | | |
|---|---|---|
| **Ջագիկ** — **Փարաջ** | | **Վահան կաթողիկոս**[1] |

*Ջագիկ Գ.-ն և վերջին Ջևանշերը Օրբելյանի մոտ, ինչպես ժամանակին նկատել է Ալիշանը («Սիսական» էջ 273), անվանված են Բաղաց գավառի և Կապան քաղաքի իշխաններ. «Պայծառանայր և յայն աւուրս համազգի սոցին իշխանացս ի Սիսական տոհմէ Ջագիկ՝ մեծ իշխանն, ամենայն բարեպաշտութեամբ. որ ունէր ի բաժնի զԲաղաց գաւառն և զԿապան քաղաք, որ և յետ բազում բարեկարգութեանց վախճանի. և դնի ընդ հարս իւր. և թողու ժառանգ զքաջազօրն Ջևանշէր և զՎահան»[2]։*

*Փարաջից հետո (998 թ.) Բաղք գավառը, հավանաբար բռնությամբ[3], գրավում են գահագլուխ իշխանները, որոնք*

[1] *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսական, էջ 273։*

[2] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 200։*

[3] *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսական, էջ 273։*

*դեռևս 970-ական թվականներին թագավորություն էին հաս-
տատել։*

*10-րդ դարի վերջից սկսած Բաղաց իշխանների՝ Ջագիկ-
յանների և Ջևանշերյանների մասին տեղեկություններ չկան։
Նրանք այդ շրջանում հավանաբար դարձան Սյունյաց թագա-
վորների վասալները՝ շարունակելով իշխել Բաղքի վրա*[1]*։*

*12-րդ դարի կեսերից Բաղքում սկսում են իշխել Համ-
տունյանց իշխանները, իսկ 13-րդ դարի սկզբներին Բաղքը
նախկին Սյունյաց աշխարհի մյուս գավառների և սրանց շըր-
ջակա տերիտորիաների հետ գրավում են Զաքարյանները*[2]*։*

*Տաթևի եպիսկոպոսական թեմի հին հարկացուցակի մեջ
Բաղքում (Բաղք և Քաշունիք գավառները միասին վերցրած)
հիշատակված է 93 գյուղ (տե՛ս Օրբելյան, էջ 518—519)։
Սրանց մեծ մասն այժմ հայտնի չէ. մինչև օրս պահպանված
բնակավայրերի թիվը չի հասնում 20-ի։ Դրանցից արժե հի-
շատակել՝ Աչաղուն (այժմ՝ Աչխլու), Շեկըը (այժմ՝ Շհարջիկ),
Կավարտը (Կավարտ), Խոտանանը (Խոտանան), Տորթնը
(Տորթնի), Կատարը (Կատար, անմարդաբնակ), Նորաշենիկը
(Նորաշենիկ), Երիցու վանքը (Արծվանիկ), Տանձավայրը
(Տանձավեր—սա մինչև սովետական կարգերի հաստատումն
ավերակ էր, սովետական կարգերի հաստատումից հետո այս-
տեղ տեղափոխվեցին շրջակա գյուղերի բնակիչները, ինչպես
նաև Լեռնաձոր գյուղից 15 ընտանիք), Վաժոնիքը (Ուժանիս),
Ագարակը (Ագարակ), Խողվանին (Աղվանի) և Շոռնոխոյը
(Շուռնուխ)։ Հիշատակված բոլոր գյուղերը, բացառությամբ
վերջինի, գտնվում են այժմյան Ղափանի շրջանում և նշա-
նակվում են ժամանակակից քարտեզների վրա։*

*Բաղքում եղած բազմաթիվ նշանավոր պատմա-աշխար-
հագրական վայրերը (Անդոկաբերդ, Բարկուշատի բերդ, Քա-
շեթաղուց բերդ, Պահու բերդ և այլն) Սյունյաց թագավորու-
թյան ժամանակներում տեղի ունեցող դեպքերի առնչությամբ
չեն հիշատակվում։ Դրանից կարելի է ենթադրել, որ նշված
բերդերը գտնվելով համեմատաբար հարթավայրային շրջա-*

---

[1] *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսական, էջ 273—274։*

[2] *Տե՛ս նույն տեղը, էջ 274։*

*նում և արևելյան կողմից հաճախակի հարձակման ենթարկվելով, կորցրել էին իրենց նշանակությունը։*

*Բաղքում գտնվող մի քանի վայրեր (Աչաղու, Կկոց քար, Տանձափարախ և Բղենոյ բերդ) սերտ կերպով կապված են Սյունյաց և Բաղաց թագավորության մեջ տեղի ունեցած քաղաքական դեպքերին։*

*Աչաղու, Գետարավայր և Շեկք գյուղերը գտնվում էին Վահանա վանքի դիմաց։ Բերենք պատմիչի խոսքերը. «...և Հաստատեն մասն ժառանգութեան եկեղեցւոյն (Վահանա վանքի—Թ. Հ.), որ յանուն սուրբ լուսաւորչին Գրիգորի, զձորն գետովն յայս դեհս և յայն յանդաստանս և յայգեստանս վանիցն, և զլեռնակողմն մինչ ի վեր ի ծայր բարձրաւանդակին ուր Հօրանք Հօտիցն լինէին. և բնակետղ խաշանց. և ի քաղաքին կողմանէ մինչ ի պատուար պարսպի արտաքին որմոյն որ ի լեռնէն սկսանի. ի Տանձափարախոյ կողմանէն մեծ բնաձորն որ ի լեռնէն սկսանի և իջանէ ի գետն, և զգեղանն որ ի Հանդէպ վանացն՝ զԱչաղու և զԱչաղուայ, զԳետարավայր և զՇեկք և այլ բազում տուրս և ժառանգութիւնս եկեղեցւոյն Հաստատեն անխախտ վճռաւ»[1]։*

*Եկեղեցու հին հարկացուցակում (Օրբելյան, էջ 518) ևս Աչաղու և Շեկք գյուղերը հիշատակված են, միայն թե վերջինը՝ Շեքքս ձևով։*

*Բերված վկայությունը ցույց է տալիս, որ Օրբելյանը շատ լավ գիտեր Սյունիքի այս մասի տեղագրությունը։ Իրոք, Աչաղուն, գտնվում է Վահանա վանքի ուղիղ դիմացը, Ողջագետի ձախ կողմում։ Վերն արդեն ասացինք, որ Աչաղուն այժմ էլ գոյություն ունի և գտնվում է Ղափան—Քաջարան ճանապարհին՝ Ղափանից 10* կմ *հեռավորության վրա, Ջրախորդէսի ուղիղ դիմաց։*

*Շեկք գյուղը հեռու չէր Աչաղուից։ Այժմ Աչաղուից երկու կիլոմետր դեպի արևելք գտնվում է ադրբեջանական Շհարջիկ խոշոր գյուղը։ Սա, անկասկած, համապատասխանում է Օրբելյանի հիշատակած Շեկքին, որովհետև ոչ միայն Շեկքը աղավաղմամբ կարող է դառնալ Շիհարջիկ, այլև այդ մասերում բնակավայրի ավերակներ չեն նկատվում։*

[1] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 239։*

Աշաղուի դիմաց, Կապան քաղաքի արևելյան կողմով անցնում է մի փոքրիկ ձոր, որը տեղացիներն անվանում են «Տանձուլենջին ջուր»։ Այն սկսվում է Մեղրու լեռներից, որոնց բարձր մասերը ծածկված են ալպիական մարգագետիններով։ Միանգամայն հաստատվում է Օրբելյանից վերը բերված վկայությունը, ըստ որի այդ ձորը սկսվում է լեռներից և գտնվում է Աշաղուի դիմաց։ Ուստի Տանձափարախի վանքի ավերակները պետք է որոնել հիշված «Տանձուլենջ» կոչվող ձորում։ Տեղում մանրամասն զննելով այդ ձորը, տեսանք, որ նրա և Ողջագետի խառնարանում կան բնակավայրի և եկեղեցու մնացորդներ (հեղեղների պատճառով դրանցից շատ քիչ բան է մնացել)։ Թվում է, թե հենց այստեղ էլ գտնվելիս է եղել Տանձափարախը։ Եթե այդ այդպես է, ապա Տանձափարախը պետք է վերագրել ոչ թե Բաղք, այլ Ձորք գավառին, քանի որ նա գտնվում էր Կապանի և Վահանա վանքի միջև, իսկ այս վերջիններս, ինչպես մենք իր տեղում տեսանք, Ձորք գավառում էին։

1170 թ. նախքան Բաղաբերդը գրավելը թշնամին աշաղուացիներին խաբելու միջոցով առնում է Կկոց քար բերդը և ապա գիշերով հարձակվում Բաղաբերդի վրա։ Ահա պատմիչի վկայությունը. «Ապա պատրող բանիւք խաբեաց զպարզամիտ արս քրիստոնեայս Աշաղուացիս. և նոքօք նախ ա՛ռ զքարն Կկոց. և ապա ի գիշերի՝ այնու արամբք գողացաւ զԲաղաբերդ և առեալ կոտորեաց սաստիկ...»[1]։

Աշաղու գյուղը Բաղաբերդից հեռու է մոտ 2,5—3 կիլոմետր։ Բերված վկայությունից երևում է, որ Կկոց քար բերդն էլ մոտ էր գտնվում Աշաղուին։

Այժմյան Աշաղու և Շիհարջիկ գյուղերն իրարից բաժանող լեռան վրա պահպանված են երկու հին բերդերի ավերակներ, որոնք միացած են իրար։ Մեկը կոչվում է Կըր-կալա կամ Ղըրղալա[2], իսկ մյուսը՝ Կըզ-կալա (հայերեն՝ Աղջկաբերդ)։ Աշաղուի մոտերքում այլ բերդի ավերակներ չկան։ Ուստի մենք համոզված ենք, որ Կըր-կալան համապատասխանում է նախ-

---

[1] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 335—336։

[2] Ըստ Րաֆֆու Կըր-կալա բերդը կոչվում էր նաև Աշաղուի բերդ («Դավիթ բեկ», Երևան, 1941, էջ 296)։

կին Կկոց քար բերդին։ Դրա համար հաշվի ենք առնում ոչ միայն նրա Աչաղուի մոտ գտնվելը, այլև հնչունական նմանությունները («Կկոց»-ը հավանաբար աղավաղվելով դարձել է «Կըր»)։ Օրբելյանի հիշատակած դեպքերից ևս կարելի է նույն եզրակացությանը հանգել։ Այսպես, Կկոց քարը առնելուց հետո, գիշերով թշնամին գրավում է Բաղաբերդը։ Պետք է ենթադրել, որ Կկոց քարը Բաղաբերդի համար ծառայում էր որպես նախադուռ։ Տեղանքին ծանոթ մարդը անկասկած կասեր, որ Կըր-կալան փակում է արևելքից դեպի Բաղաբերդ տանող ճանապարհը։

Սյունյաց թագավորության գլխավոր բերդերից էր «Բղենոյ» բերդը։ Գոյություն ուներ և նույնանուն գավառ (տե՛ս Օրբելյան, էջ 13, 245)։ Ալիշանն իր «Սիսական» աշխատության մեջ (էջ 278) գրեթե բոլորովին չի լուծում Բղեն բերդի և գավառի տեղադրության հարցը։

Օրբելյանն իր պատմության խէ գլուխը վերնագրելով «Վասն շինութեան Նորավանից որ ի գաւառին Բղենոյ» (էջ 245), գրում է. «Գնացեալ (ոմն Ստեփաննոս—Թ. Հ.), ապա ի թիկանց կուսէ Կատարոյ վանից. և գտեալ տեղի մի յոյժ գեղեցիկ և վայելուչ՝ ի մէջ երկու ձորոց ի վերայ հարթ ուսոյ միոյ, սկսանի շինել եկեղեցի օժանդակութեամբ Հրահատայ իշխանի. և կատարէ զնա, և այլ ևս գաւիթս և սրահս եկեղեցւոյն և բնակութիւն կրօնաւորաց» (էջ 245)։

Կատարի վանքը, որ հիշատակում է Օրբելյանը, գտնըվում էր արևմտյան Բաղքի (Աճեն) հարավային սահմանի մոտ, Բեխ գյուղի դիմաց, Ողջագետից հազիվ երկու կիլոմետր հեռու մի լեռան դեպի հարավ նայող լանջին։ Վանքի թիկունքը, որտեղ Ստեփաննոսը կառուցել է Նորավանից վանքը, անկասկած նայում էր դեպի հյուսիս։ Հետևապես, Բղեն գավառը ընկած էր Կատարի վանքից հյուսիս։ Մի ուրիշ տեղ Օրբելյանը գրում է. «Առին (Զաքարեն և Իվանեն—Թ. Հ.) ...զՍիսիան, զՈրոտն, զԲորոտն, զԲղեն, զԲարկուշատ» (էջ 392)։

Ինչպես տեսնում ենք, բերդերի թվարկությունը կատարված է հաջորդական կարգով՝ արևմուտքից արևելք ուղղությամբ, ըստ որի ամենաարևմտյանը Որոտնն է, իսկ ամենա-

արևելյանը՝ Բարկուշատի բերդը։ Ուստի Բղեն և Բորոտն բերդերը պետք է որոնել Բարկուշատ և Որոտն բերդերի միջև։

Օրբելյանի մի երրորդ վկայությունն ավելի է ճշտում Բղեն գավառի աշխարհագրական դիրքը. «Եւ ծագեաց խաղաղութիւն, որպէս արեգակն ի մէջ գիշերի. և նախ յանդիման լինի Բաշուին և այլ գլխաւորացն. և ի նոցանէ ևս առեալ օգնութիւն՝ էառ և թափեաց զերկիրն Որոտան բովանդակ մինչ ի սահմանսն Բորոտնայ և Բղենոյ, յորում և կայր ընդաւեր աթոռն Սիւնեաց Տաթև» (էջ 411)։

Հայտնի է, որ Որոտան երկիրը հաճախ հիշվում է նաև 14—15 դարերում։ Նրա արևելյան սահմանը համընկնում էր նախկին Ծղուկքի արևելյան սահմանին։ Ուստի Օրբելյանի՝ վերը բերված վկայությունից պետք է հասկանալ, որ Որոտան երկրի ամենաարևելյան շրջան հանդիսացող Տաթևից արևելք էին գտնվում Բորոտն ու Բղեն գավառները։

Ամփոփելով Բղեն գավառի դիրքի վերաբերյալ մեր ասածները, կարող ենք ասել, որ նա գտնվում էր Բաղքի, Ծղուկքի, Հաբանդի և Քաշունիքի սահմանագլխին՝ հավանաբար համապատասխանում էր հենց Բաղքի (Աճենի) հյուսիսային մասին։

Վերջում նկատենք, որ Բղենը սոսկ աշխարհագրական շրջան չէր, այլ նաև, հավանաբար, տերիտորիալ-վարչական միավոր, որտեղ իշխում էին առանձին իշխաններ։ Այս եզրակացությանն ենք հանգում, նկատի ունենալով Օրբելյանի երկու վկայությունները, որոնցից մեկի մեջ (որն արդեն մեջ ենք բերել) Բղենում հիշատակվում է Հրահատ իշխանը, իսկ երկրորդում՝ Խոսրովիկ։ Վերջինիս մասին պատմիչը ասում է. «Դարձեալ յետ մի ամի, ի 553 թուականին (1104 թ.) առաւ Որոտն. և ի 554-ի (1105 թ.) առաւ և Բղեն. և գերեցաւ Խոսրովիկ իշխանն. եւ ի սուր սուսերի մաշեցան բազմութիւնք քրիստոնէից, և բնաւին յաւեր անցաւ տունն Բաղաց...» (էջ 334)։

Բերված վկայության մեջ հիշատակված է, իհարկե, Բղեն բերդը, բայց դա չի խանգարում, ենթադրելու, որ Բղենում գտնվող Խոսրովիկը հենց նույն գավառի իշխողն էր։

## 5. Ծղուկք կամ Սյունիք գավառ

*Ծղուկք գավառը սահմանափակված էր արևելքից Աղահեճքով և Հաբանդով՝ բնական սահմանագիծ ունենալով այժմ Իշխանասար կոչվող լեռները, արևմուտքից՝ Ճահուկով և Վայոց ձորով (սահմանն անցնում էր Սյունյաց լեռների ջրբաժան գծով), Հարավից՝ Բաղք, Ձորք, Գողթն և Երնջակ գավառներով, որոնց հետ բնական սահմանը Բարկուշատ լեռնաշղթայի Գաղբույլ և Դեմիր-դաղ գագաթների միջև ձգվող հատվածն էր*[1]*։ Հյուսիսից Ծղուկքի հարևանը Արցախի Ծար գավառն էր. նա այս մասում իր մեջ էր ընդգրկում նաև Տրտուական (այժմ Թարթառ) գետի վերնագավառը։ Ծղուկքի հյուսիսային կեսը, ինչպես մենք տեսանք, Սյունյաց թագավորությունից դուրս էր գտնվում։ Ուստի Ծղուկք գավառ ասելով մենք նկատի ունենք միայն նրա հարավային մասը, որը մըտնում էր թագավորության տերիտորիայի մեջ։*

*Գավառիս անվան և կարգի մասին Օրբելյանը գրում է. «Իսկ գաւառք ունի երկոտասան. առաջինն որ ունի զբուն գահ իշխանացն և հայրապետաց՝ Ծղուկ գաւառ, անուանեալ ի Ծղկայ դաւառապետէ»*[2]*։*

*Օրբելյանի կողմից գրի առնված ավանդությունը, ըստ որի իբր Ծղուկ անունն առաջացել է Ծղուկ գավառապետի անունից, պատմական հիմքեր չունի։ Հավանական պետք է համարել Ծղուկ(ք) անվան էթնիկական ծագումը։*

*Սյունյաց իշխանների ոստանն այս գավառում գտնվելու հետևանքով այն հաճախակի կոչվել է նաև «Սիւնիք» կամ «Սիսական»*[3]*։ 10—11-րդ դարերում մեր պատմիչների մոտ այս անուններն ավելի հաճախ են հիշատակվում, քան Ծղուկքը։*

*Հետագայում Սիսական անունը, փոփոխման ենթարկվելով, դարձել է Սիսիան, որը Հայկական ՍՍՌ-ի շրջաններից մեկի անունն է և մոտավորապես համապատասխանում է նախկին Ծղուկքի դաշտային մասին։*

---

[1] *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսական, էջ 206։*

[2] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 12։*

[3] Ղ. Ալիշան, *Սիսական, էջ 207։*

*Տաթևի եպիսկոպոսական աթոռին տրվող հին հարկացուցակում Ծղուկը բաժանված է երկու մասի՝ Ծղուկի և Այլախի, որոնցից առաջինում հիշատակվում է 75 գյուղ, իսկ երկրորդում՝ 26*[1]*։ Այլախը, բացի նշված հարկացուցակից, Օրբելյանի պատմության, ինչպես և մյուս հին ու նոր աղբյուրների մեջ չի հիշատակվում։ Դա պետք է բացատրել նրանով, որ եկեղեցական վիճակաբաժանումը չէր համընկնում քաղաքացիական վարչական-տերիտորիալ բաժանման հետ։*

*Ալիշանի կարծիքով (որի հետ միանում ենք) Այլախ գավառը համապատասխանում է հետագայի Բազարքենդին, որն ընկած է Բազարչայ գետի աջ կողմում, Ծղուկք գավառի հյուսիս-արևմտյան մասում*[2]*։*

*13-րդ դարից սկսած Ծղուկք գավառը հաճախակի է հիշատակվում Որոտն անունով։*

*Ծղուկը բացի գահագլուխ իշխանների ոստանը լինելուց, հանդիսանում էր Սյունյաց աշխարհի կրոնական կենտրոնը։ Ծղուկք գավառի Շաղատ գյուղաքաղաքը Սյունյաց եպիսկոպոսների աթոռանիստն էր։ Եպիսկոպոսական աթոռն այստեղ մնաց 4-րդ դարի վերջերից մինչև 8-րդ դարի վերջը կամ 9-րդ դարի սկիզբը, այսինքն՝ մինչև այն ժամանակ, երբ Սյունյաց տեր Վասակը նահապետության աթոռը հաստատեց Վայոց ձորում։ Հենց այդ ժամանակներից սկսած Շաղատը դադարում է եպիսկոպոսանիստ լինելուց, և շատ չանցած եպիսկոպոսական աթոռը հաստատվում է Տաթևում*[3]*։*

*Շաղատի վարդապետարանից էին դուրս եկել Սյունյաց Պետրոս եպիսկոպոսը՝ Քերթող մականվանված (5-րդ դարի վերջերին), Ստեփաննոս Իմաստասերը և ուրիշներ*[4]*։*

*Տաթևի եպիսկոպոսական թեմի հին հարկացուցակի մեջ Ծղուկքում հիշատակված 101 գյուղերից շատերը մինչև այժմ պահպանվել են։*

---

[1] *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 509 և 511։*

[2] *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսական, էջ 208։*

[3] *Տե՛ս նույն տեղը։*

[4] *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 39—40, 89—90։* Ղ. Ինճիճյան, *Հնախօսութիւն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի, հ. երրորդ, Վենետիկ, 1835, էջ 87—88։* Ալիշան, *Սիսական, էջ 208։*

*Այժմ կանգ առնենք Ծղուկք գավառի մի քանի պատմական վայրերի վրա։*

Շաղատ: *Հաճախակի կոչվում է քաղաքավան։ Մինչև 9-րդ դարի սկիզբը հանդիսանում էր Սյունյաց գահագլուխ իշխանների ոստանը։*

*Այժմ այդ նույն անունն է կրում Սիսիանի շրջանի գյուղերից մեկը։ Այժմյան Շաղատ գյուղը գտնվում է Բազարչայ (Որոտան) գետի աջ կողմում, Անգեղակոթ գյուղի դիմաց, թեքակղզիաձև հարթության վրա և պատմական Շաղատ քաղաքավանից մի քիչ ավելի հարավ է տեղադրված։*

*Նայելով Սյունյաց աշխարհի քարտեզին, դժվար չէ տեսնել, որ Շաղատն ուներ դիրքային որոշ առավելություններ։ Նախ՝ նա գտնվում էր Սյունյաց աշխարհի կենտրոնում, երկրորդ՝ նրա մոտով էին անցնում Սյունիքում հայտնի երկու ճանապարհները, որոնցից մեկը տանում էր դեպի Վայոց ձոր և Այրարատ, իսկ մյուսը՝ Նախիջևան և Վասպուրական։*

*Շաղատի իշխանանիստ դառնալու ժամանակի մասին չկան ստույգ տեղեկություններ։ Այդ մասին եղած առաջին վկայությունը վերաբերում է 4-րդ դարի երկրորդ կեսին։ Մովսես Կաղանկատվացին և Ստեփաննոս Օրբելյանը պատմում են, որ Սյունյաց Անդոկ իշխանը գահն իջեցնելու պատճառով դժգոհելով Շապուհ երկրորդից, ավարի է ենթարկում Պարսից Տիզբոն մայրաքաղաքը և գալիս Սյունիք։ Այստեղ նա եկեղեցիների և գյուղաքաղաքների ամբողջ հարստությունները հավաքում է Շաղատի եկեղեցում և հողով ծածկում, իսկ ինքը թողնելով Սյունիքը գնում է Թեոդոս կայսրի մոտ*[1]*։ Նրա որդի Բաբիկը 25 տարուց հետո, Շապուհից ստանալով իր հոր իշխանության իրավունքները, վերադառնում է Սյունիք և բաց անում Շաղատի եկեղեցին*[2]*։ Բաբիկի օրոք ևս իշխանանիստը Շաղատն էր («...ապա անցեալ (Բաբիկը—Թ. Հ.) ի գաւառն Ծղկաց՝ հաստատէ յաւանն ի շինանիստն Շաղատայ»)*[3]*, իսկ նրա եկեղեցին՝ Սյունյաց եպիսկոպոսանիստը. «Եւ դարձեալ՝ երա-*

[1] *Տե՛ս* Մովսես Կաղանկատվացի, *Պատմութիւն Աղուանից աշխարհի, էջ 121—122։* Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 30—34։*

[2] *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 37—43։*

[3] *Նույն տեղը, էջ 41—42։*

նելույն տեառն Բաբկայ՝ Սիւնեաց տեառն, հրամայեալ զի նախաթոռ լինցին յամենայն Սիւնիս սպասաւոր քահանայք և հաւատացեալ ժողովրդականք պաշտօնեայք սրբոյ եկեղեցւոյն Շաղատայ իբրև մայր եկեղեցեաց և մայրաքաղաք ամենայն աշխարհին Սիւնեաց»[1]։ Որպես այդպիսին Շաղատը մնում է մինչև 8-րդ դարը։

Ալիշանը հնարավոր է համարում, որ Շաղատի վանքը հենց «Սիւնի» վանքը լինի։ Այդ կարծիքը հիմնավորելու համար նա չունի ղորավոր փաստեր[2]։ Մենք կարծում ենք, որ «Սիւնի» վանքը համապատասխանում է այժմյան Սխխան[3] ավանում գտնվող Ս. Հովհաննես եկեղեցուն։ Վերջինս իր վրա կրում է խոր հնության դրոշմը. Նրա քիվերից տեղումների ժամանակ թափվող ջուրը դարերի ընթացքում գրանիտյա հիմքի քարերի վրա առաջացրել է 2—3 և նույնիսկ 5 սմ խորությամբ բազմաթիվ փոսիկներ։ Այդ տաճարը, որ այժմ ևս կանգուն է, ունի ճարտարապետական հրաշալի ոճ։ Այն կառուցվել է 7-րդ դարում և նման է նույն դարի մյուս տաճարներին, հատկապես՝ Հռիփսիմեի տաճարին։

Շաղատը որպես իշխանանիստ, բնականաբար, ուներ և իր բերդը։ Այդ մասին Սյունյաց տան պատմիչը հաղորդում է. «Եւ բազում աւարաւն եկեալ (Մրվանը—Թ. Հ.) ի Սիւնիս ամրանայ ի բերդագիւղն Շաղատու. և կամէր զայն ևս ապականել զգեղեցիկ աշխարհն Սիսական. և կուտեալ զզօրսն ի գաւառին Ծղկաց ի նմին տեղւոջ»[4]։

Այդ բերդի մնացորդներն այժմ պահպանված են։ Նրանք գտնվում են այժմյան Շաղատ գյուղի արևելյան մասում բարձրացող երկու բլուրների շրջանում։

Շաղատ գյուղից քիչ հեռու, ինչպես տեղեկացնում է Լա-

---

[1] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 48։

[2] *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսական*, էջ 212։

[3] *Սխխան ավանը գտնվում է Որոտան գետի ափերին, Բռնակոթ գյուղի դիմաց, Շաքի և Աղուդի գյուղերի միջև։ Նրա հյուսիսային կողմում բարձրացող բլրի վրա պահպանված է հին բերդի ավերակներ, որոնք, մեր կարծիքով, նախկին Սյունի բերդի մնացորդներն են։*

[4] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 158։

լայանը, նրա հյուսիսային կողմում նկատելի են մի ուրիշ հին բերդի ավերակներ[1]։

**Որոտն—գյուղ, բերդ և վանք:** Լորաձորի գետաբերանի և Վաղուդի գյուղի միջև, Որոտան գետի աջ և ձախ ափերին են գտնվում Սյունյաց աշխարհի նշանավոր վայրերից մեկի՝ Որոտն բերդի և վանքի ավերակները։ Որոտնը հնում ավելի հայտնի էր միայն իր բերդով, իսկ հետագայում, հատկապես 14—15-րդ դարերում, հռչակվում է նաև իր վանքով։

Որոտն բերդը, դեռևս 5-րդ դարից սկսած, հանդիսանում էր Պատմական Հայաստանի նշանավոր բերդերից մեկը։ Եղիշեն թվարկելով ապստամբների կողմից գրավված Հայաստանի մի քանի ամենահռչակավոր բերդերը (Արտաշատ, Գառնի, Անի, Արտագերս և այլն), նրանց թվում հիշատակում է նաև Որոտնը[2]։

Թագավորության ժամանակներում Որոտնը նշանավոր բերդ էր։ Կապան քաղաքն ավերելուց հետո, Օրբելյանի վկայությամբ, թուրք-սելջուկները 1104 թ. գրավում են Որոտնը։ «Դարձեալ յետ մի ամի ի 553 թուականին (1104 թ.) առաւ Որոտն...»։ 1211—1219 թթ. Որոտն բերդը իր շրջապատով գրավում են Զաքարե և Իվանե եղբայրները[3]։ Մոնղոլ-թաթարների կողմից երկիրը նվաճելու ժամանակ Սմբատ Օրբելյանը զորավար Բաչուի համաձայնությամբ նորից իր ձեռքն է վերցնում Որոտնա երկիրը և նրանում Որոտն բերդը[4], ապա այն հանձնում է իր եղբայր Տարսայիճին։

Որոտն բերդի ավերակները գտնվում են նույնանուն վանքի մոտ, անմիջապես Որոտանի աջ ափին բարձրացող լեռան վրա, որի երեք կողմերը պատած են գահավեժ ժայռերով. սրանք դեպի առաջ թեքվելով, առաջացնում են մի փոքրիկ հարթություն։

---

[1] Եր. Լալայան, *Զանգեզուրի գաւառ*, հ. Ա, Թիֆլիս, 1898, էջ 86։

[2] Եղիշե, *Վարդանանց պատմությունը*, Երևան, 1946, էջ 150։

[3] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 392. «Առին ի 660 թուին զՄինխս, զՈրոտն, զԲորոտն, զԲղեն, զԲարկուշատ»։ Վարդան վարդապետ, *Հաւաքումն պատմութեան*, էջ 140—141. «...և ի վեցհարիւր վաթսուն և ութ թուին առնու զՈրոտն, և զմերձակայ գղեակսն, թէպէտ ոչ զբովանդակ»։

[4] Մ. Չամչյան, *Պատմութիւն Հայոց*, հ. Գ, Վենետիկ, 1786, էջ 246։

*Բերդի բաց կողմում պահպանված են պարսպի մնացորդները։ Այստեղ փորված է եղել մի ստորերկրյա անցք (ջուր բերելու նպատակով), որն այժմ քանդված է*[1]։

*Պատմական Որոտն գյուղի ավերակները գտնվում են բերդի ստորոտում Մելիք Թանգու կառուցած կամուրջից քիչ վերև, Որոտան գետի ձախ ափին, իսկ այդ ավերակներին կից էլ՝ այժմյան Ուրուտ գյուղն է։ Որոտն բերդից հարավ-արևմուտք մի գեղադիր լեռնալանջի վրա գտնվում է Որոտն վանքը։ Վանքի պարսպի մի զգալի մասը կազմում են բնական ժայռերը։ Նրա հատակը ամբողջապես ծածկված է տապանաքարերով։ Վանքի հարավային մասում բարձրացող սյուն-զավազանն այժմ ընկած է։ Որոտնա վանքը մի բարդ կոմպլեքս է։ Նրա ավերակները պահպանվում են պետության կողմից։*

Տաթև: *Ծղուկք գավառի ամենաարևելյան մասում էր գտնվում Տաթևի շրջանը, որն այժմ մտնում է Գորիսի շրջանի մեջ։*

*Տաթևի շրջանի միջով անցնում է Տաթև փոքրիկ գետակը, որն Ալիշանի կարծիքով համապատասխանում է Օրբելյանի մոտ հիշատակված Գինական գետին*[2]։ *Տաթևի մեջ արևմտյան կողմից թափվում է մի ուրիշ գետակ։ Վերջինս, որը ոմանք անվանում են Ջղարվան, մեր կարծիքով Օրբելյանի հիշատակած (էջ 299, 328, 329, 330) Ցուրագետն է, որովհետև հիշատակություններից երևում է, որ Ցուրագետը գտնըվում էր Տաթևի շրջանում, որտեղ բացի Տաթև գետակից, շատ թե քիչ նշանավոր է միայն վերը հիշված վտակը։*

*Տաթևի վանքը տիրում էր մի ամբողջ շրջանի վրա, որը կարելի է անվանել Տաթևի շրջան։ Նրա բնական սահմաններն արևմուտքից կազմում էին Լորաձոր և Տաթև գետակների ջրբաժան լեռները, հյուսիսից՝ Որոտան գետի ձախ կողմում ձըգվող Եռագագաթ բարձրավանդակի դեպի գետն իջնող նախավերջին դարավանդը, արևելքից՝ Հաբանդ գավառի Խոտ և նրանից արևելք գտնվող Խոտանան գյուղերը Արամազդ (Կամբիլ) լեռան արևելյան լանջերին միացնող գիծը, իսկ հարավից՝ Արամազդ լեռը։*

---

[1] *Տե՛ս նաև* Եր. Լալայան, *Զանգեզուրի գաւառ, Հ. Ա, Սիսական, էջ 54*։

[2] Ղ. Ալիշան, *Սիսական, էջ 223*։

Տաթևի վանքն իր այդ հսկայածավալ կալվածքին տեր է դարձել ոչ միանգամից։ Նրա մի մասն առաջին անգամ Դավիթ եպիսկոպոսը 839 թվականին 10 000-ով գնել է Սյունյաց Փիլիպե իշխանից։ Սյունյաց տան պատմիչ Օրբելյանը դրա մասին եղած վավերագիրը տեղադրել է իր պատմության մեջ, տեքստը հետևյալն է.

«Ես Տէր Դաւիթ՝ շնորհօքն Աստուծոյ Սիւնեաց եպիսկոպոս, ի 288 թուականիս Հայոց (839 թ.) գնեցի զԱրծիւ ի տէր Փիլիպպէէ՝ Վասակայ որդւոյ, Սիւնեաց տեառնէ, իւր սահմանօք, լերամբ և դաշտիւ, ջրովն և ջրարբին և զարօտ երկիր, զարտ և զմարգ։ Եւ այս են սահմանք. յարևելից կողմանէ ուղեկիցքդ, որ ի Հարժեաց և ի Բերդականերէշոյ ի գետդ հատանի, և անտի ի բլուրդ որ ի շինագլխիդ. և անտի ջրթափուն յՍտերջաց զաւակ, և բնասեռիւդ ի Վարդանայ մարգի խոռն, և անտի յԱրծիւակատար. ի յարևմտից կողմանէ Լորաձորդ բնասարաւդ. և ի հարաւոյ կողմանէ Հարժիք, որ ի ճանապարհէդ և խուղդ ելանէ ձորովդ ի վայր ի Սևաջուրդ և ի վեր ի սարն՝ Վանաց ձորոյ սեռիւդ։ Ես տէր Փիլիպպէ առի զգանձս ի Տէր Դաւիթ՝ Սիւնեաց եպիսկոպոսէ, 10.000 դրամ, և ապսուարեցի զգիւղդ ի սուրբ խաչդ այդ սահմանովդ որ ի վճռիս գրեալ է...»[1]։

Դավիթ եպիսկոպոսի գնած կալվածքը, ինչպես երևում է, կազմում էր Տաթևի շրջանի մի զգալի մասը։

Ավելի ուշ՝ 906 թ., երբ կառուցվում է Պետրոսի և Պողոսի անունը կրող մեծ եկեղեցին, վանքի կալվածքները ավելի լայնացվում են և, որպես Տաթևի վանքի ժառանգական սեփականություն, հաստատվում են Սմբատ Ա Բագրատունի թագավորի, Հովհաննես կաթողիկոսի (Դրասխանակերտցի), Սյունյաց տերերի, Գագիկ Արծրունու և մի շարք այլ իշխանների ու հոգևորականների կողմից[2]։ Այս վավերագիրը հասել է Օրբելյանի ձեռքը, որն իր պատմության մի գլուխը վերնագրելով «Գիր վճռի շրջակայ սահմանին Տաթեւոյ», գրում է (բերում ենք կրճատումներով).

---

[1] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 205։

[2] Տե՛ս նույն տեղը, էջ 230—231։

«Եւ ընթերցաք զՀին նամակն զոր մեր Հարցն և Հաւուց գրեալ էին. և ծանեաք զժառանգութիւն սուրբ խաչիս և Հոգեւոր ամէրանցս որ ի մերում իշխանութեանս, և զսաՀման տեղւոյս զոր և մենք վերստին Հաստատեցաք և ընդարձակեցաք աստուածընկալ սուրբ խաչիս, և ամեն ժողովով գնացաք ոտիւք մերով, կտրեցաք զսաՀմանս շրջակայ որք են այսպէս։ Յարևմտից կողմանէդ սկսեալ ի մեծ դիտաւոր սարէդ Գազբոյլայ ջրաթափովն մինչ ի խոռին ճանապարհն որ Լորաձորին սաՀմանն է։ Եւ ի Հիւսիսոյ դեՀայ բնասեռովն ի վայր ի գետն Հանդէպ Խոտայ, և գետովն ի Խոտանան և անցեալ ընդ գետն՝ փոքր ձորակովն որ ելանէ յԱւազեաց խոռ ի խողաց բլուրկովն, նորին բարակ ճանապարՀովն բացաՀորինն, նուրբ, անջուր ձորակովն ի վայր ի Դեղնաձորն և ի կարմունջն, և ի կարմնջէն ի Քարաձորն. և Քարաձորին մեծ բնասեռովն ի սարն և ի բուն ճանապարՀն որ գայ սարովն ի Հարսնավազն, և Հարսնավազին ձորակովն զառ ի կողմն յեկեղեցին որ ի պառակոչ ճանապարՀին, և սալքարովն Հաւեալ զմեծ ձորովն ի միաւոր քարն որ կայ Հանդէպ յայն կողմն մեծ ձորոյն. և Հատանելով զմեծ տափն ի յերկայն խաչն և ջրաթափովն ի մեծ խոռն և ի ճանապարՀն որ գայ ի Բաղաց ձորոյ, և անտի ի նոյն լեառնն Գազբոյլ։

ԱՀա այս իսկ են սաՀմանք զոր ...գրեցաք և կնքեցաք մատանեաւ մերոյ արքայիս և կաթողիկոսիս և մեր իսկ»[1]։

Դժվար չէ տեսնել, որ Տաթևի վանքի սեփականությունը կազմող Ծղուկք գավառի արևելյան այդ շրջանի սաՀմանները վավերագրի մեջ թվարկված են աջից դեպի ձախ։ Ուրեմն նրա սաՀմանը սկսվում է Կազբել (Արամազդ) լեռներից Լորաձորի արևելյան ջրբաժանով, Որոտան գետի Հյուսիսով դեպի արևելք, մինչև Խոտանան գյուղը, թեքվում դեպի Հարավ-արևմուտք, ապա՝ արևմուտք և նորից միանում Կազբելին։ ԱՀա Հենց այս շրջանն է, որին մենք քիչ առաջ անվանեցինք Տաթևի շրջան և, նախօրոք նկատի ունենալով վավերագրի տեղեկությունները, նշեցինք նրա բնական սաՀմանները։

[1] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նաՀանգին Սիսական, էջ 231—232։

Տաթևի շրջանում գտնվում էին մի շարք գյուղեր՝ Հարժիք, Արծիվ, Բերդկանեբեշի, Տամալեկ, Արիտ, Տաթև, Ցուրաբերդ, Խոտ, Խոտանան, Սառնաքար, Բնունիք և այլն, որոնք պատկանում էին վանքին։

Բացի Տաթևի շուրջը տարածվող շրջանից, վանքը բազմաթիվ սեփական գյուղեր ուներ նաև Սյունյաց աշխարհի զանազան մասերում։ Լեոյի հաշիվներով, տարբեր ժամանակներում Տաթևի վանքին նվիրած գյուղերի և կալվածքների թիվը (ներառյալ նաև Տաթևի շրջանում գտնվող գյուղերը և կալվածքները) հասնում է 47-ի[1], որոնցից 25-ը գյուղեր էին[2], իսկ մնացածը՝ առանձին կալվածքներ։ Անհրաժեշտ ենք համարում թվարկել Տաթևի վանքի սեփականությունը կազմող գյուղերն ու կալվածքները՝ փակագծերի մեջ առնելով նվիրողների կամ գնողների անունները։ Շնհեր (Շահանդուխտ օրիորդ), Արծիվ և Բերդկանեբեշ (Դավիթ եպիսկոպոս), Տաթև (Փիլիպե իշխան), Նորաշինիկ (Հրահատ իշխան), Վաղավեր (Տիգրան նահապետ), Բեխ (անհայտ Ջևանշեր իշխանը հետո փոխում է իր Արուքս գյուղի հետ), Դարատափ (Սողոմոն եպիսկոպոս), Մաճ (Քուպղիդուխտ իշխանուհի), Կարճավան, Հարժիք, Խորասանշիբակ, Գոտող վանք (Սմբատ Բագրատունի Ա թագավոր), Ցողունի, Բնունիք, Ցուր, Ցուրագետն, Տանձատափ, Դեղձաձոր (Աշոտ իշխան Սյունի), Տաշու, Եղեգ (Բազաց իշխաններ), Ծածարտ, Քարատնի (տիկին Շուշան), Հալիս (Համազասպուհի իշխանուհի), Կոկոյս (Սմբատ իշխան), Աղուերծ, Հուբականխոռ (մյուս Փիլիպե իշխան), Տամալեկ (տիկին Սոփիա), Տեղ (Շահանդուխտ թագուհի), Բոլորաքար (Փարաջ իշխան), Գոգեվանք, Խոշտատայի տափ (Վասակ թագավոր), Գրուակ (նույնը), Շոռոթն (Խարբ, Արտավազ և Սուփան իշխաններ), Խոտ, Ծաղկիկ (Դլեն իշխան), Արիտ ավան (Սենեքերիմ թագավոր), Ջեռատի վանք (Հասան իշխան), մի գյուղ Բարկուշատում (անհայտ), Խողավանք (անհայտ), Ամբ-

[1] Լեո, *Իմ Ցիշատակարանը, Շուշի, 1890, էջ 159։*

[2] Լեոն Սարգսյան, *Մի քանի օր Արցախում և Սիւնիքում, Թիֆլիս, 1905, էջ 55։*



10—1351

*բավաքար (Աշոտ իշխան), Բորտի և Փեթիվանք (Տարսայիճ իշխան)*[1]։

*Վերջին ժամանակներում Տաթևին տրվեց Հալիձոր, Լձեն, Շնաթաղ և Լոր գյուղերը*[2]։ *Տարբեր ժամանակներում վանքին տրվել են նաև մի քանի մեծ այգիներ, առանձին հողեր, ջրաղացներ և այլն։*

*Բայց դրանցով չէին սահմանափակվում Տաթևի վանքի հարստություններն ու եկամուտները։ Տաթևի վանքը հսկայական չափերի հասնող հարկեր էր վերցնում Սյունյաց աշխարհի բոլոր գավառներից*[3], *անկախ նրանից, թե նրանք քաղաքականապես միաձույլ էին, թե՝ ոչ։*

*Ալիշանը ճիշտ կերպով նկատում է, որ Տաթևի եպիսկոպոսական թեմն ավելի հարուստ էր, քան Հայաստանի մյուս բազմաթիվ եպիսկոպոսությունները*[4]։ *Այդ հարստությունների մեծագույն մասը վանքը ձեռք էր բերել «նվիրատվությունների» միջոցով։*

*Բանը նրանում է, որ իշխանները նորանոր գյուղեր կամ կալվածքներ էին տալիս Տաթևին ոչ թե մեծահոգությունից կամ առատաձեռնությունից ելնելով, այլ նրանք ձգտում էին ավելի ամրացնել քրիստոնեական եկեղեցու հեղինակությունը և դրանով իսկ նպաստել իրենց քաղաքական իշխանությունն անխախտ պահելուն։ Իսկ ռամիկները ոչ միայն «առատաձեռն» և «մեծահոգի» չէին եկեղեցու նկատմամբ, այլև իրենց պայքարն ուղղում էին առաջին հերթին եկեղեցու դեմ։ 10-րդ դարի սկզբներին Սյունիքում ծագած գյուղացիական ապստամբությունը (որը հետագայում պարբերաբար կրկնվում է), բնականաբար, ուղղվեց Տաթևի վանքի դեմ, որը փորձում էր ճորտացնել սեփականություն ստացած Ցուրաբերդ, Տամալեկ, Ցողունի և այլ գյուղերի բնակիչներին։*

*Մենք տեսանք, որ Սյունիքում հիշատակվում է 148*

---

[1] *Տե՛ս* Լեո, *Իմ Յիշատակարանը, էջ 158—159։*

[2] *Տե՛ս նույն տեղը, էջ 158։*

[3] *Տե՛ս Տաթևին տրվող հարկերի հին ցուցակը* (Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, գլխ. ՀԳ, «Սիւնեաց երկոտասան գաւառաց հարկ եկեղեցւոյ ըստ հին սահմանին», էջ 509—523)։*

[4] Ղ. Ալիշան, *Սիսական, էջ 242։*

վանք, որոնցից նշանավորները՝ Տաթևը, Նորավանը, Վահանու վանքը և այլն, տիրում էին հսկայական կալվածքների։ Նրանցից յուրաքանչյուրում հոգևորականների թիվը հասնում էր հարյուրների, որոնց բարձր խավն իրենից ներկայացնում էր կալվածատերերի մի բանակ։

Տաթև գյուղ: 14-րդ դարից հետո եղած մի շարք աղբյուրներ, հետևելով Վարդան աշխարհագրին[1], Տաթև անվան առաջացումը կապում են Ստաթե առաքյալի անվան հետ[2]։

Շահնազարյանն իր «Սիւնիք» աշխատության մեջ[3] միանգամայն ճիշտ կերպով ժխտում է Վարդան աշխարհագրի և ուշ շրջանում նրան կրկնողների այն սխալ տեղեկությունները, որոնց համաձայն, իբր Տաթևն առաջացել է Ստաթե առաքյալի անունից։ Շահնազարյանի համար հիմնական կռվան է ծառայում այն փաստը, որ Ստաթե անունը մինչև 14-րդ դարը ոչ ոք չի հիշատակում, մինչդեռ Տաթևը վաղուց հայտնի էր։ Շահնազարյանի կարծիքով այդ սխալը Ճահուկում և Երընջակում հաստատված ունիթորների գործունեության հետևանք է, որոնք հավանաբար ցանկացել են Տաթևը կապել հռոմեական եկեղեցու ս. Ստաթե առաքյալի անվան հետ։ Ալիշանը, չժխտելով Շահնազարյանին, գտնում է, որ Տաթևը հին հայկական անուն է և մինչև 9-րդ դարը աղբյուրների մեջ չհիշատակվելը չպետք է կասկածանքի տեղիք տա, քանի որ Սյունիքում կան բազմաթիվ այլ վայրեր, որոնք ևս երկար ժամանակ մնացել են մթության մեջ («Սիսական», էջ 224)։ 9-րդ դարում, երբ Սյունյաց եպիսկոպոսական աթոռը հաստատվեց

---

[1] Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվան մատենադարան, ձեռագիր № 45, էջ 4 (բ). «Մեծն Սիւնիս. և փոքր Սիւնիս. ուր կայ սուրբ աթոռն եւաթէի առաքելոյն որ կոչի տաթև»։ Նույն կերպ է ասված նաև մյուս ձեռագրերում։

[2] Առաքել Դավրիժեցի, Պատմութիւն, էջ 252։ Ժամանակագրութիւն Գրիգոր վարդապետի Կամախեցւոյ կամ Դարանաղցւոյ, մասն երկրորդ, Երուսաղէմ, 1915, էջ 287։ Սիմեոն Երևանցի, Ջամբռ, Վաղարշապատ, 1873, էջ 55, և այլն։

[3] Տե՛ս Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, Փարիզ, 1859 թ., էջ 31—33։

*Տաթևի վանքում, այն նշանավոր դարձավ և սկսեցին համախակի հիշատակել և՛ վանքը և՛ թե գյուղը*[1]*։*

*Տաթև գյուղն այժմ էլ կա։ Նա գտնվում է Տաթև գետակի ձախ ափին, Որոտան գետից ոչ հեռու՝ Տանձատափ գյուղի դիմաց։ 844 թ. Սյունյաց տեր Փիլիպեն Տաթև գյուղը նվիրում է վանքին, որը երկար դարերի ընթացքում մնում է վանքի սեփականություն։*

Տաթևի վանք և եպիսկոպոսարան։ *Տաթևի վանքը գտնըվում է Համանուն գետակի աջ ափին, մի փոքրիկ բարձրավանդակի վրա։*

*Օրբելյանի հիշատակության համաձայն դեռ Ներսեսի և Սահակի ժամանակներից (4—5-րդ դարեր) Տաթևի տեղում կար մի անշուք եկեղեցի, որին սպասարկում էին շատ քիչ թվով կրոնականներ. «Եւ էր ի տեղին՝ ի վերայ բարձրագոյն քարին եկեղեցի խրթին անտաշ վիմօք կրաշաղախ ձուլեալ՝ յոյժ ի հին ժամանակաց՝ յաւուրց անտի սրբոցն Ներսեսի և Սահակայ. և սակաւ կրօնաւորք մշտաջան ճգնութեամբ բնակէին ի նմա. և էր տեղին հեռի յամենայն հինից թշնամեաց...» («Պատմութիւն նահանգին Սիսական» էջ 202)։*

*Նկատի ունենալով Տաթևի և նրանից ոչ հեռու գտնվող Թանահատի վանքերի բարձր դիրքն ու կտրված լինելը, ինչպես նաև նրանց հնությունը, կարծում ենք, որ նրանք մինչև քրիստոնեությունը եղել են մեհենատեղեր*[2]*։*

*Սյունյաց իշխանական տան պատմիչին հայտնի չէ, թե կրոնավորները երբվանից սկսած հաստատվեցին Տաթևում և սկզբնական շրջանում նրանք ինչ գործեր են կատարել. «...միայն ի Տէր Գէորգեայ և այսր գտայ նշան և կացի ծանօթ ամենայն որպիսութեանց նոցա. այլ զառաջինսն ո՛չ գիտեմ զի*

---

[1] *Ավանդության համաձայն ճարտարապետը, ավարտելով Տաթևի եկեղեցու կառուցումը, բարձրացել է գմբեթի վրա, ամրացրել է խաչը, ապա տեսնելով գետի խոր կիրճը, վախեցել է և աստծուց խնդրել՝ թևեր տալ մյուս ափը թռչելու համար։ «Հոգին սուրբ տայ թև» և ձեռքում բռնած տախտակներն իբր անմիջապես փոխարինվել են թևերի ու թռել է։ Դրանից էլ առաջացել է Տաթև անունը (տե՛ս Լեո, Իմ Յիշատակարանը, էջ 163։ Լալայան Ե., Զանգեզուրի գաւառ, Հ. Ա, էջ 24)։*

[2] *Տե՛ս Ղ. Ալիշան, Սիսական, էջ 225։*

ոչ գոյը յիշատակ ինչ, բայց գիտեմ զի բազում ժամանակօք բնակեալ էին անդ»[1]։

Գեվորգը եպիսկոպոս էր 9-րդ դարի երկրորդ քառորդում[2]։ «Բազում ժամանակօքը», որ շեշտված է վկայության մեջ, մեր կարծիքով պետք է հասկանալ դարերի տևողություն, որովհետև դրանից (9-րդ դար) ավելի քան մեկ դար առաջ Աղվանից իշխան Վարազ-Տրդատի դուստր Շահանդուխտի հուշագրից երևում է, որ դեռևս նրա ժամանակ (7-րդ դարի վերջերին կամ 8-րդ դարի սկզբներին) Տաթևի եկեղեցին արդեն նշանավոր էր դարձել։ Բերենք Շահանդուխտի հուշագիրը. «Եւ կոչեալ զերանելի եպիսկոպոսն Սիմեաց՝ յանձնեցի նմա զիս, զամենայն ինչս իմ եւու ի ձեռս նորա՝ զկէս մասն բաշխելի կարօտելոյ և զկեսն տալ ի սուրբ եկեղեցին Տաթևոյ։ Նաև զտեղիքս զայս աւանդեցի սուրբ եկեղեցւոյն ամենայն ձորովս, որ ի Շնհէրոյ սահմանէն ի վեր մինչ ի Գինական գետն»[3]։

Պարզ է, եթե Տաթևի եկեղեցին արդեն նշանավոր չլիներ, Շահանդուխտ օրիորդն այդքան կալվածքները նրան տալու փոխարեն կտար մի ուրիշ ավելի նշանավոր եկեղեցու։

Տաթևի եպիսկոպոսարանի հաստատության և շինության ժամանակը սկսվում է Գեվորգի հաջորդ՝ Դավիթ եպիսկոպոսի ժամանակից, որը 839 թ. Սյունյաց Փիլիպե իշխանից 10 000-ով գնել է Տաթևի վանքի սահմանակից տարածությունները[4]։

Դավթի և նրա հաջորդ եպիսկոպոսների օրոք Սյունյաց իշխանները, ինչպես տեսանք, Տաթևի վանքին են տվել բազմաթիվ գյուղեր՝ իրենց հանդերով, անտառներով ու ջրերով։

Օրբելյանի վկայությամբ Հովհաննես եպիսկոպոսը տեսնելով, որ Տաթևի հին եկեղեցին խարխուլ է ու փոքր, ձեռնամուխ է լինում մի մեծ կաթողիկե կառուցելու գործին (Օրբելյան, էջ 222)։ Նա Սյունյաց իշխանների օժանդակությամբ

---

[1] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 204։

[2] Օրմանյանի հաշիվներով Գեվորգը եպիսկոպոս է կարգվել 832 թվականին և պաշտոնավարել է 8 տարի («Ազգապատում», մասն առաջին, Կ. Պոլիս, 1912, էջ 1066)։

[3] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 165—166։

[4] Տե՛ս նույն տեղը, էջ 205։ Ղ. Ալիշան, Սիսական, էջ 226։

895 թ. դնում է այդ նոր եկեղեցու հիմքը։ Եկեղեցու հիմնադրման վերաբերյալ Հովհաննես եպիսկոպոսը նրա պատի վրա թողել է մի արձանագրություն, որը գրի է առնված Օրբելյանի մոտ։ Բերում ենք այդ արձանագրությունը. «Յամին յորում թուականն Հայոց 344 էր (895 թ.), և զատիկն ի նաւասարդի ի 4, ես Տէր Յովհաննէս որ երկրորդ կարգեցայ եպիսկոպոս Սիւնեաց զկնի Տեառն Սաղոմոնի, արարի սկիզբն շինուածոյ եկեղեցւոյս»[1]։

Եկեղեցու կառուցումը տևում է 11 տարի, և ավարտվում է 906 թվականին[2]։ Եկեղեցին կոչվեց Պետրոս և Պողոս առաքյալների անվամբ. նա մինչև օրս էլ կիսականգուն է։ Նույն Հովհաննես եպիսկոպոսի օրոք կաթողիկե եկեղեցու հարավային կողմում կանգնեցվում է մի սյուն, որն անվանվում է «Սրբոյ երրորդութեան» և ունի 30 կանգուն բարձրություն[3]։ Այս սյուն-գավազանը, որն այժմ էլ կա, իրենից ներկայացնում է քարե ութանիստ մի պրիզմա և գլխին կրում է քանդակած խաչ։

Տաթևի մայր եկեղեցու շքեղության մասին հիացմունքով է խոսում Սյունյաց տան պատմիչը. «Եւ այսպէս կատարեալ զեկեղեցին կամար երկնանման գմբէթայարակ, ճեմարան իմն հրեշտակաց և քաւարան մարդկան, ի տաշածոյ վիմաց և ի քերածոյ քարանց, գաղատոսաշէն իմն յարմարեալ ակնախտիղ տեսողաց ի 100 կանգնոյ բարձրութիւն նորա և ի 48 կանգնոյ երկայնութիւն նորա և ի 24 կանգնոյ լայնութիւն նորա. ունելով յինքեան չորս խորանս բաց յաւագ խորանէն»[4]։

Ճանապարհներից զուրկ լեռնային այդ բարձրավանդակի վրա ճարտարապետական նման կոթողի կառուցման համար կրկնապատիկ աշխատանք էր պահանջվում։ Բացի եկեղեցուց, նույն Հովհաննես եպիսկոպոսը կառուցում է նաև ամբարանոցներ, գործատներ, գրատներ, սրբատներ, Սյունյաց իշ-

---

[1] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 224։

[2] *Տե՛ս նույն տեղը, էջ 234 («Եղև այս ի թուականութեանս Հայոց 355»), էջ 225 («Ահա զայս իսկ ասարտեալ զամս մետասան...»)։*

[3] *Այդ սյուն-գավազանի հետ կապված՝ ժողովուրդն ունի մի քանի ավանդություններ (տե՛ս* Լեո, *Իմ Յիշատակարանը, էջ 134—136,* Էմիր, *Տաթևի վանքը («Արարատ» 1897 թ., գիրք երկրորդ, էջ 29)։*

[4] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 224։*

խանների ու եպիսկոպոսների համար դամբարանների տեղ և այլն[1]։

Հովհաննեսից հետո եպիսկոպոս կարգված Հակոբ Դվինեցին Սյունյաց նահապետ Փիլիպեից գնելով Վարարակի ջուրը՝ բերում է վանքի դիմաց՝ Ցաքուտ կոչված վայրը, և այն դարձնում վանքապատկան այգի[2]։

Բացի Պետրոս-Պողոսի եկեղեցուց նրա մոտ կառուցված է նաև մի ուրիշ ավելի փոքր եկեղեցի՝ Գրիգոր Լուսավորչի անվամբ։ Սա երկու անգամ կործանվել է, երկրորդ անգամ վերակառուցել է Ստեփանոս Օրբելյան պատմիչը, որը պատի վրա թողել է իր հետևյալ արձանագրությունը. «ՁՏէր Ստեփաննոս Մետրոպօլիտ Սիւնեաց որ է Պրոտոֆռանտէս Հայոց Մեծաց, որդի մեծափառ իշխանին Տարսայիճի և շինող սուրբ եկեղեցւոյս, յիշեցէք ի Քրիստոս»[3]։

Անհրաժեշտ է նկատել, որ Տաթևի եկեղեցիների վրա, բացի քիչ առաջ բերված Հովհաննես եպիսկոպոսի և Ստեփանոս Օրբելյանի արձանագրություններից, ուրիշ արձանագրություններ չկան։ Լեոն այդ բացատրում է նրանով, որ այստեղ տեղի ունեցած դեպքերը, պատերի վրա արձանագրելու փոխարեն, գրանցվում էին գլխավորապես «Քէօթուկ» կոչված մատյանում[4]։

Թագավորության վերջին շրջանում Տաթևի հարստությունների ու 10 000-ի հասնող ձեռագրերը տեղափոխվում են Բաղաբերդ։ Այդ տեղափոխությունը կատարվել է հավանաբար, ինչպես նշել ենք, այն պատճառով, որ Տաթևը թագավորության սահմաններին մոտ էր գտնվում և ամեն դեպքում կարող էր հեշտությամբ կողոպտման ենթարկվել թուրք-սելջուկների կողմից։ Սակայն դա չի գալիս ասելու, որ Տաթևի դիրքն առհասարակ աննպաստ էր։ Այն ոչ միայն սոսկ վանք էր, այլև՝ ամրոց։ Լեոն Սարգսյանը միանգամայն ճիշտ էր, երբ եպիսկոպոսարանի տեղափոխումը Շաղատ քաղաքավանից Տաթև բացատրում է գլխավորապես վերջինիս անմատ-

---

[1] Տե՛ս Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 225։

[2] Տե՛ս նույն տեղը, էջ 254—255։

[3] Արձանագրության տեքստը տե՛ս Լևոն Սարգսյան, Մի քանի օր Արցախում և Սիւնիքում, էջ 50։

[4] Տե՛ս Լեո, Իմ Յիշատակարանը, էջ 151։

չելի և բնական ամրություններով[1]։ Վանքի հաստապատ պա-
րիսպները և նրանց աշտարակները, որոնք մինչև օրս կիսա-
քանդ վիճակում պահպանել են իրենց գոյությունը, կենդա-
նի վկաներ են այն բանի, որ Տաթևը վանք լինելով հանդերձ,
ուներ պաշտպանական խոշոր կառուցումներ։

«Իր ժամանակին Տաթևի վանքը հռչակված էր իբրև զո-
րեղ բերդ,—գրում է Լեոն Սարգսյանը,—այդ պատճառով հե-
ռու գավառներից անգամ ժողովուրդը հաճախ ապաստան է
գտել նրա հաստատակինդ պարիսպների ետևին։ Հեռավոր Գող-
թան գավառից անգամ փախչում էին Տաթևի վանքը»[2]։

Տաթևի վանքի բնական ամուր դիրքը ավելի կենդանի
պատկերացնելու համար չենք կարող խուսափել հայ խոշոր
վիպասան Րաֆֆու տված նկարագրության մեջբերումից.

«Վանքը շինված էր լեռնային դժվար մատչելի բարձրա-
վանդակի վրա, շրջապատված աշտարակներով և ամուր պա-
րիսպներով, որոնք դրսից նրան ավելի մի անառիկ բերդի նմա-
նություն էին տալիս։ Նրա առջևից ընկած էին անդունդի նման
խոր և մթին ձորեր, որոնց միջով գոռալով, որոտալով անց-
նում էր Որոտան գետը։ Շրջակա բոլոր լեռները, որոնց սուր
գագաթները կորչում էին ամպերի մեջ, պատած էին խուլ, ան-
անցանելի անտառներով։ Դեպի վանքը տանող ճանապարհ-
ները ընկած էին նեղ փապարների, սարսափելի կիրճերի մի-
ջով, որտեղից մի մարդ միայն կարող էր անց կենալ։ Մի հի-
սուն հրացանավոր բավական էր կանգնեցնել մի որևիցե բլու-
րի գլխին, որ թույլ չտային մի ամբողջ լեգիոնի մուտք գործել
դեպի վանքը։ Գուցե վանքի այդ անառիկ դրությունը, որ
պաշտպանված էր բնական ամրություններով, պատճառ տվեց
տեղափոխել այնտեղ Սյունյաց աշխարհի արքեպիսկոպոսու-
թյան մայր աթոռը, ժամանակի փոթորիկներից անվտանգ պա-
հելու համար»[3]։

Տաթևի վանքը Հայաստանի միջնադարյան ճարտարա-
պետական կարևոր կոթողներից մեկն է և, որպես այդպիսին,
պահպանվում է պետության կողմից։

---

[1] Լեոն Սարգսյան, *Մի քանի օր Արցախում և Սյունիքում, էջ 49։*

[2] *Նույն տեղում, էջ 55։*

[3] Րաֆֆի, *Դավիթ բեկ, Երևան, 1941, էջ 219։*

**Մեծ անապատ կամ Հարանց անապատ:** *Այս անապատը գոյություն ուներ 11—12-րդ դարերից և նրա տեղը ավելի ուշ ժամանակներում՝ 17-րդ դարում, կառուցվել է նորը։*

*Հարանց անապատը գտնվում էր Տաթևի ձորի և Որոտան գետի միախառնվելու տեղում, Տաթևի ձորի ձախ ափին, «Սատանի կամուրջ»-ի մոտ, հիշյալ գետերից առաջացած մի լեզվակի վրա։ Կառուցված է եղել սրբատաշ քարերից և առջևում ունեցել գավիթ։ Նրա շուրջը պատած է եղել կրաշաղախ և լայնանիստ պարսպով, որն ուներ իր աշտարակները։ Պարսպի մեջ կային 64 խուցեր, որոնք կառուցված են եղել միաբանների համար։ Հարանց անապատի տեղը ավելի գեղեցիկ է, քան Տաթևինը*[1]*։ Ավերակները մինչև օրս պահպանվել են։*

*Տաթևի շրջանից երեք լեռնագագաթներ գրեթե ուղղահայաց լանջերով իջնում են Որոտան գետի ափը։ Սրանցից միջինը, որ ավելի ժայռոտ է, կոչվում է «Շահանդուխտի քար» կամ «Հարսնաքար», որի գագաթին մոտ կառուցված եկեղեցու ավերակները դեռ պահպանվում են։ Այս եկեղեցու կառուցումը ժողովուրդը կապում է Աղվանից գահերեց իշխան Վարազ-Տրդատի դուստր Շահանդուխտի հետ, որը իբր մինչև իր կյանքի վերջը այդ եկեղեցում ճգնում էր (տե՛ս Լալայան, Զանգեզուրի գավառ, Հ. Ա, էջ 55)։*

*Տաթևի վանքից հյուսիս-արևելք, Որոտան գետի մոտ, նույնանուն լեռան վրա են գտնվում* **Թանահատի** *վանքի ավերակները։*

*Այս վանքը, Օրբելյանի վկայության համաձայն (որն իբր վերցրել է արձանագրություններից) հայոց թվականությունից (551 թ.) 400 տարի առաջ է կառուցվել։ Բերենք պատմիչի վկայությունը. «Բայց գտաք իւրոց արձանագրութեանցն եթէ 400 ամաւ յառաջ շինեցաւ եկեղեցին քան զհայ թուականն յիշխանացն Սիւնեաց յանուն սրբոյ նախավկային Ստեփաննոսի»*[2]*։*

*Ինչքան էլ աղավաղված լինեն բերված թվերը, այնուամենայնիվ ցույց են տալիս, որ Թանահատի վանքը կառուց-*

---

[1] *Տե՛ս* Ջալալեանց Սարգիս, *Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, մասն Բ, Տփխիս, 1858, էջ 305։*

[2] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 160։*

*վել է շատ վաղուց։ Հետևապես, ավելի հավանական կարելի է համարել Ալիշանի այն կարծիքը, թե Թանահատի վանքը մինչև քրիստոնեության ընդունումը եղել է մեհյան։*

*Թանահատի վանքը նշանավոր է դառնում միայն 8-րդ դարի առաջին կեսին. «Յայնմ ժամանակի պայծառանայր սուրբ և երկնահրաշ կարգօք գերափառ և հռչակելի ուխտն Թանահատի վանից. որ կայ ի վերոյ Սիսնեաց յստորոտ լերինն ի բարձրաւանդակի միոջ ի մէջ անտառին»[1]։*

*Իրոք, Թանահատի վանքը Սյունյաց աշխարհի նշանավոր վանքերից է եղել[2], սակայն նա շատ շուտով կորցրել է իր նշանակությունը։ Այդ երևում է նրանից, որ Սյունյաց տան պատմիչը թագավորության կործանումից հետո եղած ժամանակաշրջանի մասին խոսելիս այլևս ոչ մի անգամ նրա անունը չի տալիս։*

## 6. Հաբանդ

*Հաբանդ գավառը, ինչպես երևում է, հին ժամանակներում շատ քիչ է ծանոթ եղել մեր պատմիչներին։ Նրա մասին եղած տեղեկությունները առհասարակ աղքատիկ են։ Այդ պատճառով էլ չափազանց դժվար է նրա հին ժամանակների սահմանները ճիշտ որոշել։*

*«Աշխարհացոյց»-ի մեջ հիշատակվում է երկու Հաբանդ, որոնցից մեկը գտնվում էր Սյունիքում, իսկ մյուսը՝ Արցախում։ Արցախի Հաբանդը առաջինից տարբերելու համար անվանված է «Միւս Խաբանդ»[3]։*

*Փավստոս Բուզանդի մոտ հիշատակված Հաբանդ գավառը Մովսես Խորենացին անվանում է Փոքր Սյունիք (Սիսական Կոտակ), դրա տակ հասկանալով ամբողջ Արցախի աշխարհը[4]։*

*Արցախի Հաբանդ գավառն անմիջապես սահմանակից էր Սյունիքի Հաբանդին։*

---

[1] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 160։

[2] *Տե՛ս նույն տեղը, էջ 338։*

[3] *Տեքստը տե՛ս պրոֆ. Ա. Աբրահամյանի «Անանիա Շիրակացու մատենագրությունը» աշխ. 350 էջում։*

[4] *Տե՛ս* Փ. Բյուզանդ, *Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1912, գլխ. 3, էջ 6։*

Մ. Խորենացի, *Հայոց Պատմութիւն, Երևան, 1940, էջ 175։*

Սակայն միշտ չէ, որ Սյունիքի Հաբանդ գավառը մնում է անծանոթ գիտությանը։ 13-րդ դարի Սյունյաց տան պատմիչ Օրբելյանը բավականին տեղեկություններ է տալիս Հաբանդի մասին, որով և հնարավորություն ենք ստանում նրա սահմանները որոշելու։

Արևելյան կողմից Հաբանդ գավառի սահմանը մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում անցնում էր Հագարի գետով։ Արևմտյան կողմում նա շփվում էր Ծղուկքի Տաթև և Որոտան շրջանների հետ։ Հյուսիսում նրա սահմանը Աղահեճքի հետ անցնում էր Հագարի գետի Աղօղլան վտակի աջ ափով տարածվող լեռներով, իսկ հարավային կողմից՝ Բարկուշատ և Ողջի գետերի ջրբաժան լեռներով, որտեղ Հաբանդը սահմանակցվում էր Բաղք—Քաշունիքի և Բաղք—Աճենի հետ[1]։

Գավառս բացի Հաբանդից տարբեր տեղերում անվանվում է նաև՝ Խաբանդ, Աբանդ, Համբանտ։ Անվան ստուգաբանությունը հայտնի չէ։

Որոշ ուսումնասիրողների կարծիքով Հաբանդ անունը պահպանվել է Ղափան ձևով։ Այս կարծիքի հետ համաձայնվել չենք կարող։ Մենք այդ խնդրում լիովին միանում ենք Ալիշանի հետ, ըստ որի Ղափան անունը Կապանի աղավաղման արդյունքն է[2]։

Ավանդության համաձայն Ջագիկ նահապետը Հաբանդ գավառում կառուցել է մի բերդ և այն անվանել՝ «Ջագեձորոյ» կամ Հաբանդի բերդ, իսկ այն ձորը, որում գտնվում էր բերդը, նրա անունով էլ կոչվել է «Ջագեձոր»[3]։ Ալիշանը նկատի ունենալով հիշված ավանդական Ջագիկի և ավելի ուշ ժամանակներում (9—10-րդ դարեր) Բաղքում իշխող Ջագիկ անուն ունեցող մի քանի իշխանների (որոնց Ալիշանն անվանում է «Ջագիկյաններ») անունների նույնությունը, ենթադրում է, որ Հաբանդը 9—10-րդ դարերում կազմել է Բաղաց աշխարհի մի մասը[4]։ Ալիշանի այդ ենթադրությունը չափազանց անհավանական է, որովհետև մենք սույն աշխատության 2-րդ գլխում

---

[1] Տե՛ս Ղ. Ալիշան, Սիսական, էջ 254։

[2] Նույն տեղը, էջ 255։

[3] Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 13։

[4] Տե՛ս Ղ. Ալիշան, Սիսական, էջ 255։

*տեսանք, որ Հաբանդը 10-րդ դարում բաժին էր ընկել Փիլիպեին, իսկ նրանից հետո էլ, հավանաբար շարունակեցին այնտեղ իշխել նրա սերունդները։ Այնպես որ այդ դարերում Բաղքի Ջագիկյանների իշխանությունը Հաբանդ գավառի վրա չէր տարածվում։*

*Ձագեձոր անունը, աղավաղվելով, դարձել է Ջանգեզոր կամ Ջանգեզուր, իսկ նրա մյուս անունը՝ Հաբանդը, հետըզհետե դադարել է գործածությունից*[1]*։*

*Տաթևի վանքին տրվող հարկի հին ցուցակի մեջ Հաբանդ գավառում հիշատակվում է 79 գյուղ*[2]*, որոնցից այժմ միայն մի փոքր մասն է հայտնի։*

*Գավառիս պատմա-աշխարհագրական բազմաթիվ վայրերից Թագավորության շրջանում հիշատակվում են միայն Տեղ և Խոտ գյուղերը, բայց քանի որ գավառն ամբողջությամբ մտնում էր Թագավորության մեջ, ուստի անհրաժեշտ ենք համարում թվարկել նրա կարևորագույն վայրերը։*

Հալիս գյուղ *(Օրբելյան, էջ 230)։ Կոչվել է նաև Հալե (Օրբելյան, էջ 255, 256, 517), ավելի ուշ ինչպես այժմ՝ Հալիձոր*[3]*։ Գտնվում է «Սատանի կամուրջ»-ից քիչ արևելք, Որոտան գետի ձախ ափին։ Հալիձորը եղել է Տաթևի վանքի սեփականությունը։ Այդ գյուղը 10-րդ դարի առաջին քառորդին վանքին էր նվիրել Համազասպուհին։ «Դարձեալ և կին մի բարեպաշտօն Համազասպուհի անուն՝ դուստր Բաբգենի իշխանի, տայ նախ զայգին մեծ որ ի Հալիսից գետառին և յետոյ զգիւղն իսկ զՀալիս իւր ամենայն սահմանօքն. և գրէ կտակ հաստատութեան մեծամեծ դաշամբք զի մի իշխեսցեն խախտել»*[4]*։*

**Շնհեր:** *Գտնվում է Հալիձորից հյուսիս-արևելք, ոչ հեռու նրանից։ Այս գյուղն Օրբելյանի մոտ հաճախակի է հիշատակվում։*

---

[1] *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսական, էջ 255։*

[2] *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 516—517։*

[3] *Պատմական գրականության մեջ այս Հալիձորը երբեմն շփոթել են Ղափանի շրջանի Բեխ գյուղի մոտ գտնվող Հալիձոր բերդի հետ, որը Դավիթ բեկի նստավայրն էր։ 1727 թվականի հայտնի ճակատամարտը տեղի է ունեցել Ղափանի Հալիձորում։*

[4] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 230։*

Տաթևի եպիսկոպոսական աթոռին տրվող հարկի հին ցուցակին նայելով, պարզ երևում է, որ Հաբանդ գավառի բնակավայրերի մեջ Շնհերը (որ ցուցակում գրված է «Շնոյ հերք» ձևով) բոլորից խոշորն է եղել, որովհետև նրա հարկի չափը հասնում է 24-ի, մինչդեռ նույն գավառի մյուս բնակավայրերից և ոչ մեկի հարկը 20-ից չի անցնում[1]։ Նրա մեծությունը հաստատող փաստ է նաև այն, որ 10-րդ դարում Հաբանդ գավառի մի մասը կրում էր Շնհեր անունը. «Եւ ապա էր մեծ Վասակայ որդի մի Փիլիպպէ անուն, որ ունէր զՇնհեր և զՀաբանդ»[2]։

Շնհերը երբեմն (իր մեծության պատճառով, ինչպես ենթադրում է Լալայանը)[3], կոչվում է Շինուհայր, Շինահայր, Հայրաշեն։ Շնհերը պատկանում էր Տաթևի վանքին։

Շնհերից մեկ կիլոմետր հյուսիս-արևելք, Որոտան գետի բարձրադիր ձախ ափին գտնվում է Խոտ գյուղը՝ ծածկված թթենիների, խնձորենիների այգիներով։ Գյուղի արևմտյան կողմում, ինչպես վկայում է Լալայանը[4], պահպանվել են 12-րդ դարին վերաբերող մի եկեղեցու ավերակներ և գերեզմանաքարեր։ Խոտ գյուղը Խաղբակյան Դլեն իշխանը 11-րդ դարի կեսերին (1046 թ.) նվիրում է Տաթևի վանքին. «Իշխան մի Դլեն անուն՝ որդի Խաղբակայ, տայ յիւր հայրենի ժառանգութեանցն զԽոտ գիւղն և զԽոտագետոյ մեծ այգին...» (Օրբելյան, էջ 315)։ Հետագայում վանքի ձեռքից խլել էին այդ գյուղը, բայց Օրբելյան Տարսայիճ իշխանը նորից այն իր ձեռատունկ այգու հետ միասին վերադարձրել է վանքին[5]։ Խոտ գյուղի հողերի ընտիր մասերը Տաթևի վանքի ձեռքին մնում են մինչև նախահեղափոխական շրջանը[6]։

Ձագեձորի բերդ: Վերը մենք տեսանք, որ ավանդությունը Ձագեձոր բերդի կառուցումը և անունը կապում է Ձագ նահապետի անվան հետ։ Այս բերդի աշխարհագրական դիրքը հայտնի չէ։

---

[1] Տե՛ս Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 516—517։

[3] Նույն տեղում, էջ 298։

[3] Տե՛ս Եր. Լալայան, Զանգեզուրի գաւառ, հ. Բ, 1899, էջ 42։

[4] Նույն տեղում, հ. Բ, էջ 46։

[5] Տե՛ս Ղ. Ալիշան, Սիսական, էջ 260։

[6] Տե՛ս Եր. Լալայան, Զանգեզուրի գաւառ, հ. Բ, էջ 46։

*Ալիշանը ենթադրում է, որ Զագեձորի բերդը պետք է գտնվելիս լիներ Հին Գորիսի (տեղացիների կողմից «Վերին շեն» կոչված) շրջանում*[1]*։ Ալիշանի այդ ենթադրությունը չափազանց հավանական է, որովհետև Օրբելյանի հիշատակության համաձայն*[2] *Զագեձորի բերդը գտնվում էր Զագեձորում, այսինքն այն ձորում, ուր այժմ գտնվում է Հին Գորիսը*[3]*։ Վերջինս այժմ շենքերով գրեթե միացած է Նոր Գորիսի*[4] *հետ։*

Տեղ գյուղ: *Այս գյուղը Հագարի գետակի և նրա աջակողմյան օժանդակ Աղօղլան վտակից հեռու է հավասար չափով՝ 7—8* կմ։ *Օրբելյանի՝ մոտ շատ հաճախ է հիշատակվում։ 988 թ. Սյունյաց առաջին թագավոր Սմբատի կինը՝ Շահանդուխտը, Տեղ գյուղը նվիրել է Տաթևի վանքին (Օրբելյան, էջ 291)։ Տեղը թագավորության տերիտորիայում հիշատակված վայրերից ամենաարևելյան բնակավայրն է։ Այժմ գոյություն ունի և գտնվում է Գորիսի շրջանում։*

## ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## ՍՅՈՒՆՅԱՑ ԱՇԽԱՐՀԻ ԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ

*Հայկական լեռնաշխարհում ապրող հայկական հնագույն ցեղերն ու ցեղախմբերը մտնելով հայ ժողովրդի կազմավոր-*

---

[1] *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսական, էջ 261։*

[2] *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 13։*

[3] *Գորիս կամ Կորիս անվան մասին Սմբատ Ջալալյանցը տալիս է հետևյալ մեկնությունը. «Ի շրջապատի սորա, (Գորիսի—Թ. Հ.) կորիսաձև բարձրացեալ են աւազակոյտ բլուրք ի տեղիս տեղիս թողլով գխորափիտս և զդարևանդս, յորում ամրանն բնակիչք ի հարկաւոր դէպս և պահէն զկայս և զկարասիս իւրեանց ի դարանանման անձաւս, եղեալս ի սիրտս այնոցիկ աւազակոյտ բլրոց։ Կորիսաձև գագաթք այնոցիկ լերանց ի հեռուստ բերեն զնմանութիւն բազմաթիւ կաթուղիկէից. յորոց և ընկալեալ է զանուն Կորիս» (Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, մասն Բ, էջ 309)։*

[4] *Նոր Գորիսը (այժմ կոչվում է ուղղակի Գորիս) կառուցվել է 1870 թվականին Ստարացկի գավառապետի օրոք, Մանուչար-բեկ Մելիք-Հուսեինյանի խորհրդով (տե՛ս* Եր. Լալայան, *Զանգեզուրի գաւառ, հատ. Բ, էջ 27)։*

ման պրոցեսի մեջ, դադարեցին գոյություն ունենալուց։ Նրանցից որպես հիշատակ մնացել են այն շրջանների աշխարհագրական անունները, որտեղ նրանք բնակվելիս են եղել։ Հին Հայաստանի Սյունիք աշխարհում հիշատակված տեղանունների (հատկապես տերիտորիա ցույց տվող) մի զգալի մասը ունի էթնիկական ծագում, և հենց այդ հանգամանքն էլ հնարավորություն է տալիս Սյունիքում նախահայկական շրջանում եղած հայկական ցեղերի մասին որոշ գաղափար կազմել։

Սյունիք աշխարհը հայտնի էր երկու անունով՝ «Սիւնիք» և «Սիսական»։ Սյունիք անունը ավելի հին է։ 5-րդ դարի պատմիչների մոտ (Փավստոս, Ագաթանգեղոս, Եղիշե, Փարպեցի) այդ երկիրը հիշատակված է միայն «Սիւնիք» անունով։ Նույն դարի պատմիչ Կորյունը «Սիւնիք»-ը որպես երկրանուն գործածելուց բացի հիշատակում է նաև «Սիսական» անունը «Սիսակյան» իմաստով[1]։

Խորենացու պատմության մեջ, ինչպես իր ժամանակին նկատել է Հյուբշմանը, նույնպես երկիրը կոչված է «Սիւնիք»։ «Սիսական» անունը հիշատակվում է միայն երկու տեղ, այն էլ «Սիսակյան» իմաստով[2], այսինքն ճիշտ այն իմաստով, ինչ իմաստով որ գործ է ածում Կորյունը։

Նշված փաստերն անշուշտ ցույց են տալիս, որ Սյունիք անունը ծագել է հնագույն ժամանակներում։ Ենթադրվում է, որ նա նախահայկական է և առաջացել է բևեռագիր արձանագրության մեջ հիշատակված Ցիունի կամ Սիունի տոհմանունից, ինչպես արձանագրության «արծուն» համապատասխանում է հայերեն «արծրունի»-ին, աքանի՝ ապահունուն,

[1] Տե՛ս Կորյուն, Պատմութիւն վարուց եւ մահուան սրբոյն Մեսրոպայ Վարդապետի մերոյ թարգմանչի, Թիֆլիս, 1913, էջ 25 («Հասանէր ի գլուխ իշխանութեանն Սիւնեաց՝ քաջն Սիսականն Վասակ», էջ 24. «Սիւնական աշխարհ», «Երկիրն Սիւնեաց»)։

[2] Տե՛ս Հ. Հյուբշման, Հին հայոց տեղւոյ անունները, էջ 97։

*արձանագրության մեջ ամատունին—հայերեն ամատունուն և այլն*[1]*։*

*Լեզվաբանների կարծիքով մեզ հասած աշխարհագրական այն անունները, որոնք ունեն հոգնակի թիվ, ցույց են տալիս հավաքական գաղափար։ Դրանք ցույց են տալիս թե՛ տվյալ ժողովրդի և թե՛ այն երկրի անունները, որտեղ այդ ժողովուրդը բնակվում էր։ Այսպես՝ «աղձնիք» նշանակում է «աղձնիներ» և «Աղձնստան», «հայք»՝ «հայեր» և «Հայաստան», «կորճայք»՝ «կորճեր» և «Կորճաստան», և այլն։ Նույն ձևով էլ «Սիւնիք» նշանակում է «սիւնիներ» (ժողովուրդ) և «Սիւնիստան» (երկիր)։*

*Ն. Ադոնցը իր արժեքավոր աշխատությունններից մեկում*[2] *անդրադառնալով այդ խնդրին, դարձյալ ենթադրում է, որ «Սիւնիք» անունը առաջացել է նույնանուն (իր անվան մեջ «սի» արմատ ունեցող) ցեղից։*

*Այսպիսով, դուրս է գալիս, որ «Սիւնիք» բառը նախահայկական է և առաջացել է հնագույն ժամանակներում՝ այդտեղ բնակվող հայկական նույնանուն ցեղի անունից։*

*«Սիւնի», ինչպես և Հայկական լեռնաշխարհում հնագույն ժամանակներում բնակվող մյուս բազմաթիվ ցեղերի ու ցեղախմբերի պատմական կյանքին վերաբերող հիշատակություններ չկան։ Սակայն կարելի է ենթադրել, որ Պատմական Հայաստանի նահանգներից մեկում՝ Սյունիքում, նախահայկական հնագույն ժամանակներում բնակվող ցեղերի մեջ ամենազորեղը և մարդաշատը եղել է «սիւնի» ցեղը։ Հենց դրանով պետք է բացատրել այդ լայնածավալ երկրի «Սիւնիք» կոչվելը, այն դեպքում, երբ այնտեղ բնակվում էին բացի «սիւնի»-ներից նաև բազմաթիվ այլ ցեղեր, որոնց անունները չեն պահպանվել, իսկ պահպանվելու դեպքում տրվել են մի-*

---

[1] Ա. Ղարիբյան. *«Մեզ հայտնի է, որ այս անուններից մի քանիսը բևեռագիր արձանագրությունների մեջ հիշատակված նախահայկական տոհմերի անուններն են (արձ. Ցիունի կամ Սիունի=հյ. սիւնի, արձան. արծուն—հայ. արծրունի, արձան. աբաենի—հյ. ապահունի, արձան. ամատունի—հյ. ամատունի և այլն» («Հայոց լեզվի պատմության ուսումնասիրության ներածություն» Երևան, 1937, էջ 58)։*

[2] *Տե՛ս Н. Адонц,* Армения в эпоху Юстиниана, **էջ 422—423։**

*այն այդ մեծ երկրի առանձին գավառներին (Արևիք, Բաղք և այլն)։*

*Սյունիքի մյուս անունն է Սիսական։ Այս երկու անունների միջև եղած կապը մինչև այժմ դեռ չի պարզաբանված։ Ուսումնասիրողներից ոմանք կարծում են, որ «Սյունիքը» երկրի անունն է, իսկ «Սիսականը» այնտեղ տիրող նախարարական տան անունը*[1]*։ Այդ կարծիքի համար հիմք է հանդիսացել այն հանգամանքը, որ Կորյունի և Մովսես Խորենացու մոտ «Սիսականը» գործ է ածված «Սիսակյան» իմաստով, իսկ երկրի անունը ամենուրեք՝ «Սյունիք»։*

*Պարսկական և արաբական աղբյուրների մեջ «Սյունիք» անունը երբեք չի հիշատակված։ Առաջիններն այդ երկիրն ամենուրեք անվանում էին Սիսական, իսկ երկրորդները՝ Սիսաջա ։*

*«Սյունիք» և «Սիսական» անունների միջև եղած կապի մասին գոյություն ունի մի երկրորդ կարծիք, ըստ որի «Սյունիք» (բևեռ. արձանագրութ. Սիունի, Ցիունի) ձևն առաջացել է «սի-եր» ժողովրդի անունից, իսկ «Սիսականք»—«սիսակներ» առաջացել է սի (սիունի)՝ սունի ժողովրդի և սակերի անունների խաչաձևումից*[2]*։ Այս կարծիքը թվում է ավելի հավանական, որովհետև ունի պատմական հիմք։*

*Հայտնի է, որ մեր թվականությունից առաջ 8—7-րդ դարերում Ռուսաստանի հարավային տափաստաններից սակերը (սկյութներ) արշավում են դեպի Մերձավոր Արևելք, այդ թվում և Անդրկովկաս ու Հայաստան*[3]*։ Սակերն Անդրկովկասում տարածվել են մինչև Պոնտական (Սև) ծովը։ Նրանց մի մասը հաստատվում է «Աշխարհացույց»-ի մեջ նկարագրված Ուտի կամ Ուտիք աշխարհի Շակաշեն արգավանդ գավառում (այժմյան Կիրովաբադի շրջան), որը համապատասխանում է Սակաշենին (Սակասեն)։ Հաստատվելով Անդրկովկասում,*

---

[1] Տե՛ս Հյուբշման, *Հին Հայոց տեղւոյ անունները, էջ 96 և 97։*

[2] Ա. Ղարիբյան. *Հայոց լեզվի պատմության ուսումնասիրության ներածություն, էջ 62։*

[3] *Տե՛ս Н. Адонц,* Арм. в эпоху Юстин., *էջ 421։* Լ. Մելիքսեթ-Բեկ, Древняя Русь и армяне *(ԳԱ լեզվի ինստիտուտ, «Աշխատությունների ժողովածու», հ. 1, Երևան, 1946 թ., էջ 98)։* Լեո, *Հայոց պատմություն, հ. 2-րդ, էջ 146։*

նրանք բնականաբար այնտեղ պետք է թողնեին որոշ ազդեցություն՝ էթնիկական ու լեզվական տեսակետից։ Նրանց հիշատակն Անդրկովկասում պահպանվել է մի շարք աշխարհագրական անուններով։

Այսպես, բացի վերը հիշված Շակաշենից (որը համապատասխանում է Սակասենին և ենթադրվում է, որ հանդիսացել է սակերի տոհմական բնակավայրը Անդրկովկասում) ակադ. Մառի կարծիքով սակերից է մնացել «զոկ» անունը, իսկ նրանց հատուկ բարբառը արդյունք է տեղական ժողովրդի և սակերի միջև տեղի ունեցած հիբրիդիզացիայի[1]։ Պրոֆ. Մելիքսեթ-Բեկը ենթադրում է, որ սակերից է առաջացել նաև «Բաղա-սակ-անը»[2]։ Այժմ գրեթե քաղաքացիական իրավունք է ստացել և անվիճելի է այն տեսակետը, որ Սյունիք աշխարհի մյուս անունը՝ Սիսականը, առաջացել է սակերից։

Մենք կարծում ենք, որ սակ ժողովրդից առաջացած պետք է համարել նաև Ձագեձորը։ Ձագեձոր անունն առաջին անգամ հիշատակվում է Օրբելյանի կողմից և այնուհետև մի փոքր աղավաղման ենթարկվելով շարունակ մնում է գործածական։ Ձագեձորի մասին ունեցած Օրբելյանի հիշատակություններից մեզ համար հետաքրքրական են երկուսը. ա) «...Հանբադայ (Հաբանդ) բերդ որ ի նոյն տոհմէ Սիսակայ ի Ձագայ նահապետէ շինեալ ի վերայ գետոյ միոյ՝ կոչէ յիւր անուն զձորն Ձագեձոր և զբերդն Ձագեձորոյ բերդ...» (էջ 13)։ բ) «...և նստէր ի գաւառին Հաբանդայ՝ ի գլուխ Ձագեձորոյ...» (էջ 406)։

Առաջին հիշատակությունից դժվար չէ կռահել, որ Ձագեձոր անունը գոյություն ուներ շատ վաղուց, որովհետև Սյունյաց տան պատմիչն այդ անվան առաջացումը կապում է ավանդական Սիսակի հետ։ Թե՛ առաջին և թե՛ երկրորդ հիշատակություններից պարզ երևում է, որ Ձագեձորը ոչ միայն բերդ էր, այլև տերիտորիալ միավոր՝ Հաբանդ գավառի մի շրջանը։

Եթե Ձագեձոր անունն այնքան հին է, որ նրա առաջացու-

---

[1] Տե՛ս Н. Я. Марр, Термин „скиф" (Избранные работы, том пятый, Москва—Ленинград, 1935, էջ 22)։

[2] Լ. Մելիքսեթ-Բեկ, Древняя Русь и армяне (ԳԱ, «Աշխատ. ժողով.», հ. 1-ին, էջ 98)։

մը կապում են ավանդության հետ և նա ուներ տերիտորիալ իմաստ, ապա այդ անունը հավանաբար պետք է առաջացած լինի այնտեղ բնակվող ցեղի անունից։

Այդ դեպքում, անկասկած, անունը ծագել է սակերից՝ սկզբում կոչվելով սակեձոր, իսկ հետագայում աղավաղման ենթարկվելով՝ Զագեձոր։ Մեր այս ենթադրության համար կռվան է ծառայում նախ այն հանգամանքը, որ Հաբանդ գավառը, ուր գտնվում էր Զագեձորը, Սյունիքի մասերից մեկն էր, իսկ վերջինում և նրա սահմանակից Ուտիքում, ինչպես տեսանք, սակերը թողել են իրենց ազդեցությունը, որը պահպանվել է Շակաշեն, Սիսական և զոկ անուններով։

Երկրորդ՝ նկատի պետք է ունենալ նաև այն, որ Անդրկովկասում հնագույն ժամանակներում ապրող ցեղերի անուններից ոչ մեկը (բացի սակերից), որքանով մենք ծանոթ ենք, չի հիշեցնում Զագ-ե-ձոր անունը։

Լալայանը ենթադրում է, որ Զագեձորն առաջացել է «Ծակերի ձոր» անունից։ Բերում ենք նրա դատողությունը. «...որովհետև հենց այժմ էլ Գորիսից փոքր ինչ բարձր գտնըվող ձորը, ուր եղել է ամենահին բնակությունը, կոչվում է «Ծակերի ձոր» այդտեղ գտնվող բազմաթիվ «Ծակեր»—արհեստական քարայրների պատճառով»[1]։

Անժխտելի է, իհարկե, Լալայանի այն դիտողությունը, որ Գորիսից վեր գտնվող ձորը կոչվում է «Ծակերի ձոր», տեղացիներն այժմ էլ շարունակում են այդպես կոչել։ Սակայն հիմք ընդունելով միայն այդ, ենթադրել, որ Զագ-ե-ձորն առաջացել է «Ծակ»-երից սխալ է նախ այն պատճառով, որ «Զագեձոր» անունն ավելի հին է, քան «Ծակերի ձորը»։ Ուստի ոչ թե «Զագեձորն» է առաջացել «Ծակերի ձորից», այլ ճիշտ հակառակը՝ «Զագեձորի» աղավաղումից առաջացել է «Ծակերի ձորը», որը մինչև այժմ էլ գործածական է։ Երկրորդ՝ անբացատրելի կմնար Օրբելյանի այն հիշատակությունը, ըստ որի «Զագեձորն» առաջացել է Զագ նահապետի անունից։

---

[1] Եր. Լալայան, Զանգեզուրի գավառ, հ. Բ, էջ 7։

*Զագեձոր անունը հետագայում աղավաղման ենթարկվելով՝ դարձել է «Զանգեզոր»*[1]*, ապա՝ «Զանգեզուր»*[2]*։*

*Այսպիսով տեսնում ենք, որ 8—7-րդ դարերում դեպի Անդրկովկաս և Մերձավոր Արևելք արշաված սկյութների (սակերի) հիշատակը համեմատաբար ավելի լավ է պահպանված Սյունիքում (Սիսական և Զանգեզուր աշխարհագրական անունների ձևով) և նրա հարևան Ուտիքում (Շակաշեն գավառանվան ձևով)։*

*Բացի նշված Սյունիք և Սիսական անուններից, որոնց առաջացումն, ինչպես տեսանք, կապում են համապատասխան ցեղանունների հետ, Սյունիքում կան մի շարք այլ էթնիկական ծագումի գավառանուններ։ Դրանցից են.*

**Գեղարքունիք**: *Սյունյաց երկրի այս գավառը տարածվում էր Գեղամա (Սևանա) ծովի շրջակայքում։*

*Գեղարքունիքը իր հարևան Սոտք գավառի հետ միասին կոչվում էր Գեղամա երկիր։ Ենթադրվում է, որ Գեղամա երկիրը համապատասխանում է ուրարտական արձանագրություններում հիշատակված «Կիեհունի» երկրին*[3]*։ Նրա գավառներից մեկի՝ Գեղարքունիքի անվան առաջացման վերաբերյալ գոյություն ունի մի ուրիշ ենթադրություն, որն ուզում ենք այստեղ նշել։*

*Հնագույն ժամանակներից սկսած Ատրպատականը և Կասպիականի ափերը բնակեցված էին քոչվորական-հովվական բազմաթիվ ցեղերով, որոնք իրենց զբաղմունքի բնույթից ելնելով, թափառում էին այդ լայնածավալ տափաստաններում։*

*Նրանցից շատերը, Պլուտարքոսի վկայության համաձայն, Տիգրան երկրորդի օրոք ներկայացան նրան և հայտնեցին իրենց պատրաստակամությունը հռոմեացիների դեմ կըռ-*

[1] Ղ. Ալիշան, *Սիսական, էջ 261։* Լալայան Եր., *Զանգեզուրի գավառ, հ. Բ, էջ 7։*

[2] *Ժողովրդական ավանդություններից մեկի համաձայն հին ժամանակներում Գորիսից մի կիլոմետր հյուսիս եղել է մի վանք։ Այդ վանքն իբր ունեցել է մի այնպիսի հսկա զանգ, որի ձայնը տարածվել է շատ հեռու և իբր այդ պատճառով էլ ժողովուրդը սովորաբար ասում էր «Զանգըզոռ» (այսինքն՝ զանգը զորավոր)․ դրանից էլ առաջացել է «Զանգեզուր» (տե՛ս* Եր. Լալայան, *Զանգեզուրի գավառ, հ. Բ, էջ 7—8)։*

[3] *Տե՛ս* Լեո, *Հայոց պատմություն, հ. առաջին, էջ 184։*

*վելու համար*[1]*։ Տիգրանին ներկայացած այդ քոչվորական ցեղերից մեկը «գել»-եր կամ «գեղ»-եր*[2] *ցեղն էր։ Ն. Ադոնցի կարծիքով, «գեղ»-երն այնուհետև բնակություն հաստատեցին Գեղամա ծովի շրջակայքում, և նրանց անվամբ էլ այդ երկիրը կոչվեց «Գեղարքունիք»*[3]*։*

*Բացի Գեղարքունիք գավառանունից բուն Սյունիքում հիշատակված են երկու տեղանուններ, որոնք նույնպես հիշեցնում են «գեղ»-երին։ Դրանցից մեկը Ձորք գավառում հիշատակված (Օրբելյան, էջ 335) Գեղ ամրոցն է ու վանքը (նրա տեղում այժմ գտնվում է Գեղի գյուղը), իսկ մյուսը՝ Բաղքում հիշատակված (Օրբելյան, էջ 521) Գեղարքունի գյուղը, որն այժմ գոյություն չունի։*

*Բերված երկու կարծիքները (որոնցից մեկի համաձայն Գեղամա երկիրը համապատասխանում է Ուրարտական «Կիեհունի»-ին, իսկ ըստ մյուսի՝ «գեղ»-եր ցեղից) մնում են որպես ենթադրություն։ Սակայն հաստատ կարելի է ասել, որ Գեղամա երկիր, Գեղարքունիք անունն ունի էթնիկական ծագում։*

**Բաղք։** *Պրոֆ. Ղափանցյանը գտնում է, որ հնագույն ժամանակներում խեթերի երկրից արևելք (մոտավորապես այժմյան Բիթլիսի և Բալահովտի շրջաններում) բնակություն էր հաստատել փոքրասիական հզորագույն ցեղերից մեկը՝ «բալ»-եր կամ «բաղ»-երը։ 8-րդ դարում կիմերների ճնշման տակ, ինչպես ենթադրում է պրոֆեսորը, բաղերը շարժվել են դեպի արևելք, և նրանց մի մասը բնակություն է հաստատել Սյունյաց երկրի հարավային մասում։ Բաղերի բուն երկրում (արևմուտքում) նրանց անունը պահպանվել է Բալահովիտ, Պաղնատուն, Պաղին, Բաղեշ և այլ տեղանունների ձևով, իսկ արևելքում (Սյունիքում)՝ Բաղաբերդ և Բաղք (Բաղաց աշ-*

---

[1] *Տե՛ս* *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, *էջ 420։*

[2] *Ենթադրվում է, որ «Գել»-եր կամ «Գեղ»-եր ցեղի բնիկ աշխարհն այժմյան Գիլանն է* (*Н. Адонц*, Арм. в эпоху Юстиниана, *էջ 420*)*։ Մեր պատմիչներից «գեղ»-երի մասին առաջին անգամ հիշատակում է Եղիշեն («Վարդանանց պատմութ.», էջ 189), բայց նրանց երկրի վերաբերյալ ոչինչ չի հաղորդում։*

[3] *Տե՛ս* *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, *էջ 420։*

խարհ) անուններով[1]։ Ն. Ադոնցը Սյունիքի Բաղք գավառի և Բաղաբերդի անունների առաջացումը կապում է մի ուրիշ ցեղի՝ «Բաղաս-ճաց», հետ, որը բնակվում էր Բաղասական աշխարհում։ Բաղասականը ըստ նրա գտնվում էր Աղվանքից դեպի Գարդման և Տաշիր տանող ճանապարհին[2]։

Այսպիսով, թե՛ պրոֆ. Ղափանցյանը և թե՛ Ն. Ադոնցը Սյունիքի Բաղք գավառի և Բաղաբերդի անունները համարում են էթնիկական ծագումի անուններ։ Նրանց մոտ տարբերությունը միայն նրանումն է, որ Ղափանցյանի կարծիքով այն ցեղը, որից առաջացել են Բաղաց աշխարհ (Բաղք) ու Բաղաբերդի անունները, կոչվել է «բաղ», և սա Սյունիք է եկել կիմերների ճնշման տակ՝ արևմուտքից, իսկ Ադոնցի կարծիքով՝ այդ ցեղը կոչվել է «Բաղաս-ճաց» և Սյունիք է եկել արևելքից՝ Կասպիականի կողմերից։

Պետք է նկատել, որ բացի նշված անուններից, Սյունյաց երկրի հարավային մասում կան նաև այլ տեղանուններ, որոնք հիշեցնում են «բաղ»-երին՝ Բաղաբուրջ (գյուղ, այժմյան Ղափան քաղաքից 3 կմ հարավ-արևելք), Բաղաշըղ (ավերակ գյուղ, այժմյան Քաջարան քաղաքից 5 կմ արևելք՝ Ողջագետի աջ ափին) և այլն։

**Վայոց ձորը։** *Մեր պատմիչների այն հիշատակությունները, թե Վայոց ձոր անունն առաջացել է աղետաբեր երկրաշարժից առաջացած ողբերից, չի համապատասխանում իսկությանը։*

«Վայոց ձոր» անվան առաջացման մասին հետաքրքրական դատողություններ ունի պրոֆ. Ղափանցյանը։ Ըստ նրա, այդ անունն անվիճելիորեն ունի էթնիկական ծագում և առաջացել է «վայ» ցեղի անունից, իսկ վերջինս էլ՝ biaina անունից[3], որը տեղաբնիկ հնագույն ցեղերից մեկն էր[4]։

---

[1] Տե՛ս Гр. Капанцян, Историко-лингвистическое значение топонимики древней Армении (Երևանի պետական համալսարան, «Գիտական աշխատություններ», 1940 թ., հ. 14, էջ 380—381)։

[2] Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, էջ 423։

[3] Տե՛ս Երևանի պետական համալսարանի «Գիտական աշխատություններ», 1940 թ., հ. 14, էջ 384։

[4] Տե՛ս նույն տեղը, էջ 384։

Պրոֆ. Ա. Ղարիբյանը ենթադրում է, որ «Վայոց ձոր» անունը համապատասխանում է սեպագիր արձանագրությունների մեջ հիշատակված Ուաչ ասսծուն կամ «Ուայաւս» երկրին՝ չժխտելով, իհարկե, նրա էթնիկական ծագումը[1]։

Անվիճելի է համարվում Սյունյաց աշխարհի Սոտք (կամ Սոթք) և Աղահեճք գավառանունների էթնիկական ծագումը։ Ն. Ադոնցի կարծիքով Սոտքն առաջացել է սոդի (sodi), հայերեն ծավդե-ացի ժողովրդի (ցեղի) անունից, որն ապրում էր Ուտիք նահանգում։ Իսկ «Աղահեճք»-ն այն ժողովրդի անունից, որի մնացորդներն այժմ կոչվում են «լահիճ»-ներ և բնակվում են Դաղստանի հարավային մասում[2]։

Ենթադրվում է, որ էթնիկական ծագում ունեն նաև Քաշունիքը[3], Արևիքը, Ճահապունիքը[4]։

Ամփոփելով նախահայկական շրջանում Սյունյաց երկրում եղած ցեղերի ու ցեղախմբերի վերաբերյալ գոյություն ունեցող կարծիքները, կարելի է անել հետևյալ եզրակացությունը։

Մինչև հայ ժողովրդի կազմավորումը Սյունիքում բնակվելիս են եղել առնվազն 8—10 ցեղ (սյունիներ, սակեր, բաղեր, գեղեր, վայեր, ծավդեացիներ, լահիճներ, քաշեր, արևներ և այլն)։ Նրա գավառների անունները ունեն մեծ մասամբ էթնիկական ծագում, որոնք իրենց նախնական անունները պահպանել են հին և միջին դարերում։ Ի դեպ նկատենք, որ հին Հայաստանի մյուս (հատկապես կենտրոնական) նահանգներում եղած աշխարհագրական անուններն անհամեմատ ավելի քիչ են պահպանված, քան Սյունիքում։

Սյունիքում եղած բազմաթիվ ցեղերը, որոնց մեծ մասը հայկական էին, մասնակցելով հայ ժողովրդի կազմավորման

---

[1] Ա. Ղարիբյան, *Հայոց լեզվի պատմության ուսումնասիրության ներածություն*, էջ 62։

[2] Տե՛ս *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 424։

[3] *Гр. Капанцян*, Историко-лингвистичес ·ое значение топонимики древней Армении (*Երևանի պետական համալսարան, «Աշխատությունների ժողովածու», հ. 14, էջ 382*)։

[4] Ա. Ղարիբյան, *Հայոց լեզվի պատմութ. ուսումնասիր. ներածութ.*, էջ 62։

պրոցեսին՝ դադարել են գոյություն ունենալուց։ Նրանց հիշատակը հետագայում պահպանվում է թե՛ աշխարհագրական անունների միջոցով և թե՛ տեղական լեզվի վրա թողած ազդեցությամբ։

Անհրաժեշտ է ընդգծել, որ աղբյուրների վկայությունների համաձայն Սյունիքի լեզուն զգալի չափով տարբերվում էր Հայաստանի մյուս մասերի լեզուներից, նույնիսկ այն աստիճան, որ Զաքարիա հռետորը 554 թ. հիշատակում է, թե Սյունիքը Հայաստանից առանձին մի երկիր է՝ Վիրքին (Վրաստան) և Աղվանքին հավասար[1]։

8-րդ դարի (մ. թ.) հեղինակ Ստեփանոս Սյունեցին գրում է. «Եւ դարձեալ զքո լեզուիդ գիտելն զբովանդակ զբառսըն զեզերականս, որպէս զԿորճայն եւ զՏայեցին եւ զԽութայինն եւ զՉորրորդ—Հայեցին եւ զՍպերացին եւ զՍիւնին եւ զԱրցախայինն. այլ մի՛ միայն միջերկրեայսն եւ զոստանիկսն, վասն զի պիտանիք այսոքիկ են ի տաղաչափութեան, այլեւ ազատակարք ի պատմութիւնսն, զի մի՝ վրիպեսցի անընդել գոլով լեզուացն»[2]։

Ինչպես տեսնում ենք, չնայած ավելի քան տասը դար էր անցել այն ժամանակներից, երբ կազմավորվեց հայ ժողովուրդը, այնուամենայնիվ, բերված վկայության մեջ խոսվում է այն մասին, որ Հայաստանի ծայրամասային շրջանների՝ Կորճեքի, Տայքի, Խութի, Չորրորդ Հայքի, Սպերի, Արցախի և Սյունիքի բնակիչների լեզուները (բարբառները) խիստ կերպով տարբերվում էին կենտրոնական երկրների (Այրարատի, Տուրուբերանի, թերևս նաև Վասպուրականի) բնակչության լեզվից։

Հարևան նստակյաց ժողովուրդներից (տվյալ դեպքում խոսքը վերաբերում է Աղվանից երկրում ապրող ժողովուրդներին) բացի Սյունիքի տեղական լեզվի վրա անշուշտ որոշ ազդեցություն էին թողել, ինչպես կողմնակիորեն նշում է Ն. Ադոնցը, նաև լեռնական զանազան ցեղեր, որոնք տարբեր ժամանակներում մուտք էին գործել Սյունիք[3]։

---

[1] **Տե՛ս** *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, *էջ 423*։

[2] **Տե՛ս** Дионисий Фракийский и армянские толкователи, издал и исследовал *Н. Адонц* (*«Ստեփաննոսի Սիւնեցւոյ մեկնութիւն քերականին»*). Петроград, 1915, *էջ 187*։

[3] **Տե՛ս** *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана *էջ 423*։

*Երկիրն ունենալով խիստ լեռնային բնույթ, զուրկ էր ճա-նապարհներից, որի պատճառով էլ կենտրոնական նահանգ-ների հետ ունեցած նրա տնտեսական, կուլտուրական և ան-գամ քաղաքական կապերը վերին աստիճանի թույլ էին։*

*Երկրորդ պատճառը, որն ընդհանրապես նպաստում էր միջնադարյան Հայաստանի տարբեր մասերում եղած բար-բառների պահպանմանը դա, իհարկե, հենց տնտեսության ֆեոդալական ձևն էր, որին հատուկ էր տերիտորիալ մասնատ-վածությունը, առևտրի թույլ զարգացումը, արդյունաբերու-թյան բացակայությունը, կուլտուրայի ցածր մակարդակը։*

*Սյունիքի բնական խիստ պայմաններն ու լեռնային բնույթը բնակչության մեջ պատվաստել էին անվեհերություն, անվախություն ու քաջություն։ Արաբական աղբյուրները սյու-նեցիներին հաճախակի որակում են քաջ ռազմիկներ[1]։ Եղած տեղեկությունները ցույց են տալիս, որ արաբական պատմիչ-ների կողմից սյունեցիներին «քաջ ռազմիկներ» որակելը հե-ռու է պատահական լինելուց։ «Զորանամակ»-ում հիշատակ-վող 84 նախարարական տների մեջ հեծյալ զորքի քանակու-թյամբ Սյունիքը գերազանցում էր բոլորին։ Նրա հեծյալների թիվը ըստ «Զորանամակ»-ի 19 400 է[2]։*

*Երկրի ներսում զինվորական ծառայություններ կատարե-լուց բացի, սյունեցիներից բաղկացած մի մեծ կայազոր գտնը-վում էր Դերբենդում, որին Սասանյան Պարսկաստանի կող-մից հանձնարարված էր փակել Դերբենդի անցքը հյուսիսա-յին ժողովուրդների առջև[3]։*

*Սյունյաց երկրի բնակչությունը մեզ հետաքրքրող ժամա-նակներում (10—12-րդ դարերում) միատարր չէր։ Այնտեղ բացի հայերից բնակվում էին նաև այլ ժողովուրդներ։*

*Ինչպես հայտնի է, դեռևս Տիգրան Բ-ի օրոք Հայաստան*

---

[1] Տե՛ս *Ибн-ал-Факих*, Книга о странах (Сборник материалов для опис. местн. и племён Кавказа, Тифлис, 1902, вып. XXXI, էջ 17 и 23): Кудама, նույն տեղը, 1903, вып. XXXII, էջ 29։

[2] «Զորանամակ»-ի տեքստը տե՛ս *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 251—252։

[3] Տե՛ս *С. Т. Еремян*, Сюния и оборона сасанидами Кавказских проходов (АН СССР, Арм. филиал, Известия, № 7 (12), 1941, էջ 38—40։

էին տեղափոխված բազմաթիվ հրեաներ, հույներ և ասորի-
ներ։ 5-րդ դարի պատմիչ Փավստոս Բուզանդի վկայության
համաձայն 4-րդ դարում հրեական բազմաթիվ ընտանիքներ
կային Երվանդաշատում, Արտաշատում, Զարեհավանում և
Հայաստանի այլ քաղաքներում[1]։ Պատմիչը նաև հիշատակում
է Նախիջևանում հրեաներ բնակվելու մասին, որն անհրաժեշտ
համարելով՝ մեջ ենք բերում. «Ապա առին (պարսկական զոր-
քը—Թ. Հ.) և զնա (Նախիջևանը) քանդեցին. անտի երդս Հայս
երկու հազարս, և հրեայ երդս վեշտասան հազարս անտի խա-
ղացուցին գնացուցին ամենայն գերութեամբ հանդերձ»[2]։

Փավստոսի հիշատակած այդ թվերը (հայեր 2 000 ընտա-
նիք, հրեաներ՝ 16 000 ընտանիք), իհարկե, կարող են չափից
ավելի ուռճացված լինել, բայց փաստը համառ է և գալիս է
ասելու, որ Նախիջևանում հրեաներն ավելի մեծ թիվ էին կազ-
մում, քան հայերը։

Մենք մի ուրիշ առիթով Նախիջևանի մասին խոսելիս տե-
սանք, որ Արշակունիների անկումից հետո Սյունյաց և Արծ-
րունյաց իշխանների միջև կռվախնձոր դարձած այդ քաղաքը
որոշ ժամանակ մտնում էր Սյունիքի մեջ։

Ստեփաննոս Օրբելյանը 11-րդ դարի սկզբներին վերաբե-
րող իր մի վկայության մեջ գրում է. «Եւ իջին ընդ մեծ աւա-
րի հեղեղատն ի քաղաքն (Կապան—Թ. Հ.), զի այն վայր ոչ
էր պարսպափակ վասն անհնարին գոլոյ մտից մարդկան. և
սկսան կոտորել ի Ջհտաթաղոյն...»[3]։ Սրանից կարելի է վըս-
տահ կերպով եզրակացնել, որ Կապան քաղաքի «Ջհտա-
թաղ»-ը առաջացել է այնտեղ հրեաներ բնակվելու շնորհիվ,
իսկ առանձին թաղի գոյությունը ցույց է տալիս, որ նրանք
այդ քաղաքում բավականին մեծ թիվ են կազմել։

Բոլորովին մութ է մնում այն հարցը, թե հրեաները երբ
և որտեղից եկան Կապան։ Սյունյաց տան պատմիչը, ինչպես և
մեր մյուս պատմիչներն ու աշխարհագիրները այդ մասին
ոչինչ չեն հաղորդում։

---

[1] Փավստոս Բուզանդ, *Պատմութիւն Հայոց*, Թիֆլիս, 1912, էջ 262—263։

[2] *Նույն տեղում*, էջ 263։

[3] Ստ. Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 334։

Պետք է ենթադրել, որ Սյունյաց երկրի մյուս մասերում հրեաներ չեն բնակվել, որովհետև Հայաստանում եղած հրեաները սովորաբար բնակություն էին հաստատել քաղաքներում՝ զբաղվելով գլխավորապես առևտրով և արհեստներով։ Իսկ Սյունիքում, բացի Կապանից և կարճ ժամանակով նրա մեջ մտնող Նախիջևանից, այլ քաղաքներ չեն եղել։

Աբբասյան դինաստիայի խալիֆները հայ ժողովրդին հնազանդ պահելու և Հայկական լեռնաշխարհի ստրատեգիական կարևոր դիրքն իրենց նպատակներին (ընդդեմ Բյուզանդիայի) ծառայեցնելու համար Հայաստանում բնակեցնում էին արաբական ցեղեր, որոնք պետք է հանդիսանային խալիֆայության հուսալի հենարանը։ Այդպիսի քաղաքականության հետևանքով Հայաստանում արաբական տարրը հետզհետե աճում էր։ Վանա լճի ավազանում ստեղծվում են կայսիկների և ութմանիկների էմիրությունները, Արճեշում, Խլաթում, Դվինում և ուրիշ քաղաքներում բնակեցվում են մեծ թվով արաբներ։ Սյունիքի հարավ-արևմտյան մասում, ինչպես տեսանք, կազմավորվել էր Գողթնի արաբական էմիրությունը։ Արաբական տարրը կարևոր դեր է կատարում նաև Նախիջևանում։ Հարց է առաջանում. Սյունիքի խորքում արաբ բնակիչներ կայի՞ն, թե՞ ոչ։ Հարցին որոշակի պատասխան տալու համար ծանրակշիռ կռվաններ չկան[1]։

Սյունիքում 11—12-րդ դարերում հայերից հետո համեմատաբար մեծ թիվ էին կազմում թուրքերը, որոնց այդտեղ երևան գալու մասին առաջին հիշատակությունը վերաբերում է 10-րդ դարի առաջին քառորդին. «Լուեալ ապա զայն Սմբատ (Սյունիքի գահերեց իշխանը—Թ. Հ.), և զօր գումարեալ ի պա-

[1] Ստ. Օրբելյանի մոտ 9-րդ դարի վերջերին վերաբերող մի վկայություն մեջ առված է. «Եւ գնեալ (Մարիամը—Թ. Հ.) ի հագարացի մարդկանէ զգեօղն Շողուագայ ընդ 60.000 դրամի ազատ ամենայն աշխարհական հարկաց՝ ընծայէ ի սեպհական ժառանգութիւն սուրբ եկեղեցւոյն...» (Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 174)։ Ինչպես տեսնում ենք, Մարիամը Շողուագա գյուղը (Գեղարքունի գավառ) գնել է հագարացի (արաբ) իշխողից։

Մեզ հետաքրքրող հարցի վերաբերյալ պատմիչն այլ վկայություններ չունի, իսկ բերվածից կարելի է միայն ենթադրել, որ արաբ ազնվականները Սյունիքում ունեին կալվածքներ։

